ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

7

ՀՈՒԼԻՍ

ԵՐԵՎԱՆ 1960

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 7
ՀՈՒԼԻՍ
1960 Թ.
★
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVII
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒԼԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ԱՌԹԻՎ



### ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՌԱՍՆԱՄՅԱԿԸ



### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ



### ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ





# ԿՅԱՆՔԻ ՀԵՏ, ԿՅԱՆՔԻ ՀԱՄԱՐ

Ընթանալով մեծ Լենինի գծած ուղիով, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կոմունիզմ կառուցող սովետական ժողովուրդն աննախընթաց հաղթանակներ է ձեռք բերել կյանքի բոլոր ասպարեզներում: Պատմականորեն կարճ ժամանակամիջոցում մեր Հայրենիքը հեքիաթային թռիչք կատարեց, թոթափեց իր դարավոր հետամնացությունը և դարձավ հզոր ու առաջավոր մի տերություն:

Ընդամենը չորս տասնամյակների ընթացքում արդյունաբերական արտադրությունը երկրում աճեց ավելի քան քառասուն անգամ: Միայն վերջին վեց տարում գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելացավ մեկ ու կես անգամ: Ամենուրեք հաջողությամբ կատարվում են ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի առաջադրանքները:

Հենց միայն վերջերս մեր պարտիան և կառավարությունը մի շարք խոշոր միջոցներ ձեռնարկեցին, որոնց նպատակն է էլ ավելի բարձրացնել աշխատավոր մասսաների կենսամակարդակը:

Այն դեպքում, երբ կապիտալիստական աշխարհը գալարվում է իր ներքին հակասությունների մեջ, հաղթանակած սոցիալիզմի երկիրն ավելի է լցվում կենսական ուժերով, դնում ու վճռում այնպիսի խնդիրներ, որոնց մասին բուրժուական հասարակարգում երազել անգամ անհնարին է: Հեռու չգնալու համար վերցնենք հարկերի վերացման վերաբերյալ ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջին սեսիայի կողմից ընդունված օրենքը: Այդ պատմական ակտի մեջ դրսևորված է սոցիալիստական սիստեմի առավելությունն իր դարն ապրած կապիտալիստական սիստեմի նկատմամբ: «Երբեք չի եղել և չի լինի կապիտալիստական այնպիսի պետություն,—ասում է Ն. Ս. Խրուշչովը,—որը կարողանա դիմել բնակչությունից գանձվող հարկերի վերացման: Եթե նա սիրտ աներ այդօրինակ օրենք հրապարակելու, ապա դրանով իսկ կստորագրեր հենց իր մահվան դատավճիռը, որովհետև բուրժուական ոչ մի պետություն չի կարող գոյություն ունենալ առանց աշխատավոր ժողովրդից հարկեր գանձելու»:

Մեր երկիրը հասել է զարգացման այնպիսի աստիճանի, որ առաջիկա տասնամյակում հնարավորություն կունենա լուծելու իր գլխավոր տնտեսական խնդիրը. նա ոչ միայն արտադրության բացարձակ ծավալով, այլև բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի թողարկումով կգերազանցի կապիտալիզմի ամենազորեղ, ամենահարուստ երկրին՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներին:

Կոմունիստական պարտիայի ներքին և արտաքին քաղաքականության

բնագավառներում ձեռք բերված պատմական հաղթանակները, մեր Հայրենիքի զարգացման փայլուն հեռանկարները բացառիկ բարենպաստ պայմաններ են ստեղծում գաղափարական-դաստիարակչական աշխատանքի համար:

Կոմունիստական պարտիան, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեն միշտ էլ մեծ նշանակություն են տվել գաղափարական աշխատանքին, ճշտորեն գնահատելով նրա դերը կոմունիստական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարում:

Մասսաների կոմունիստական դաստիարակության գործի կազմակերպման մարտական ծրագիր է ՍՄԿՊ Կենտկոմի «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» նշանավոր որոշումը:

Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հուլիսյան պլենումը հանգամանորեն քննության առնելով այդ որոշման կատարման ընթացքը, հանրագումարի բերեց մեր աշխատանքի առաջին արդյունքները:

Պլենումը նշեց, որ ՍՄԿՊ Կենտկոմի հունվարի 9-ի որոշումից հետո անցած ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքում նկատելի աշխուժություն է առաջացել: Ամենից առաջ պետք է ասել, որ մենք որոշակի արդյունքների ենք հասել այդ աշխատանքի երկու գլխավոր թերությունների՝ նրա կյանքից կտրվածության և ազդեցության ոլորտի նեղության հաղթահարման ուղղությամբ:

Բացահայտելով ու քննադատելով գաղափարական աշխատանքի թերությունները, ՀԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումը միաժամանակ նշեց, որ ՍՄԿՊ Կենտկոմի որոշումից հետո անցած յոթ ամիսներում ռեսպուբլիկայում տարվող պրոպագանդայի դրվածքը գնալով ավելի է մերձենում կյանքին, հետզհետե լայնացնելով իր ազդեցության ոլորտը՝ օգնում է կոմունիստական շինարարության պրակտիկ հարցերին: Կարևորն այն է, որ այդ բանն ավել կամ պակաս չափով տեղի է ունենում ոչ միայն պարտիական պրոպագանդայի, այլև գաղափարական աշխատանքի մյուս բնագավառներում, այդ թվում՝ գիտության, գրականության ու արվեստի, ժողովրդական կրթության և կուլտուր-լուսավորական հիմնարկների գործունեության մեջ:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների անհետաձգելի խնդիրն է՝ մեծ ուշադրությամբ և սիստեմատիկաբար ընդհանրացնել ձեռք բերված դրական փորձը և արմատավորել այն ամենուր:

Պետք է նկատի ունենալ, որ դրական երևույթները միշտ չէ, որ հանդես են գալիս բոլոր տեղերում միաժամանակ: Նրանք, նայած ստեղծված պայմաններին, աշխատանքի մի բնագավառում կարող են երևալ անմիջապես, մյուսում՝ ուշ: Ուրեմն չպետք է սպասել այնքան ժամանակ, որ դրական փորձը մեծ մասշտաբներ ընդունի, որպեսզի հարկ լինի նրանով զբաղվելու: Ընդհակառակը, պետք է կարողանալ դրական երևույթները տեսնել նույնիսկ նրանց սաղմնային վիճակում, հոգատարությամբ զարգացնել դրանք և ապա տարածել մեծ մասշտաբներով:

Սակայն ոչ բոլոր տեղերում են այսպես հասկանում դրական փորձի բացահայտման ու արմատավորման հարցը: Քիչ չեն դեպքերը, երբ արդյունաբերական այս կամ այն ձեռնարկությունում, կոլտնտեսությունում կամ սովխոզում ծնունդ առած նոր նախաձեռնության մասին նախ սկսում են աղմկել



տեղում, այնուհետև այդ աղմուկը տեղափոխվում է մամուլի էջերը: Եվ չանցած կարճ ժամանակ, աղմուկը դադարում է ու ամեն ինչ նորից սկսում է ընթանալ հին ձևով:

Ինչո՞ւ է այսպես պատահում. նախ և առաջ այն պատճառով, որ հաճախ մեր պարտիական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները այս կամ այն նոր նախաձեռնության պրոպագանդան սկսում են առանց լուրջ ուսումնասիրության, առանց խոր ընդհանրացումների: Պատահական չէ, որ շատ նախաձեռնություններ, չնայած դրանց շուրջը բարձրացրած աղմուկին, կարճ ժամանակ անց դադարում են գոյություն ունենալուց, կամ եթե շարունակում են գոյություն ունենալ, ապա միայն այն ձեռնարկության շրջանակներում, որտեղ դրանք ծնվել են:

Մի քանի տարի է, որ մեր պարտիական կազմակերպությունները, մամուլը խոսում են քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ասպարեզում Երևանի Կիրովի անվան և ալյումինի գործարաններում կուտակված փորձի մասին: Սակայն կոնկրետ օրինակներով ցույց չի տրվում, թե ինչպես է այդ ձեռնարկություններում կենսագործվում գաղափարական աշխատանքի կապը պրակտիկայի հետ: Այդ երկու կազմակերպությունների դրական աշխատանքի փորձի ընդհանրացման ու տարածման գործով դեռևս անբավարար են զբաղվում մեր մամուլի օրգանները, պարտիայի Երևանի կոմիտեն, Ստալինյան ու 26 կոմիսարների անվան շրջանային կոմիտեները: Վերջերս ՀԿՊ Կենտկոմը անդրադարձավ ալյումինի գործարանի պարտկազմակերպության աշխատանքի դրական փորձի ընդհանրացման հարցին: Պետք է հուսալ, որ ոչ միայն Երևանի, այլև ռեսպուբլիկայի արդյունաբերական մյուս ձեռնարկություններում ձեռք կառնվեն անհրաժեշտ միջոցներ ալյումինցիների փորձի տարածման ուղղությամբ: Վերցնենք մի այլ փաստ:

Բավական ժամանակ առաջ ՀԿՊ Կենտկոմը մանրամասնորեն ուսումնասիրեց Լենինական քաղաքի պարտիական կազմակերպությունների փորձը՝ աշխատավորների մեջ կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքի ուղղությամբ: Անցել են ամիսներ, բայց մեր շատ պարտիական կազմակերպություններ ոչ մի վճռական քայլ չեն անում այդ փորձն իրենց մոտ տարածելու համար:

Աշխատանքի լավ օրինակներ են ցույց տալիս մեր գիտա-հետազոտական ինստիտուտները, առանձին գիտնականներ, բայց այդ օրինակները հաճախ մնում են չուսումնասիրված, իսկ երբ ուսումնասիրվում են, կոնկրետ քայլեր չեն արվում դրանք տվյալ հիմնարկի շրջանակներից դուրս բերելու, մասսայականացնելու համար:

Պարտիան պահանջում է գաղափարական աշխատանքի բոլոր միջոցներն իսպաս դնել կոմունիզմի նոր ծիլերի զարգացման ու արմատավորման գործին: Ռեսպուբլիկայում վաղուց ծայր առած կոմունիստական աշխատանքի բրիգադաների համար պայքարող տասնյակ հազարավոր անձնվեր առաջավորների փորձի պրոպագանդան դեռևս անբավարար է ընթանում: Մամուլը, կինոն, հրատարակչությունները, ակումբներն այդ պատմական շարժման փայլուն կողմերի պրոպագանդմանը դեռևս մոտենում են դեպքից-դեպք, չեն կարողանում վառ ու բազմակողմանի օրինակներով մասսայականացնել նորը, առաջավորը:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն իր հունվարի 9-ի որոշման մեջ գաղափարական ֆրոնտի բոլոր աշխատողներից պահանջում է հմտորեն օգտագործել դրական օրինակի ուժը: Իսկ այդ անելու համար հարկավոր է բազմակողմանիորեն ուսումնասիրել կյանքը, ժամանակին տեսնել նորի ծիլերը, հոգատարությամբ աճեցնել դրանք և հասնել ամբողջ աշխատանքի բարելավմանը:

Իհարկե, դրական փորձի պրոպագանդան բնավ չի բացառում մեր աշխատանքներում եղած թերությունների քննադատությունը: Ընդհակառակը, դրանք իրար հետ օրգանապես կապված հարցեր են: Դրականի ընդհանրացումը պետք է հմտորեն զուգակցել թերությունների բացահայտման և դրանց անհապաղ վերացման միջոցառումներին: Այդ անհրաժեշտ է նաև այն պատճառով, որ գաղափարական աշխատանքում ձեռք բերված որոշ հաջողությունների կողքին դեռ կան լուրջ թերություններ, որոնց մասին հանգամանորեն խոսվեց ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի վերջին պլենումում: Չէ՞ որ գաղափարական աշխատանքի և նրա վճռական բնագավառի՝ պարտիական պրոպագանդայի գլխավոր թերությունները՝ կյանքից կտրվածությունը և ազդեցության ոլորտի նեղությունը լիովին չեն հաղթահարված:

Ճիշտ է, շատ տեղերում կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների հետ պրոպագանդայի կապի ամրապնդման հարցերն այժմ կենտրոնական տեղ են գրավում պարտիական-քաղաքական աշխատանքում: Բայց, դժբախտաբար, այդպես չէ վիճակը բոլոր կազմակերպություններում: Մի շարք պարտկազմակերպություններ դեռևս աշխատում են հին ձևով: Դրա գլխավոր պատճառն այն է, որ գաղափարական ֆրոնտի որոշ աշխատողներ մակերեսորեն են ըմբռնում պրոպագանդայի և կյանքի կապի հարցը: Նրանց թվում է, որ եթե պատեհ ու անպատեհ առիթներով մեջ բերեն մի քանի թվեր, փաստեր, արտադրության առաջավորների անուններ, ապա պրոպագանդայի և կյանքի կապի հարցը տեղնուտեղը կլուծվի: Այդպիսի պատկերացումը ոչ մի առնչություն չունի պարտիական պրոպագանդայի առաջ ծառացած իրոք լուրջ խնդիրների հետ:

Արդի պայմաններում գաղափարական աշխատանքի և պրոպագանդայի կապի հարցի ճիշտ ըմբռնման բանալին գտնվում է մեր պարտիայի գործունեության մեջ, որը տեսության և պրակտիկայի միասնության չգերազանցված օրինակ է հանդիսանում: Այդ միասնությունը բարձրացնում, նոր բովանդակություն է տալիս ինչպես կոմունիստական տեսությանը, այնպես էլ կոմունիստական պրակտիկային:

Սովետական ժողովուրդը թևակոխելով կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, կյանքի է վերածում այն գաղափարները, որոնք շարադրված են մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատություններում և պարտիայի որոշումներում: Այդ նշանակում է, որ մեզ մոտ կոմունիզմի գաղափարները միաձուլվել են կյանքի պրակտիկայի, սովետական մարդկանց առօրյա աշխատանքի հետ: Ուրեմն մեր ժողովուրդը լուծելով կոմունիզմի կառուցման այս կամ այն պրակտիկ հարցը, միաժամանակ լուծում է նաև տեսական հարցեր: Ահա թե ինչու այժմ չի կարելի մարքսիզմ-լենինիզմի տեսությունն ուսումնասիրել կյանքից կտրված, գրքային ձևով: Մյուս կողմից, չի կարելի նաև պրակտիկայի հարցերն ուսումնասիրելիս կտրվել



տեսությունից: Ընդհակառակը, գաղափարական բնագավառի աշխատողները պետք է կարողանան իմաստավորել պրակտիկան, այն բարձրացնելով տեսական ընդհանրացումների մակարդակին:

Ավելին. պետք է հասկանալ, որ այժմ գաղափարական աշխատանքը կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման համար մղվող համաժողովրդական պայքարի բաղկացուցիչ մասն է: Մեր աշխատանքը չպետք է սահմանափակվի կոմունիզմի ընդհանուր դրույթների լուսաբանմամբ: Դրա հետ միասին մենք պարտավոր ենք պրակտիկ խորհուրդներ, գործնական օգնություն ցույց տալ կոմունիզմ կառուցող մարդկանց: Սակայն այդ կարելի է անել միայն այն ժամանակ, եթե մեր գաղափարական ֆրոնտի աշխատողները սիստեմատիկաբար հոգ տանեն իրենց գիտելիքների հարստացման մասին, պարզ պատկերացում ունենան ժողովրդական տնտեսության զարգացման ուղիների, արտադրության կազմակերպման հիմնական սկզբունքների, պարտիայի առջև ծառացած հրատապ խնդիրների վերաբերյալ:

Եվ վերջապես, պրոպագանդան կյանքի հետ կապելու համար անհրաժեշտ է ավելի շատ ու ավելի բազմակողմանիորեն զբաղվել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման հարցերով: Մենք պետք է այնպես անենք, որ մեր երկրում ապրող բոլոր մարդիկ հասկանան, որ կոմունիզմը և աշխատանքն անբաժան հասկացություններ են, որ կոմունիստական սկզբունքներին անցնելը ենթադրում է աշխատանքը դարձնել մարդու ամենաառաջին կենսական պահանջմունքը: Իսկ աշխատանքի նկատմամբ այդ նոր վերաբերմունքը հեռավոր ապագայի գործ չէ, այն ծագում է մեր այժմյան կյանքի պրակտիկայում, կոմունիզմ կառուցող մարդկանց ամենօրյա գործունեության մեջ:

Դժբախտաբար դեռ քիչ չէ այն պրոպագանդիստների, դասախոսների ու ագիտատորների թիվը, որոնք իրենց գործունեության մեջ չեն կարողանում տեսությունը շաղկապել պրակտիկ խնդիրների հետ: Բավարարվելով իրենց ձեռք բերած գրքային գիտելիքներով, նրանք չեն ձգտում ընդարձակել իրենց մտահորիզոնը, հարստացնել այն պրակտիկայի փորձով: Ահա թե ինչու այդպիսի մարդիկ հաճախ հաջողություն չեն գտնում իրենց ունկնդիրների շրջանում, նրանց զեկուցումներին, դասախոսություններին, զրույցներին մասնակցելը դառնում է ձանձրալի ու անօգուտ մի զբաղմունք:

Դեռ շատ տեղերում կոմունիստների քաղաքական ուսուցումը, դասախոսական պրոպագանդան, մասսայական-դաստիարակչական աշխատանքը ընթանում է հին ձևով և քիչ ազդեցություն է ունենում կյանքի վրա: Այդպես է, օրինակ, վիճակը Երևանի ժամացույցի գործարանում: Այստեղ առաջին հայացքից թվում է թե ամեն բան կարգին է, անխափան գործում են խմբակները, սեմինարները, գործարանի ղեկավարները հանդես են գալիս զեկուցումներով ու զրույցներով, բայց այդ ամենը քիչ բանով է նպաստում ձեռնարկության գործերի լավացմանը: Եվ դա պատահական չէ, քանի որ այդ գործարանում քաղաքական աշխատանքը վերացական բնույթ է կրում, սերտորեն չի կապված արտադրության կոնկրետ խնդիրների հետ: Գործարանը սիստեմատիկաբար չի կատարում իր արտադրական առաջադրանքները, պրոպագանդիստներն ու ագիտատորներն այդ ամոթաբեր երևույթի պատճառները բացահայտելու փոխարեն, զբաղված են ընդհանուր կոչերով:

Նույն ձևով է կազմակերպված քաղաքական-դաստիարակչական աշխատանքը նաև Ազիզբեկովի շրջանի Ձորիթափի ոչխարաբուծական սովխոզում: 1959 թվականի տնտեսական տարին սովխոզը փակեց մեծ վնասներով. դրությունը ոչնչով չլավացավ այս տարվա առաջին կիսամյակում: Բավական է ասել, որ միայն վերջին մի քանի ամիսներում տեղի է ունեցել ավելի քան 800 գլուխ ոչխարի կորուստ: Սակայն այդ հանգամանքը քիչ է մտահոգում սովխոզի պարտիական կազմակերպության անդամներին, որոնք բոլորն էլ, ի դեպ, ընդգրկված են գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակում և իրար հետևից ավարտում են ծրագրով նախատեսված թեմաների «ուսումնասիրությունը»: Տարօրինակն այն է, որ պարտիայի շրջանային կոմիտեի քարտուղար ընկ. Պ. Հարությունյանն այս ամենի մասին իմանալով հանդերձ, դեռ փորձում է համոզել, որ այդ սովխոզը քաղաքական ուսուցման գործում «ուսանելի փորձ է ձեռք բերել»:

Մի շարք պարտիական կազմակերպություններում ՍՄԿՊ Կենտկոմի վերոհիշյալ որոշման անբավարար կենսագործման գլխավոր պատճառը կազմակերպական աշխատանքի թուլությունն է, որը պետք է հաղթահարվի:

Այժմ պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրներից մեկը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հուլիսյան պլենումի որոշումների անշեղ կենսագործումն է: Լայնորեն պրոպագանդելով ու մասսայականացնելով ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումները, պարտիայի քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները քաղաքական ու կազմակերպական աշխատանքի միջոցով բոլոր բանվորներին, ինժեներա-տեխնիկական անձնակազմին, գիտա-հետազոտական ինստիտուտների աշխատողներին պետք է մոբիլիզացնեն՝ վճռական բեկում մտցնելու տեխնիկական պրոգրեսի գործում, ապահովելով այն բոլոր խնդիրների կատարումը, որ առաջադրել է մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն:

ՀԿՊ Կենտկոմի պլենումում նշվեց, որ առաջվա պես շատ ելույթներ, հոդվածներ ու գրքեր, որոնք կոչված են մասսաներին դաստիարակելու կոմունիստորեն, շարունակում են տառապել վերացականությամբ: Դրա պատճառներից մեկն էլ որոշ դասախոսների ու պրոպագանդիստների մտահորիզոնի նեղությունն է: Մեր օրերի համար այնքան մեծ նշանակություն ունեցող այնպիսի մի հարց, որպիսին աշխատանքի հանդեպ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակումն է՝ մեր պրոպագանդայում հաճախ էպիզոդիկ բնույթ է կրում:

Անհրաժեշտ է հասնել այն բանին, որպեսզի պարտիական պրոպագանդայի բոլոր ձևերը օժտված լինելով գործունակությամբ, կիրառվեն պրոպագանդվող երևույթների ճիշտ վերլուծությամբ և խոր ընդհանրացումներով, համապատասխանեն հասարակական տարբեր խավերի պահանջմունքներին:

Մեր պարտիայի XXI համագումարը խնդիր դրեց՝ սովետական մարդկանց դաստիարակել կոլեկտիվիզմի և աշխատասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության, նոր հասարակարգի բարոյականության վեհ սկզբունքների ոգով, մարքսիզմ-լենինիզմի ոգով: Սակայն չպետք է մոռանալ, որ կոմունիստական բարոյականության նորմերի արմատավորումը տեղի է ունենում կապիտալիզմի մնացուկների դեմ մղվող պայքարում: Հանրահայտ ճշմարտություն է, որ այնտեղ, ուր գաղափարական աշ-



խատանքն իր կոչման բարձրության վրա չի գտնվում, ուր թուլանում է մեր գաղափարախոսության ազդեցությունը, հեղ է առաջանում թշնամական ազդեցությունների ներթափանցման համար: Ուրեմն, հարկավոր է, ավելի զգոն ու աչալուրջ լինել, ժամանակին մերկացնել բուրժուական կեղծիքն ու սուտը, նրա գաղափարախոսության ազդեցության բոլոր արտահայտությունները:

Հայտնի է այն մեծ աշխատանքը, որ վերջին տարիներին կատարվել է մեր ռեսպուբլիկայում՝ անցյալի ժառանգության ճիշտ գնահատման գործում: Սակայն դրա հետ միասին մեր առանձին գիտնականներ հախուռն մոտեցում են հանդես բերում անցյալի ժառանգության նկատմամբ: Կորցնելով չափի զգացումը, նրանք ոչ մի ստվեր չեն նկատում անցյալի այս կամ այն հեղինակի գործունեության մեջ, նրա գրչի տակից դուրս եկած յուրաքանչյուր տողը համարում են ճիշտ և առանց մեկնաբանությունների հրամցնում մասսայական ընթերցողին: Իհարկե, այդպիսի մոտեցումը իրականում առնչություն չունի անցյալի ժառանգության գնահատման լենինյան սկզբունքների հետ, որոնց հիմքում ընկած է պարտիական մոտեցումը, երևույթների ճիշտ լուսաբանումը:

Անցյալի ժառանգության գնահատման գործում թույլ տված այդ սխալները որքան էլ եզակի լինեն, այնուամենայնիվ չի կարելի թերագնահատել նրանց պատճառած վնասը: Հայաստանի Կոմունիստական պարտիան, նրա Կենտրոնական Կոմիտեն միշտ էլ անողոք են եղել բուրժուական գաղափարախոսության, ռևիզիոնիզմի, նացիոնալիզմի ամենափոքր իսկ դրսևորումների նկատմամբ: Այսուհետև ևս մենք պետք է սրբությամբ պահպանենք մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների անաղարտությունը:

Պլենումը պարտիական կազմակերպություններին պարտավորեցրեց կոնկրետ միջոցներ ձեռք առնել, որպեսզի իսպառ վերացվեն գաղափարական խոտոր երևույթները, որոնք արգելք են հանդիսանում նոր մարդու դաստիարակության գործում: Չի կարելի նորմալ համարել, երբ հասարակական գիտությունները, ինչպես նաև արվեստն ու գրականությունը դեռևս քիչ են զբաղվում ժամանակակից կյանքի հարցերով: Իհարկե, մեր ժողովրդի հեռավոր ու մոտ անցյալի մասին առաջիկայում էլ պետք է մոնոգրաֆիաներ, վեպեր, դրամաներ ստեղծվեն: Բայց գիտության, գրականության ու արվեստի գլխավոր խնդիրը պետք է լինի արդի կյանքը, կոմունիզմ կառուցող մարդկանց հերոսական առօրյան, նրանց գործերն ու խոհերը:

Պարտիայի XXI համագումարը խնդիր դրեց մեր տնտեսագետների, փիլիսոփաների, պատմաբանների առաջ՝ խորապես հետազոտել սոցիալիզմից դեպի կոմունիզմ կատարվող անցման օրինաչափությունները, ուսումնասիրել մեր երկրի տնտեսական շինարարության փորձը, ստեղծագործաբար ընդհանրացնել և տեսականորեն լուծել կյանքի կողմից առաջադրվող նոր հարցերը:

Դրանից անցել է արդեն ավելի քան մեկ ու կես տարի: Ի՞նչ են արել այդ ժամանակամիջոցում մեր գիտնականները: Բացի մի երկու բրոշյուրից, այդ թեմաներով ոչինչ չի հրատարակված: Մինչդեռ դրա փոխարեն մեկը մյուսի հետևից լույս են տեսնում հաստափոր գրքեր, որոնք նվիրված են անցյալ դարերի, կամ մեր դարասկզբի պատմությանը:

Անշուշտ պետք է ողջունել սովետահայ արձակի և դրամատուրգիայի մեջ նկատվող թեքումը դեպի արդիական թեմատիկան, բայց մեր օրերի վերար-

տադրմանը նվիրված գործերի մի զգալի մասը ցածր է իր գեղարվեստական մակարդակով և չի կարող բավարարել սովետական խստապահանջ ու բարձրաճաշակ ընթերցողին։

Հրատարակչության աշխատողների լիբերալ վերաբերմունքի պատճառով, երբեմն լույս աշխարհ է հանվում գրական խոտանը։ Եվ զարմանալի է, որ մեր մամուլի օրգանները հաճախ լռությամբ են անցնում այդ բացասական երևույթի կողքով, հասարակության դատաստանին չեն հանձնում խոտանարարներին, որոնք փչացնում են մեր ընթերցողների ճաշակը։

Գաղափարական աշխատանքի վիճակի բարելավման համար մղվող պայքարում անգնահատելի դեր ունի կատարելու մեր ինտելիգենցիան։ Պարտիական կազմակերպությունները ՀԿՊ Կենտկոմի վերջին պլենումի որոշումից ելնելով, պետք է կոնկրետ միջոցառումներ մշակեն մասսաների կոմունիստական դաստիարակության գործում ինտելիգենցիայի լայն խավերի մասնակցությունն ապահովելու համար։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հունվարի 9-ի և ՀԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումները երկարատև ժամանակաշրջանի ծրագիր են, որոնց հաջող կենսագործման համար անհրաժեշտ է մոբիլիզացնել բոլոր ուժերը։

Այժմ մեր պարտիական կազմակերպությունների անհետաձգելի խնդիրն է՝ ամրապնդել առաջին քայլերը, համարձակորեն բացահայտել և անհապաղ վերացնել գաղափարական աշխատանքում եղած թերությունները և հասնել նոր հաջողությունների։

Պարտիական պրոպագանդան և մեր գաղափարական ողջ աշխատանքը պետք է ընթանան կյանքի հետ, հանուն նոր կյանքի։

---



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱՌԵՎՏՐԻ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ

Ա. ՄԻԿՈՅԱՆ

Վերջին ժամանակներս միջազգային առևտրի հարցերը մեծ այժմեականություն են ստացել։ Պատերազմը վերջանալուց հետո առաջին տարիներին առևտրի գլխավոր հարցը մատակարարող փնտրելն էր, և ոչ թե գնորդ փնտրելը։ Իսկ վերջին տարիներս, արտադրության աճման կապակցությամբ, այն երկրներում, որտեղ այն խիստ ուժեղ էր պատերազմի ժամանակ, արտադրության ընդհանուր, թեև խիստ անհավասարաչափ վերելքի պատճառով ամբողջ աշխարհում, գլխավոր պրոբլեմը կրկին դարձավ գնորդ փնտրելը, այսինքն՝ վաճառահանման արտաքին շուկաների հարցը։ Առանց այդ հարցը լուծելու կապիտալիստական երկրների համար դժվար է ապահովել արտադրության հետագա աճը։

Երկրորդ համաշխարհային պատերազմը վերջանալուց մի փոքր անց մի շարք երկրներ ՄԱԿ-ի շրջանակներից դուրս ստորագրեցին գլխավոր համաձայնագիր տարիֆների և առևտրի մասին (ԳԱՏՏ)։ Այդ համաձայնության մասնակիցները լայն խնդիրներ էին դրել իրենց առջև, հույս ունենալով ԳԱՏՏ-ի շրջանակներում գտնել միջազգային առևտրի շատ պրոբլեմների լուծումը։ Սակայն, ինչպես կյանքը ցույց տվեց, այդ հույսերը չարդարացան։

Ի՞նչ հիմքեր կան այդ բանը պնդելու համար։ Ես կարծում եմ, բավական է բերել թեկուզ երկու փաստ։

Առաջին։ Չնայած նրան, որ ԳԱՏՏ-ը գոյություն ունի 13 տարի, նրա լիիրավ անդամներ են ՄԱԿ-ի մեջ մտնող 82 երկրներից միայն 37-ը։ Եթե դա հիրավի լավ կազմակերպություն է, որը ունիվերսալության է հավակնում, ապա ինչո՞ւ ՄԱԿ-ի անդամ-երկրների մեծ մասը չի ցանկանում միանալ նրան։ Դրա պատճառը պետք է փնտրել այն բանում, որ ԳԱՏՏ-ի գործունեությունը ի սպաս է դրված գերազանցապես բարձր զարգացած էկոնոմիկա ունեցող արևմտյան երկրների շահերին։ Շատ երկրներ, որոնք ու իրենց մեղքով ետ են մնացել արդյունաբերական զարգացման տեսակետից, գտնում են, որ ԳԱՏՏ-ի մեջ մտնելը, նկատի ունենալով նրա սկզբունքներն ու պրակտիկան, կխանգարի նրանց ինդուստրիալ զարգացմանը։

Այստեղից բխում է, որ եթե ԳԱՏՏ-ը չվերակառուցվի, այլ պահպանվի իր ներկայիս կերպարանքով, ապա նա, եթե խոսենք աշխարհի երկրների մեծա-

---

[1] Արտատպում ենք «Мировая экономика и международные отношения» ամսագրի 6-րդ համարից։ Խմբ.։

մասնության շահերի մասին, հեռանկարներ չի ունենա, որովհետև այդ մեծամասնությունը գտնվում է ինդուստրացման սկզբնական ստադիայում, իսկ արագ զարգացման նպատակով նորմալ պայմաններ ստեղծելու համար, ըստ երևույթին, անհրաժեշտ են ուրիշ սկզբունքներ և ուրիշ պրակտիկ գործունեություն։ Իր նկատառումներով ԳԱՏՏ-ին չի մասնակցում նաև սոցիալիստական երկրների մեծ մասը։

Երկրորդ։ Կարելի է ասել, որ ԳԱՏՏ-ը, ակներևաբար, ոչ լիովին է համապատասխանում նաև Արևմուտքի արդյունաբերական տեսակետից զարգացած բոլոր երկրների շահերին։ Այլապես ինչո՞վ բացատրել Արևմտյան Եվրոպայում վեց երկրների «ընդհանուր շուկայի» և յոթ երկրների («ազատ առևտրի փոքր գոտու») շուկայի ծագումը։ Էլ չեմ խոսում այն մասին, որ լատինաամերիկյան երկրները ևս, ելնելով այլ դրդապատճառներից և իրենց սեփական շահերից, որոշել են ստեղծել իրենց շուկան, որը, ըստ երևույթին, պետք է ընդգրկի Լատինական Ամերիկայի բոլոր երկրները կամ դրանց մեծ մասը, որոնցից շատերը մտնում են ԳԱՏՏ-ի մեջ։

Այդ ամենը վկայում է այն մասին, որ ԳԱՏՏ-ը չի բավարարում ժամանակակից միջազգային առևտրի պահանջները և չի կարող իր ներկայիս ձևով հույս ունենալ դառնալու ունիվերսալ կազմակերպություն։ Ահա է այլ ուղիներ փնտրելու պահանջը։

Սակայն այն, ինչ ստեղծել են արևմտաեվրոպական երկրները այլ ուղիներ փնտրելիս, ամենևին էլ լավագույնը չէ, որովհետև հարկ եղած ուղղությամբ որոնումներ կատարելու և թեկուզ ամբողջությամբ վերցրած Եվրոպայի համար ունիվերսալ առևտրական կազմակերպություն ստեղծելու փոխարեն նրանք գնացին Եվրոպան նոր բլոկների պառակտելու ուղիով։

Արևմուտքում կարելի է երբեմն լսել, թե Արևելքի և Արևմուտքի միջև պառակտումն իբր թե ինչ-որ չափով արդարացված է, որովհետև աշխարհի այդ երկու մասերի սոցիալական կառուցվածքը տարբեր է։ Իրականում, նույնիսկ, սիստեմների տարբերությունը ամենևին էլ չի արդարացնում ներկայիս պառակտումը։ Նրանք, ովքեր Սովետական Միության նման հաստատ կանգնած են համագոյակցության դիրքերում, հանդես են գալիս այդպիսի պառակտումը հաղթահարելու օգտին, հանդես են գալիս նոր բլոկների դեմ, որովհետև դրանք չեն ծառայում խաղաղ գոյակցության ամրապնդման գործին։ Իհարկե, տարբեր սոցիալ-տնտեսական սիստեմների առկայությունը առաջ է բերում միջազգային համագործակցության նոր ձևեր փնտրելու անհրաժեշտություն։ Համենայնդեպս, ներկայումս արդեն ոչ ոք, անշուշտ, ոչ մի տարակուսանք չունի այն բանում, թե որքան վնասակար է առևտրի զարգացման արգելումը Արևմուտքի և Արևելքի միջև։

## Արևմտյան Եվրոպայի մեկուսացած տնտեսական խմբավորումները խորացնում են Արևմուտքի առևտրական քաղաքականության ճգնաժամը

Իսկ ինչպիսի՞ն է Արևմտյան Եվրոպայում ստեղծված մեկուսի տնտեսական խմբավորումների բնույթը։

Արևմտյան Եվրոպան տնտեսական, ասենք ո՛չ միայն տնտեսական, տեսակետից, բաժանվեց երկու բլոկի։ Ընդ որում ՆԱՏՕ-ի մեջ մտնող երկրների



մի մասը մտնում է «վեցյակի» մեջ, իսկ ՆԱՏՕ-ի անդամների մի մասը մըտնում է «յոթնյակի» մեջ։ Չի կարելի չնկատել, որ այդ խմբավորումների ներսում ո՛չ միայն միաձուլություն չկա, այլ ընդհակառակը, դրանք հակասություններից տակնուվրա են լինում։

Պնդում են, թե «վեցյակը» ոչ այնքան տնտեսական խմբավորում է, որքան քաղաքական։ Համենայն դեպս շատ ամերիկացիներ ու անգլիացիներ իրենց արտահայտություններում ընդգծում են «ընդհանուր նոր շուկայի» քաղաքական բնույթը։

Իսկ «յոթնյակի» հեղինակները պնդում են, թե իրենց միավորումը կրում է բացառապես տնտեսական բնույթ, թեև հանուն օբյեկտիվության պետք է ասել, որ նրանք չեն կարող խուսափել «յոթի շուկայի» քաղաքական փոխավորումից, որովհետև այնտեղ գլխավորողը Անգլիան է, որը մտնում է ՆԱՏՕ-ի մեջ և ձգտում է իր ստեղծած բլոկն օգտագործել ո՛չ միայն Արևմտյան Եվրոպայի շուկաներում իր դիրքերն ամրապնդելու, այլև քաղաքական ազդեցությունն ուժեղացնելու համար։ «Յոթնյակում» մի քանի չեզոք երկրների առկայությունը, հասկանալի է, չի կարող այդ կազմակերպությունն ազատել անցանկալի քաղաքական երանգավորումից։

Դրան պետք է ավելացնել, որ, ինչպես երևում է, Արևմտյան Եվրոպայում առաջացած տնտեսական խմբավորումները ձեռնտու չեն նաև ԱՄՆ-ին՝ ՆԱՏՕ-ի գլխավոր նախաձեռնողին և պարագլխին։ Այլապես դժվար է հասկանալ այդ կազմակերպությունների նկատմամբ ԱՄՆ-ի ներկայացուցիչների դիրքը, որն առավել ցայտուն կերպով արտահայտվել է ԱՄՆ-ի պետական քարտուղարի տեղակալ Դիլլոնի ելույթներում։

Ինչպես հայտնի է, Դիլլոնը, լինելով Լոնդոնում, այնուհետև Փարիզում, Բոննում և Բրյուսելում, իր ելույթներում խոսում էր եվրոպական շրջանում դոլլարի դիսկրիմինացիայի մասին և գանգատվում, թե «յոթի շուկան» ուղղված է այն նպատակին, որպեսզի հարվածի ԱՄՆ-ի էքսպորտին։ Այդ տեսակետից ուշադրության է գրավում նաև էքսպորտի հարցի շուրջ՝ պրեզիդենտ Էյզենհաուերի կոնգրեսին հղած դիմումը, որից երևում է, որ դա պ-րն Դիլլոնի սոսկ անձնական կարծիքը չէ և ոչ էլ հռետորական ոճի չափազանցում։

ԱՄՆ-ը կիրառում և ուրիշներից պահանջում են կիրառել խտրականություն սոցիալիստական երկրների հետ ունեցած առևտրում։ Իսկ այժմ նրանք արդեն իրենք են գանգատվում այն խտրականությունից, որ ԱՄՆ-ի վերաբերմամբ իրականացնում են եվրոպական երկրները։ Ինչպես երևում է, ամերիկյան քաղաքականության ճակատագիրը որոշողները մտածելու բան ունեն։

Թեև «ընդհանուր շուկան» հարված է հասցնում ԱՄՆ-ի տնտեսական շահերին, Դիլլոնն իրեն մխիթարում էր նրանով, որ նրա սահմաններում Արևմտյան Եվրոպայում կատարվում է քաղաքական միավորում, որը մերձենում է Ֆրանսիային, ԳՖՌ-ին և Իտալիային։ Դրանով էլ, ըստ երևույթին, ընդհանրապես բացատրվում է այդ կազմակերպության նկատմամբ դրական վերաբերմունքը ԱՄՆ-ի կողմից, որոնք առաջին հերթին հոգ են տանում ՆԱՏՕ-ի ամրապնդման համար։

Մինչդեռ բոլորին հայտնի է ՆԱՏՕ-ի, որպես ռազմական բլոկի, բացասական վերաբերմունքը միջազգային հարաբերությունների նկատմամբ։ ՆԱՏՕ-ն ո՛չ միայն չհեշտացրեց միջազգային առևտուրը, այլև վատացրեց

դրա պայմանները, առանձնապես առևտրի պայմանները մի կողմից սոցիալիզմի երկրների, մյուս կողմից՝ Արևմտյան Եվրոպայի երկրների և ԱՄՆ-ի միջև։

Այժմ ԱՄՆ-ը, վախենալով դաշնակիցների միջև նոր երկպառակտումների հասունացումից և Արևմտյան Եվրոպայում միմյանց հետ մրցակցող երկու մեկուսի շուկաների գոյացման կապակցությամբ առևտրական պատերազմի սպառնալիքից, այլև գտնվելով այդ երկրներն արտահանվող ամերիկյան էքսպորտի դիսկրիմինացիայի փաստի առաջ, մտահղացել են նոր խմբավորում ստեղծելու պլան։ Նոր խմբավորման մեջ, որին, կարծեմ, ուզում են «Ատլանտյան տնտեսական ընկերություն» անունը տալ, փորձում են միացնել թե՛ «վեցյակը», թե՛ «յոթնյակը», թե՛ այն արևմտաեվրոպական երկրները, որոնք դրանց մեջ չեն մտել։ Նկատի է առնվում ԱՄՆ-ի և Կանադայի մասնակցությունը, և այն հանգամանքը, որ այդ միավորման մեջ գլխավորողի դերը, իհարկե, պատկանելու է ԱՄՆ-ին։

Նոր խմբավորման բնույթը դեռ լիովին չի երևում դրա ստեղծումը ծածկող մշուշի միջից, բայց, դատելով ըստ ամենայնի, դա կլիներ ինչ-որ մի «տնտեսական ՆԱՏՕ», ռազմական ՆԱՏՕ-ի ֆիլիալ, այն տարբերությամբ, որ այդ ֆիլիալում կներգրավվեին նաև չեզոք երկրներ։ Նոր կազմակերպությունը, ըստ Դիլլոնի մտահղացումների, պետք է Եվրոպայի էկոնոմիկան ենթարկեր «ատլանտյան քաղաքականության» նպատակներին, հակադրվեր սոցիալիստական երկրների հետ կատարվող առևտրին, մշակեր զարգացած կապիտալիստական երկրների «միասնական քաղաքականություն»՝ տնտեսապես թույլ զարգացած երկրների ռեսուրսները շահագործելու նպատակով, ինչպես նաև լիովին բացեր սահմանները դեպի Արևմտյան Եվրոպայի շուկաները ամերիկյան ապրանքների ու կապիտալների հոսանքի համար։

Այդպիսի մոտեցումը, իհարկե, չի կարող լուծել առևտրի հասունացած հարցերը, չի կարող նաև լուծել Եվրոպայում եղած առանձին խմբավորումների միջև գոյություն ունեցող հակասությունները։ Այդպիսի մոտեցման ոգեշնչողները ընթանում են «սառը պատերազմի» զարգացման ուղիով, միջազգային դրության բարելավման կուրսին հակառակ։

Եվ այդ միայն մեր տեսակետը չէ։ Եվրոպայում մեկուսի առևտրական բլոկների ամրապնդման ու ընդլայնման պլանների քննադատությունը, և այն էլ շատ սուր քննադատությունը, գնալով ավելի բարձր է լսվում արևմտաեվրոպական գործարար շրջաններում և հասարակայնության մեջ։

Իսկ ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա առաջարկություն մտցրեց ստեղծել բոլորի համար ընդհանուր եվրոպական ռեգիոնալ առևտրական կազմակերպություն, որին մասնակցել կարող են նաև ԱՄՆ-ը, և գտնում է, որ շատ լավ կլիներ, եթե հաջողվեր հավաքել արտաքին առևտուրը վարող մինիստրներին և անկեղծորեն խոսել հասունացած հարցերի մասին, բոլորի հետ միասին փնտրել եվրոպական ու համաշխարհային կապերի հետագա զարգացման կոնկրետ ուղիներ։

Չի կարելի, այնուհետև, չնշել, որ տնտեսական բլոկների մասնակիցները վատացնում են նաև այն կապիտալիստական երկրների հետ կատարվող առևտրի պայմանները, որոնք չեն մտնում ռազմական բլոկների մեջ։

Նայեցեք, օրինակ, Ռաբատում հունվարին տեղի ունեցած Աֆրիկայի



համար ՄԱԿ-ի Տնտեսական հանձնաժողովի սեսիայի «Տնտեսական դրությունն ու տենդենցները Աֆրիկայում» հիմնական հարցի վերաբերյալ նյութերը։ Գվինեայի Ռեսպուբլիկայի պատվիրակը, Լիբերիայի պատվիրակը, աֆրիկական համարյա թե բոլոր պատվիրակները հանդես եկան Եվրոպայում «ընդհանուր շուկայի» դատապարտումով։ Մի՞թե դրանք պատահական ելույթներ են։

Վերջերս ես առիթ ունեցա ծանոթանալու մեքսիկական «Արտաքին առևտուր» ժուռնալի անցյալ տարվա դեկտեմբերի առաջնորդող հոդվածի հետ։ Հոդվածում այն միտքն է անցկացվում, որ «սառը պատերազմը» բացասաբար անդրադարձավ ո՛չ միայն Արևելքի ու Արևմուտքի միջև կատարվող առևտրի վրա, այլև շատ բանում խանգարեց նաև Արևմուտքի երկրների տնտեսական փոխհարաբերություններին, մասնավորապես Լատինական Ամերիկայի և զարգացման պրոցեսում գտնվող մյուս շրջանների առաջարկած միջոցառումներին։

Հոդվածի հեղինակները հանգում են կարևոր հետևության։ Նրանց կարծիքով համաշխարհային առևտրի բարելավումը հնարավոր է այն խոչընդոտների վերացման ճանապարհին, որոնք խանգարում են առևտրին, մասնավորապես, Արևելքի ու Արևմուտքի միջև կատարվող առևտրին, որպիսի հանգամանքը կընդլայներ համաշխարհային առևտրի տարբեր շրջանների տնտեսական փոխադարձ կապը։

Վերը նշված բոլոր փաստերից չի կարելի չհանգել այն հետևության, որ միջազգային առևտրի բնագավառում արևմտյան երկրների քաղաքականությունը ներկայումս գտնվում է ճգնաժամի վիճակում։ Այդ երկրներն ի վիճակի չեն կառավարել ո՛չ արտադրությունը, որի ծավալը շարունակում է մեծանալ, ո՛չ արևմտյան երկրների շուկաները, որոնք գնալով ավելի ու ավելի են նեղանում արտադրության աճող հնարավորությունների համեմատությամբ։ Իսկ միջազգային առևտրի բնագավառում արևմտյան երկրների քաղաքականությունը ո՛չ միայն չի թուլացնում, այլև սրում է այդ անհամապատասխանությունը, այդ քաղաքականությունը չի համապատասխանում նվազ զարգացած երկրների էկոնոմիկայի վերելքին և դրանց արտաքին առևտրի պոտենցիալի աճման շահերին, չի վերացնում միջազգային փոխանակության ճանապարհին ընկած չծախվող ապրանքների այն արհեստական կուտակումները, որոնք գոյացել են «սառը պատերազմի» հետևանքով։

Երկար ժամանակ պետությունների միջև կատարվող արտաքին առևտրի մեջ գլխավորը և ունիվերսալը, ընդհանուր ճանաչում գտածը ազգերի առավելագույն բարեհաջողության սկզբունքն է։ Այդ սկզբունքը ինչպես տեսականորեն, նույնպես և գործնականորեն համապատասխանում էր էկոնոմիկայի ազգային զարգացման շահերին, նպաստելով միջազգային առևտրի աճմանը։ Այդ սկզբունքը տնտեսական զարգացման շահերին համապատասխանում է նաև մեր օրերում։

Իսկ ինչ վերաբերում է այն փորձերին, որ ներկայումս կատարվում են Արևմուտքի առանձին երկրների կամ երկրների խմբերի կողմից տնտեսական հարաբերությունների նոր սկզբունքների մշակման ոլորտում, ինչպես նաև այն պլաններին, որ այժմ այնտեղ մտահղանում են, ապա դրանք չեն կարող լուծել համաշխարհային առևտրի զարգացման խնդիրները, որովհետև

դրանք այս կամ այն չափով հիմնված են խմբավորումներին չմասնակցող երկրների առևտրի դիսկրիմինացիայի վրա։

Այդ փորձերը հակադրվում են միջազգային առևտրի խելամիտ սկզբունքին՝ առավելագույն բարեհաջողության սկզբունքին։ Արևմուտքում կան տնտեսաբաններ, որոնք գտնում են, թե այդ սկզբունքն արդեն իրեն սպառել է, որի հետ, իհարկե, ոչ մի կերպ չի կարելի համաձայնել։

## Միջազգային առևտուրը կենսական պահանջմունք է բոլոր պետությունների համար

Մեր համոզմունքով, միջազգային առևտրի հեշտացման և զարգացման միջոցները չպետք է փնտրել աշխարհը առանձին առևտրական բլոկների պառակտելու ուղիներում։ Բնական է, չի կարելի հաշվի չառնել, որ երկու համաշխարհային սիստեմների, հասարակական արտադրության երկու տարբեր սիստեմների գոյացումով կազմվեց նաև երկու համաշխարհային շուկա՝ սոցիալիստական և կապիտալիստական շուկաներ։ Բայց դա ամենևին էլ չի բացառում բոլոր երկրների միջև լայն ապրանքափոխանակության անհրաժեշտությունը, չի բացառում և բոլորի համար ընդհանուր համաշխարհային շուկայի առկայությունը։ Դեռ ավելին, համագոյակցության սկզբունքը, որ ընդունել են սոցիալիստական երկրները և ուրիշ շատ այլ երկրներ, ենթադրում է տնտեսական լայն կապեր երկու տարբեր լագեր կազմող երկրների միջև։ Ուստի պետք է ստեղծվեն այնպիսի պայմաններ, որոնք հեշտացնեն բոլոր երկրների միջև կատարվող փոխադարձ շահավետ ապրանքափոխանակությունն ու ծառայությունները՝ աշխատանքի միջազգային բաժանման կարիքների համեմատ, որպես մի օբյեկտիվ անհրաժեշտություն, որն իր արտահայտությունը գտնում է համաշխարհային առևտրի զարգացման մեջ։

Աշխատանքի միջազգային բաժանումը չի կարելի դիտել որպես ստատիկ, լճացած մի բան։ Այդ բաժանումը պետք է արտացոլի տնտեսական կյանքի դինամիզմը։ Ընդսմին նա իր դրական դերը կատարում է միայն այն դեպքում, եթե նպաստում է յուրաքանչյուր երկրի բազմակողմանի տնտեսական զարգացմանը։ Արտադրողական ուժերի զարգացումը գտնվում է այնպիսի մակարդակի վրա, որ աշխատանքի միջազգային բաժանումից բխող օգուտների ու առավելությունների լայն օգտագործումը ավելի, քան այդ երբևէ եղել է, հանդիսանում է կենսական պահանջմունք։ Ընդ որում, իհարկե, պետք է հաշվի առնվեն մայր ցամաքների ու երկրների խմբերի առանձնահատկությունները, նրանց զարգացման մակարդակը, տնտեսության պահանջմունքները, սոցիալ-տնտեսական կառուցվածքը և ազգային ակնկալությունները, որպիսիք ժողովուրդներին առաջ են մղում։

Դա հնարավոր է ինչպես համաշխարհային առևտրի ընդհանուր սկզբունքներ մշակելու միջոցով, նույնպես և առանձին մայր ցամաքներ ընդգրկող ռեգիոնալ համաձայնությունների հիման վրա, կամ երկրների միջև երկկողմանի համաձայնությունների հիման վրա, եթե նրանք անհրաժեշտ են համարում այդպիսի համաձայնություններ ունենալ։

Խոսելով ռեգիոնալ և երկկողմանի համաձայնությունների մասին, պետք է հաշվի առնել այն փաստը, որ Արևմտյան Եվրոպայի և Հյուսիսային Ամե-



րիկայի բարձր զարգացած կապիտալիստական երկրների խմբի հետ միաժամանակ կա արդեն զարգացած սոցիալիստական երկրների մի մեծ խումբ, իսկ Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում կան տնտեսական տեսակետից թույլ զարգացած երկրներ։ Ե՛վ սոցիալիստական երկրները, և՛ գաղութային կախումից վերջերս ազատված երկրները ունեն սեփական տնտեսական կառուցվածք, իրենց պահանջմունքները, իրենց իդեալները, որպիսիք տարբերվում են այն իդեալներից, որոնցով ղեկավարվում են Արևմուտքի կապիտալիստական երկրները։

Իհարկե, տարբեր երկրների այդ առանձնահատկություններից բխող դժվարություններ կան և կլինեն, բայց գլխավորն այն է, թե այդպիսի առանձնահատկությունների առկայությամբ հնարավո՞ր է արդյոք բարենպաստ պայմաններ ստեղծել համաշխարհային առևտրի զարգացման համար։ Միայն մեկ պատասխան կարող է լինել՝ այո՛, անպայման հնարավոր է։ Համաշխարհային առևտուրը պետք է զարգանա, նրան ավելի ու ավելի մեծ չափով պետք է մասնակցեն ինչպես սոցիալիստական երկրները, նույնպես և Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրները։ Բայց դա հնարավոր է մեկ պայմանով, այն է՝ եթե առևտրին մասնակցող բոլոր երկրները աշխատեն հարգել իրենց պարտնյորների հասարակական կարգն ու ներքին տնտեսական կառուցվածքը, որոնեն առևտրի փոխադարձաբար ընդունելի կանոններ։

Տնտեսական տեսակետից անբավարար զարգացած երկրները ձգտելու են պաշտպանել արդյունաբերության այն առանձին ճյուղերը, որպիսիք նրանց մոտ նոր են միայն զարգանում և այդ պատճառով էլ նվազ մրցունակ են բարձր զարգացած երկրների արդյունաբերության համեմատությամբ։ Առանց այդպիսի պաշտպանության իրենց էկոնոմիկայի վերելքի ճանապարհին ետ մնացած երկրների արդյունաբերությունը չէր զարգանա, այլ ընդհակառակը՝ կնվազեր։ Թույլ զարգացած երկրների համար ինդուստրացումը կենսական պահանջ է, որովհետև առանց դրա այդ երկրները դատապարտված են գորշ թշվառության և անգրագիտության, որն անհանդուրժելի է, և ոչ մի ժողովուրդ այժմ այդ բանը տանել չի կարող. այժմ քսաներորդ դարն է և ոչ թե տասնիններորդ դարը և նույնիսկ քսաներորդ դարի ոչ առաջին կեսը!։

Մինչև բարձր զարգացած երկրները չփոխեն իրենց մոտեցումն ու իրենց առևտրական մեթոդները և չսկսեն հաշվի նստել թույլ զարգացած երկրների ինդուստրիալ զարգացման կարիքների հետ, չի կարելի խոսել տարբեր տնտեսական շրջանների միջև առևտրի համար բարենպաստ պայմանների առկայության մասին։ Ասենք, դա առանց մեզ էլ գիտեն բոլոր նրանք, ովքեր հետաքրքրվում են թույլ զարգացած երկրների տնտեսական պրոբլեմներով։

Ուշադրության արժանի է այն վեճը, որ տեղի է ունենում արևմտյան տնտեսագետների միջև այն հարցի առթիվ, թե ինչպե՞ս պետք է հասկանալ աշխատանքի միջազգային բաժանումը և համաշխարհային առևտուրը։ Հին «կլասիկ» դպրոցի ներկայացուցիչները, օգտագործելով արտադրության համեմատական ծախսերի իրենց տեսությունը, դեռևս փորձում են արդարացնել գաղութարարության հետևանքով ստեղծված աշխատանքի միջազգային բաժանման պահպանումը, մի բաժանում, որի առկայությամբ տնտեսական տեսակետից թույլ զարգացած երկրները հանդիսանում են արդյունաբերության

տեսակետից զարգացած կապիտալիստական երկրների ագրարային-հումքային կցորդը:

Բայց հենց նույն այդ համեմատական ծախսերի տեսության կողմնակիցները այդ տեսության վրա չեն պնդում, երբ դա շոշափում է նրանց սեփական շահերը: Մի՞թե դա չի հաստատում արդյունաբերական ապրանքների (հատկապես սարքավորման) նկատմամբ այն բարձր մաքսային պատնեշը, որով ցանկապատվեց ԱՄՆ-ը արևմտաեվրոպական արտադրության ավելի էժան արտադրանքից: Եվ կարելի՞ է արդյոք նշված տեսական սկզբունքի հետ համաձայնեցնել հայտնի «Բայ ամերիկեն էկտ»-ի դրույթները:

Իսկ այն տնտեսագետները, ովքեր ըմբռնում են թույլ զարգացած երկրների ձգտումը իրենց էկոնոմիկայի ծաղկման, լիակատար անկախության հանդեպ, հանդես են գալիս և, պետք է ասել, ոչ առանց հաջողության, հին տեսության սուր քննադատությամբ և ցույց են տալիս ինդուստրացման վճռական նշանակությունը այդ երկրների տնտեսական վերելքի համար: Այդպիսի տնտեսագետների թվին է պատկանում պրոֆեսոր Ռաուլ Պրեբիշը, Լատինական Ամերիկայի համար ՄԱԿ-ի Տնտեսական հանձնաժողովի կատարողական քարտուղարը: Նա համոզիչ կերպով բացահայտում է այն փաստը, որ Լատինական Ամերիկայում իրականությունը քարուքանդ է անում աշխատանքի բաժանման այն հնացած սխեման, որի մեջ, ինչպես նա է ասում, «նոր երկրների ինդուստրացման համար տեղ չկա»: Այդ ճիշտ միտքը հաստատվում է նաև Կուբայի Ռեսպուբլիկայի զարգացմամբ վերջին տարում:

Չեմ կարող չնշել նաև, որ արևմտյան հայտնի տնտեսագետ Գուննար Մյուրդալը, Եվրոպայի համար ՄԱԿ-ի Տնտեսական հանձնաժողովի կատարողական քարտուղարը, իր հրապարակած աշխատություններում լրջմիտ մոտեցում է ցուցաբերում թույլ զարգացած երկրների կողմից իրենց ինդուստրիան ստեղծելու ձգտման նկատմամբ: «Համաշխարհային էկոնոմիկա» գրքում նա գրում է, որ «առանց հաշվի առնելու նրանց էկոնոմիկայի անհամամասնական բնույթը, որպիսին գաղութարարության և տնտեսական կախման դարաշրջանի ժառանգություն է հանդիսանում, չի կարելի հասկանալ և մեկնաբանել թույլ զարգացած երկրների ձգտումը դեպի ինդուստրացում»:

## Սոցիալիստական երկրները հանուն համաշխարհային տնտեսական կապերի լայն զարգացման

Անդրադառնալով սոցիալիստական երկրներին, հարկավոր է նշել, որ նրանք ունեն իրենց էական առանձնահատկությունները, նրանց տնտեսությունը զարգանում է այլ տնտեսական օրենքներով:

Սոցիալիստական զարգացման հիմքում ընկած է՝ արտադրությունն արտադրության միջոցների հանրային սեփականության պայմաններում և ընդհանուր պլանի սկզբունքներով: Պլանային հիմունք, պլանային սկզբունք՝ դա է սոցիալիզմի երկրների տնտեսական քաղաքականության և գործունեության հիմքը:

Իսկ ինչպե՞ս է դրսևորվում տնտեսական հարաբերությունը բուն իսկ սոցիալիստական երկրների միջև, ինչպես նաև դրանց և կապիտալիստական եր-



կրների միջև: Դա մի հարց է, որը, ինձ թվում է, կարող է հետաքրքրություն ներկայացնել ձեր թերթի ընթերցողների համար:

Սովետական Միությունը, որպես առավել զարգացած տերություն, հարգում և գնահատում է սոցիալիստական երկրների բոլոր ժողովուրդների ձգտումը՝ արագորեն զարգացնելու ինդուստրիան, որպես ժողովրդի բարեկեցության, տնտեսական ու կուլտուրական վերելքի հիմք: Դա արտահայտվում է նրանում, որ մենք այդ երկրներին մեր տեխնիկայով, գիտելիքներով, փորձով օգնում ենք այն հաշվով, որպեսզի նրանք գտնվեն բարձր մակարդակի վրա՝ շրջանցելով դանդաղ զարգացման տանջալից ուղին, որպեսզի նրանք թռիչք կատարեն հետամնաց տեխնիկայից մինչև նոր տեխնիկան: Դա այն գործոններից մեկն է, որոնք ապահովում են ինդուստրացման ուղիով սոցիալիստական երկրների զարգացման արագ տեմպերը: Սրան է վերաբերում նաև Սովետական Միության կողմից վարկեր տալը և ինդուստրացման գործին ուրիշ ձևերով օգնություն ցույց տալը: Թեև պետք է ասեմ, որ այժմ սոցիալիստական երկրների մեծամասնությունը այնպես է կարգավորել իր էկոնոմիկան, որ նրանք ավելի շուտ զգում են ոչ թե վարկերի, այլ աջակցության կարիք գիտության ու տեխնիկայի բնագավառում:

Արևմուտքում կարելի է հաճախ լսել, թե սոցիալիստական երկրները, միավորվելով Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդում, իբր թե իրենք ստեղծել են իրենց «առևտրական բլոկը» և ցանկապատվել մնացած աշխարհից, ուզում են ստեղծել ինքնաբավ էկոնոմիկա և նույնիսկ իբր թե չեն ցանկանում առևտուր զարգացնել ուրիշ երկրների հետ և այլն: Դա, իհարկե, ամենևին էլ ճիշտ չէ:

Տնտեսական փոխադարձ օգնության խորհուրդը բոլորովին էլ նման չէ մեկուսի շուկաների և բլոկների, որպիսիք կազմակերպվել են Արևմտյան Եվրոպայում: Դրա մասին է խոսում թեկուզ և, օրինակ, այն փաստը, որ Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի երկրները իրար միջև չունեն որևէ համաձայնություն մաքսային և ուրիշ առևտրական այնպիսի արտոնությունների մասին, որով տարբերվեն աշխարհի մյուս երկրների նկատմամբ ունեցած համաձայնություններից: Ուստի սոցիալիզմի երկրները մյուս երկրների նկատմամբ թույլ չեն տալիս ոչ մի առևտրական, այդ թվում մաքսային խտրականություն: Նրանք բոլոր երկրների նկատմամբ կանգնած են առավելագույն բարեհաջողության սկզբունքի վրա:

Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի գործունեության հիմքում ընկած է տնտեսական համագործակցությունը երկարատև ժամկետով, արտադրության կոորդինացումը և մասնագիտացումը, սոցիալիստական շինարարության փորձի փոխանակումը: Դա նպաստում է բոլոր սոցիալիստական երկրների էկոնոմիկայի զարգացման արագացմանը: Ապահովվում է աշխատանքի ռացիոնալ բաժանումը հումքի գլխավոր տեսակների հայթայթման ոլորտում, ինչպես նաև շատ տեսակի ապրանքների արտադրության գործում այն հաշվով, որպեսզի բնական, պատմական և տնտեսական պայմանները հաշվի առնելով՝ աջակցենք արտադրության առանձին տեսակների աճմանը այն երկրներում, որտեղ դրա համար պայմաններն առավել չափով բարենպաստ են:

Երկրի մեքենաշինության բնագավառում, օրինակ, պայմանավորվել ենք

այնպես, որ ավտոմոբիլների մի տեսակը արտադրվում է Լեհաստանում, մի տեսակը՝ Չեխոսլովակիայում, երրորդ տեսակը՝ ԳԴՌ-ում։

Այժմ փոքր տեսակի գլանման մեծահաստոցներ բոլոր սոցիալիստական երկրների համար արտադրում են Լեհաստանը և ԳԴՌ-ն, իսկ խոշոր տեսակի գլանման մեծահաստոցներ ՍՍՌՄ-ը և ՉՍՌ-ն։ Բազմաշերեփ էքսկավատորների արտադրության մեջ մասնագիտացվում են ԳԴՌ-ն և ՉՍՌ-ն, իսկ մեկշերեփանի էքսկավատորների արտադրության մեջ՝ Սովետական Միությունը։ Նույնը կարելի է ասել հաստոցների, գյուղ. մեքենաների, տրակտորների և ծանր մեքենաշինության մի քանի այլ արտադրանքների վերաբերյալ։

Դա հնարավորություն է տալիս յուրաքանչյուր երկրում ունենալու ավելի խոշոր սերիական արտադրություն և միմյանց հետ տեխնիկական արտադրանքների փոխանակություն կատարել. այդ հանգամանքը նպաստում է նաև լայն մասնագիտացմանն ու արտադրության նոր մեթոդների ներդրմանը՝ առանց միատիպ արտադրանքի ավելորդ կրկնումների։ Դա արվում է կողմերի փոխադարձ համաձայնությամբ, որովհետև համապատասխանում է այդպիսի պայմանավորվածության մասնակիցների շահերին։

Այսպիսով, սոցիալիզմի երկրների միջև կատարվող առևտուրը խարսխվում է բոլորովին այլ սկզբունքների վրա, քան այն սկզբունքները, որոնք դրվել են «վեցյակի» և «յոթնյակի» շուկայի հիմքում։

Սոցիալիստական երկրների շուկայի գլխավոր բնորոշ գիծը այն է, որ այդ երկրների միջև առևտուրը կենսագործվում է ապրանքաշրջանառության բազմամյա և տարեկան պլաններին համապատասխան։ Առևտուրը կատարվում է համաշխարհային գներով, այսինքն՝ այն գներով, որոնցով առևտուր են անում նաև մյուս երկրները, այն տարբերությամբ միայն, որ, որպես կանոն, ապրանքների գները որոշվում են ամբողջ տարվա համար առաջուց՝ ապրանքաշրջանառության վերաբերյալ համաձայնությունն ստորագրելիս։ Այսպիսով, գները մեկ տարվա ընթացքում կոնյունկտուրային տատանումների չեն ենթարկվում։ Պրակտիկան ցույց է տվել, որ մեկ տարի առաջ համաձայնեցված գները հաճախ անփոփոխ երկարաձգվում են մի քանի տարի կամ փոփոխություններ են մտցվում առանձին ապրանքների նկատմամբ։

Այդ հանգամանքը սոցիալիստական երկրներին զգալի չափով ապահովում է համաշխարհային կապիտալիստական շուկայի կոնյունկտուրայի տատանումների բացասական ազդեցությունից։

Աչքի է զարնում նաև այն փաստը, որ սոցիալիստական երկրներից և ոչ մեկը իր ապրանքները չի պարտադրում մի այլ երկրի, և ոչ մեկը մյուսի հետ չի մրցակցում ի վնաս մի այլ երկրի ազգային արդյունաբերության զարգացման։ Յուրաքանչյուր երկիր վաճառքի համար արտադրում է այն, ինչ կարող է առանձնացնել առանց վնասելու իր տնտեսական զարգացմանը, և գնում է այն, ինչի կարիքն իրոք զգում է և ինչը սեփական արդյունաբերությունը չի արտադրում կամ բավարար չափով չի արտադրում։

Բոլոր սոցիալիստական երկրները, որոնք միավորված են նպատակի միասնությամբ, իրենց տնտեսական հարաբերությունները կառուցում են ընկերական փոխադարձ օգնության և եղբայրական համագործակցության սկզբունքներով։

Մի հարց ևս, որի քննարկումը հաստատում է վերևում ասվածը և որը



Արևմուտքում հաճախ սխալ է մեկնաբանվում։ Տնտեսական փոխադարձ օգնության խորհուրդը ո՛չ միայն չի կարող հանդես գալ և հանդես չի գալիս կապիտալիստական երկրների դեմ, այլ ընդհակառակը, աջակցում է այդպիսի առևտրի ընդլայնմանը։ Զարգացնելով ազգային էկոնոմիկան, սոցիալիստական երկրները չեն էլ մտածում սահմանազծվել մնացած աշխարհից, այլ ուզում են բոլոր երկրների հետ հաստատել ապրանքների ու ծառայությունների փոխադարձաբար շահավետ փոխանակություն։

Սովետական Միությունը կապիտալիստական երկրների հետ իր առևտուրը զարգացնում է։ Ինչպես հայտնի է, իրենց հնարավորությունների ու պահանջմունքների սահմաններում այդպես են վարվում նաև մյուս սոցիալիստական երկրները։ Բոլոր սոցիալիստական երկրների գիծը ընդհանուր է՝ զարգացնել փոխադարձաբար շահավետ տնտեսական կապեր բոլոր երկրների հետ։ Ի դեպ, այդ դրույթն իր ուղղակի արտացոլումն է գտել Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի Կանոնադրության մեջ։

Որ դա մի դատարկ դեկլարացիա չէ, երևում է այն փաստերից ու թվերից, որոնք ցույց են տալիս կապիտալիստական երկրների հետ սոցիալիստական երկրների ունեցած առևտրի զարգացումը։

Եթե վերցնենք, օրինակ, 1950-ից մինչև 1958 թվականը, ապա կապիտալիզմի երկրների հետ սոցիալիստական երկրների ընդհանուր ապրանքաշրջանառությունը աճել է ավելի քան 2 անգամ։

Չի կարելի, օրինակ, ուշադրություն չդարձնել Սովետական Միության և արևմտաեվրոպական երկրների միջև առևտրի ընդհանուր առմամբ բարենպաստ զարգացման վրա։ Եթե 1950 թ. նրանց հետ մեր ունեցած ապրանքաշրջանառությունը կազմում էր 1,6 միլիարդ ռուբլի, ապա 1959 թ. դա անցավ 6 միլիարդ ռուբլուց։

Այդ ֆոնի վրա դիտելով հարցը, ուշադրություն է գրավում այն, որ ԱՄՆ-ի և Սովետական Միության միջև փաստորեն բացակայում է որևէ լուրջ առևտուր։ Բավական է ասել, որ այդ բարձր զարգացած երկրների միջև ապրանքաշրջանառությունը 1959 թվականին կազմել է ընդամենը մոտավորապես 170 միլիոն ռուբլի, այսինքն՝ գտնվել է Սովետական Միության ապրանքաշրջանառության այն մակարդակի վրա, որպիսին ունեցել է նա այնպիսի մի փոքր երկրի հետ, ինչպիսին Դանիան է։ Մենք պատրաստ ենք առևտուրը զարգացնել ԱՄՆ-ի հետ, բայց, ակներևաբար, այդ երկրում դրա համար անհրաժեշտ պայմաններ դեռևս չեն հասունացել։

Գաղտնիք չէ, որ առևտուրն արագ տեմպերով է զարգանում սոցիալիստական երկրների միջև։ 1950-ից մինչև 1958 թվականը այդ երկրների միջև ապրանքաշրջանառությունը ավելացել է ավելի քան 2,5 անգամ։ Սակայն դա ամենևին էլ չի խանգարում առևտրի զարգացմանը սոցիալիստական և կապիտալիստական երկրների միջև։ Դեռ ավելին, վերջին տարիներին կապիտալիստական երկրների հետ Սովետական Միության առևտրի աճման տեմպերը (քանի որ առաջ այստեղ լուրջ կերպով ետ էր մնում առևտուրը) նույնիսկ որոշ չափով անցնում են սոցիալիստական երկրների հետ ունեցած ՍՍՌՄ-ի ապրանքաշրջանառության աճման տեմպերից։ Վերջին հինգ տարվա ընթացքում, երբ սոցիալիստական երկրների հետ Սովետական Միության ապրանքաշրջանառությունն աճել է 1,5 անգամ, կապիտալիստական երկրների

հետ Սովետական Միության արտաքին առևտրի շրջանառությունը աճել է 2 անգամ։

Հայտնի է, որ շատ հնարովի լուրեր են տարածվում Արևմուտքի երկրների հետ ՍՍՌՄ արտաքին առևտրի մասին։ Բնորոշ է, որ այդ սուտ լուրերի հեղինակները գտնվում են ոչ թե արևմտաեվրոպական երկրներում, այլ Հյուսիսային Ամերիկայում։ Այդ բանում մասնագիտացել են Նյու-Յորք նահանգի նահանգապետ Նելսոն Ռոքֆելլերը և պետական քարտուղարի տեղակալ պ-ն Դիլլոնը։

Ինձ հարմար չի թվում այդ անձանց հետ բանավիճել ձեր թերթի էջերում։ Արևմտաեվրոպական երկրների, ասենք ո՛չ միայն այդ երկրների, գործարար շրջանները բավականաչափ լավ ծանոթ են սովետական արտաքին առևտրին, որպեսզի լուրջ չընդունեն օվկիանոսի այն կողմից եկող անհիմն ենթադրությունները, այսպես կոչված, ՍՍՌՄ-ի դեմպինգի, նրա արտաքին առևտրի «քայքայիչ նպատակների» մասին և այն մասին, թե առևտուրն իբր զարգացվում է ոչ թե փոխադարձ շահավետության հիման վրա, այլ ելնելով մեր երկրի զուտ քաղաքական շահերից։ Ուստի պատահական չէ, որ մենք արևմտաեվրոպական երկրներից գանգատներ չունենք, այսպես կոչված, «սովետական դեմպինգի» կամ Սովետական Միության կողմից այլ «չարամիտ» գործողությունների վերաբերյալ։

## Առևտրի զարգացումը ՍՍՌՄ-ի և ԳՖՌ-ի միջև լավ օրինակ է, բայց այստեղ ևս կարելի է և պետք է ավելին անել

Ինչ վերաբերում է քաղաքականության և առևտրի փոխադարձ կապին, ապա, իհարկե, բոլոր երկրներում էլ քաղաքականությունն ազդում է առևտրի վրա, ինչպես և առևտուրն է ազդում քաղաքականության վրա։ Սակայն միանգամայն սխալ կլիներ ասել, թե Սովետական Միությունը առևտրական հարաբերությունները զարգացնում է ելնելով միայն քաղաքական շարժառիթներից, ղեկավարվելով, այսպես ասած, «քաղաքական կոնյունկտուրայի» դրդապատճառներով։ Լավագույն ապացույցն այն բանի, թե ինչով է ղեկավարվում Սովետական Միությունը իր արտաքին առևտրի մեջ, Սովետական Միության և Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի միջև վերջին տարիներին կատարվող առևտրի զարգացման օրինակն է։ 1958 թ. ապրիլին Բոննում իմ մասնակցությամբ առևտրական համաձայնագրեր ստորագրվեցին ՍՍՌՄ-ի և ԳՖՌ-ի միջև։ Այդ ժամանակաշրջանում առևտրական հարաբերությունների բարելավում էր սկսվել, որն ուղեկցվում էր քաղաքական հարաբերությունների որոշ բարելավմամբ։ Սակայն դրանից մի երեք ամիս անց քաղաքական հարաբերությունները կրկին վատացան։ Բանավեճից խուսափելու համար չեմ խոսում հարաբերությունների վատացման պատճառների և նախաձեռնողի մասին, բայց փաստը մնում է փաստ։

Միևնույն ժամանակ մեր երկրների միջև առևտուրը շարունակում էր զարգանալ, ընդ որում շատ արագ։ Եթե համաձայնագրի կնքմանը նախորդող երեք տարիների ընթացքում (1955—1957 թթ.) ՍՍՌՄ-ի և ԳՖՌ-ի միջև ապրանքաշրջանառությունը կազմում էր 1,2 միլիարդ մարկ, ապա երկարատև համաձայնության գործողության տարիներին, հաշվի առնելով այն ծավալը,



որ նախատեսված է 1960 թվականի համար վերջերս ստորագրված արձանագրության մեջ, ապրանքաշրջանառությունը կկազմի մոտ 3 միլիարդ մարկ, այսինքն՝ կավելանա 2,4 անգամ։ 1960 թվականին երկու երկրների միջև առևտրի ծավալը կհասնի զգալի թվի՝ 1,5 միլիարդ մարկի, այսինքն՝ ավելի, քան եղել է երեք տարվա ընթացքում մինչև համաձայնությունը։ Իհարկե, եթե այդ ժամանակաշրջանում քաղաքական հարաբերությունները լավանային, ապա առևտուրն ավելի զգալիորեն կընդլայնվեր։

Եթե Արևմուտքում նրանք, ովքեր պնդում են, թե Սովետական Միությունը իր առևտուրը միշտ կատարում է տվյալ պահին եղած քաղաքական հարաբերությունների վիճակին համապատասխան, ճիշտ լինեին, ապա Սովետական Միությանը հարկավոր կլիներ ոչ թե մեծացնել ապրանքաշրջանաությունը, այլ քաղաքական հարաբերությունների վատացման համեմատ կվատացներ նաև առևտրական հարաբերությունները։ Բայց մենք ինչպես առաջ, այնպես էլ հիմա, կողմնակից ենք փոխադարձաբար շահավետ առևտրի զարգացմանը ՍՍՌՄ-ի և ԳՖՌ-ի միջև։ Դրա մեջ, մասնավորապես, իրենց արտահայտությունն են գտնում միմյանց հետ շատ տասնամյակներ առևտուր անող սովետական արտաքին առևտրի կազմակերպությունների և գերմանական ֆիրմաների տրադիցիոն կապերը։

Պետք է նշել, որ ԳՖՌ-ի գործարար շրջանները իրենց հերթին ողջախոհ մոտեցում են դրսևորում առևտրի հարցերում։ Դա, իհարկե, չի նշանակում, թե ԳՖՌ-ի ֆիրմաների ու սովետական արտաքին առևտրի կազմակերպությունների միջև գործարար վեճեր ու տարաձայնություններ չկան առևտրական հարցերի շուրջ. դրանք կան և կլինեն։ Բնական է, որ արևմտագերմանական ֆիրմաները կուզենային ապրանքներն ավելի թանկ վաճառել սովետական կազմակերպություններին, կուզենային Սովետական Միությունում գնել ավելի էժան և լավագույն որակի ապրանքներ։ Բնական է նաև, որ սովետական արտաքին առևտրի կազմակերպությունները գերմանական ապրանքներ գնելիս աշխատում են ձեռք բերել լավագույն որակի, լավագույն կառուցվածքի ապրանքներ և ոչ թանկ գներով։ Եվ, ընդհակառակը, սովետական ապրանքներ վաճառելիս նրանք աշխատում են ստանալ ավելի շահավետ գներ։ Սովետական և գերմանական կոմերսանտների այդպիսի ձգտումների մեջ անբնական ոչինչ չկա։

Մեր առևտրական հարաբերությունների պրակտիկայում չի եղել դեպք, որ գերմանական ֆիրմաները լուրջ կերպով խախտած լինեն իրենց պարտավորությունները մեր արտաքին առևտրի կազմակերպությունների հանդեպ։ Մյուս կողմից, մեր արտաքին առևտրի կազմակերպությունները միշտ կատարել են գերմանական ֆիրմաների հանդեպ ունեցած իրենց պարտավորությունները։ Առևտրական բարոյականության այդ սկզբունքը պահպանվում է նաև այն ժամանակ, երբ որևէ պատճառի հետևանքով, մասնավորապես, համաշխարհային շուկայում գների անսպասելի փոփոխությունների պատճառով, պայմանագրերը կատարման ընթացքում կարող են դառնալ նվազ շահավետ, քան դրանց կնքման ժամանակամիջոցում, իսկ երբեմն նաև անշահավետ։ Այդպիսի հարաբերություններ են հաստատվել սովետական արտաքին առևտրի կազմակերպությունների և գերմանական ֆիրմաների միջև առևտրական կապերի երկարատև ժամանակի ընթացքում։

Ինչպես տեսնում ենք, կոմունիստական առևտրական կազմակերպությունները և կապիտալիստական ֆիրմաները կարող են համագործակցել ընդհանուր ընդունելություն գտած առևտրական բարոյականության հիման վրա։ Իսկ դրանից երևում է, որ կոմունիստական կարգն ու կապիտալիստական կարգը փոխադարձաբար ընդունելի պայմաններ են գտնում այն բանի համար, որպեսզի առևտուրը կարգավորեն և զարգացնեն։ Սոցիալական սիստեմների տարբերությունը խոչընդոտ չի հանդիսանում ավելի ու ավելի մեծ թվով առևտրական գործարքներ կնքելու համար, որպիսի հանգամանքը տանում է դեպի ապրանքափոխանակության աճում և մեր երկրներին հնարավորություն է տալիս օգտագործել աշխատանքի միջազգային բաժանման առավելությունները։

Մեր երկրների միջև առևտուրն է՛լ ավելի զարգացնելու համար կան անհրաժեշտ օբյեկտիվ պայմաններ, և այդ բանի համար հնարավորություններն ամենևին էլ սպառված չեն։

Կասկած չկա, որ մեր երկրների միջև առևտուրը ավելի հաջող կզարգանար, եթե ԳՖՌ-ի համապատասխան իշխանությունները առանձին դեպքերում տարբերություն չդնեին սովետական ապրանքների և այն ապրանքների միջև, որոնք ԳՖՌ-ում ստացվում են ուրիշ երկրներից և սովետական ապրանքների նկատմամբ գործարքների որոշ պայմաններ չթելադրեին ներմուծող ֆիրմաներին։

Այսպես, օրինակ, ԳՖՌ-ն ՕԵԷՍ-ի անդամ-երկրներից, ինչպես նաև դոլլարային գոտուց, այսինքն՝ ԳՖՌ-ի արտաքին առևտրի պարտնյորներ հանդիսացող երկրների մեծ մասից ներմուծվող ապրանքների նկատմամբ լիբերալության արեց։ Միևնույն ժամանակ ՍՍՌՄ-ի հետ ապրանքաշրջանառության տարեկան արձանագրություն կնքելու վերաբերյալ բանակցություններ վարելիս, ինչպես նաև արձանագրությունների կատարման ընթացքում, ԳՖՌ-ի համապատասխան օրգանները սովետական արտաքին առևտրի կազմակերպություններին մերժում են ավելացնելու ԳՖՌ ներմուծվող նույնիսկ «լիբերալացված» ապրանքների կոնտինգենտները, թեև ԳՖՌ-ի ֆիրմաները հաճույքով ավելի մեծաքանակ չափերով կգնեին սովետական ծագում ունեցող այդ ապրանքներից։ Մեզ հասկանալի է, որ ամեն մի պետություն ներքին արտադրողների շահերը պաշտպանելու համար կարող է սահմանափակել այս կամ այն ապրանքի ներմուծումը։ Բայց եթե ԳՖՌ-ի շուկայում ուզածդ քանակի ապրանք կարող է ստացվել երկրների մի լայն շրջանից, հիմք չկա սովետական ապրանքները մյուս երկրների ապրանքների հետ միատեսակ պայմանների մեջ չդնել։

Ռուսաստանի և Գերմանիայի միջև առևտուրը երկար պատմություն ունի, այն տարվում էր և ցարիզմի ժամանակ, տարվում է նաև ներկայումս։

Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը Սովետական Միության և Գերմանիայի միջև ապրանքաշրջանառությունը նրա առավելագույն զարգացման ժամանակաշրջանում (1931 թ.) ժամանակակից գներով (ՄԱԿ-ի գների ինդեքսի հիման վրա կատարված հաշիվներով) կազմում էր մոտավորապես 3,3 միլիարդ ռուբլի։ 1959 թվականին գերմանական պետություններից մեկի՝ ԳԴՌ-ի հետ ՍՍՌՄ-ի ունեցած ապրանքաշրջանառությունը կազմել է մոտավորապես 7,7 միլիարդ ռուբլի, իսկ մյուս գերմանական պետության՝ ԳՖՌ-ի հետ՝ մոտ 0,9 միլիարդ ռուբլի, իսկ 1960 թ. կկազմի 1,4 միլիարդ



ռուբլի։ Այսպիսով, ՍՍՌՄ-ի և Գերմանիայի միջև առևտուրը զգալիորեն գերազանցեց վերջին չորս տասնամյակների ընթացքում ունեցած առավելագույն մակարդակը։ Այժմ գերմանական երկու պետություններին բաժին է ընկնում ՍՍՌՄ ամբողջ արտաքին առևտրի մոտավորապես 20%-ը. դա գերմանական ապրանքների համար սովետական շուկայի տարողության համոզեցուցիչ ապացույցն է։ Կասկած չկա, որ դա սահման չէ։ Կան օբյեկտիվ հնարավորություններ գերմանական երկու պետությունների հետ առևտուրն է՛լ ավելի ընդլայնելու համար։

Հետագայում ևս առևտրի աճման համար կարևոր պայման է հանդիսանում այն, որ ԳՖՌ-ի գնորդները լավ ծանոթանան սովետական ապրանքներին, իսկ սովետական կազմակերպությունները, լավ ուսումնասիրելով ԳՖՌ-ի պահանջմունքները, կկարողանային մի շարք դեպքերում իրենց արտադրությունը հարմարեցնել ԳՖՌ-ին անհրաժեշտ արտադրանքներ տալու համար, նկատի ունենալով, որ ապրանքաշրջանառության հետագա աճը, ինչպես և վերջին երեք տարիներին էր, պետք է կենսագործվի երկարատև համաձայնությունների բազայի վրա։

Ինչ վերաբերում է սովետական գնումներին, ապա ԳՖՌ-ի տեխնիկական զարգացման հաջողությունները լայն ասպարեզ են բացում մեր պատվերների տեղաբաշխման համար, հատկապես մեքենաշինական արտադրանքների, այդ թվում քիմիական մեքենաշինության արտադրանքների և այլ ապրանքների նկատմամբ։

Եթե խոսելու լինենք ՍՍՌՄ-ի և ԳՖՌ-ի միջև առևտրի ընդլայնման «սահմանների» մասին, ապա որոշ չափով պարզեցնելով հարցը, կարելի է պատասխանը ձևակերպել այսպես՝ նայած նրան, թե ԳՖՌ-ն որքան և ինչպիսի գումարով է սովետական ապրանքներ գնում, այնքան էլ մենք կարող ենք գնել ԳՖՌ-ի ապրանքներ։

Իհարկե, ԳՖՌ-ի ֆիրմաները ունեն իրենց դժվարությունները սովետական ապրանքների գնումներն ավելացնելու գործում, քանի որ այդ ֆիրմաներից շատերը երկար ժամանակով կապված են ուրիշ մատակարարողների հետ։ Սակայն ԳՖՌ-ի էկոնոմիկան զարգանում է, և, հետևապես, մեծանում է նրա ներմուծման պահանջմունքը։ Միայն 1959 թ. ԳՖՌ-ի ներմուծումը 31 միլիարդ մարկայից բարձրացավ մինչև 35 միլիարդ մարկայի, այսինքն՝ ավելացավ 4 միլիարդ մարկայով։ Դա հաստատում է ԳՖՌ-ի լայն հնարավորությունները համաշխարհային շուկայում ապրանքների գնումներ կատարելու տեսակետից։ Չի կարելի մոռանալ նաև այն, որ Սովետական Միության պատվերների տեղաբաշխումը ԳՖՌ-ում առաջ է բերում լրացուցիչ պահանջմունքներ հումքի, կիսաֆաբրիկատների և այլ ապրանքների նկատմամբ, որը խթանում է դրանց արտադրությանը ԳՖՌ-ի ներսում, ինչպես և դրանց ներմուծումը։ Դրա հետ միասին, ՍՍՌՄ-ի էկոնոմիկայի առանձնահատկությունների շնորհիվ նրա հետ կատարվող առևտուրը աչքի է ընկնում կայունությամբ, որպիսի հանգամանքը պակաս կարևոր նշանակություն չունի այն երկրների համար, որոնց տնտեսական զարգացումը չափազանց զգայուն է միջազգային շուկայի կոնյունկտուրայի տատանումների հանդեպ։

Հարցի մյուս կողմը. կյանքը հաստատել է, որ ամենալավ առևտուրը կատարվում է այն ժամանակ, երբ վաճառորդը գործ ունի գնորդների մեծ

շրջանի հետ և, ընդհակառակը, երբ գնորդն ունի շատ վաճառողներ։ ԳՖՌ-ն պահանջ ունի այնպիսի ապրանքների նկատմամբ, որոնք, ի դեպ ասած, հանդիսանում են սովետական էքսպորտի տրադիցիոն ապրանքներ, բայց որպիսիք ԳՖՌ-ն ներմուծում է այնպիսի շատ սահմանափակ քանակի աղբյուրներից, որոնք գտնվում են փոքր թվով միջազգային խոշոր ֆիրմաների ձեռքում։ Մի՞թե դա առևտրական տեսակետից շահավետ է ԳՖՌ-ի գնորդների համար։ Կարծում եմ, որ ԳՖՌ-ի համար հազիվ թե շահավետ լինի փակվել «արևմտյան աշխարհի» շուկայում։ Գործարար շրջանները, ըստ երևույթին, դա հասկանում են և մեծ հետաքրքրություն են ցուցաբերում Սովետական Միության հետ կատարվող առևտրի նկատմամբ։ Մեզ մոտ դա ամեն տեսակ աջակցություն է գտնում։

Եթե ամենամոտ անցյալում դժվար էր գտնել ԳՖՌ-ի մի ֆիրմա, որը գիտենար, թե ի՛նչ ապրանքներ և ի՛նչ պայմաններում կարելի է գնել Սովետական Միությունում կամ սովետական ո՛ր կազմակերպությունը կարող է առաջարկել իր արտադրանքը, ապա այժմ դրությունը փոխվել է։ Այժմ արդեն դժվար է ԳՖՌ-ի որևէ շատ թե քիչ նշանակալի ֆիրմա գտնել, որ չիմանա ժամանակակից սովետական էքսպորտի ապրանքները, դրանց գնման հնարավորությունները կամ այն, թե սովետական ո՛ր կազմակերպությունն է հանդիսանում արևմտագերմանական այս կամ այն արտադրանքի ներմուծողը։

ԳՖՌ-ի ավելի քան հազար ֆիրմաներ իրենց ապրանքները մատակարարում են Սովետական Միությանը կամ գնում են սովետական ապրանքներ։ Դա արդեն մի բավականին պատկառելի թիվ է։

Այնպիսի խոշոր ֆիրմաների հետ, ինչպես՝ Մաննեսմանն է, Ֆենիքս Ռեյնրորը, Խյուտտե-ունդ բերգվերկեն, Զալցհիտտեր ԱԳ-ն, Կլյոկները, Հեխստը, Բայերը, Մետալհեզելշաֆտը, Կրուպպը, Կիլեր Հովալդտսվերկեն, ԲՄԱ-ն, Դեգուսսան, Սիմենսը, Գուտեհոֆֆնունգսհյուտտեն և շատ ուրիշներ սովետական արտաքին առևտրի կազմակերպությունները արդեն տարիներ շարունակ լայն, փոխադարձաբար շահավետ առևտուր են անում, որի ծավալը այդ ֆիրմաներից յուրաքանչյուրի համար սկսում են չափել ոչ թե միլիոնավոր, այլ տասնյակ միլիոնավոր մարկաներով։

Իհարկե, Սովետական Միության արդյունաբերությունը կարող է արտադրել այն ապրանքները, որպիսիք մենք գնում ենք ԳՖՌ-ում, բայց մի շարք դեպքերում տնտեսապես ձեռնտու է լինում դրանք գնել, այսինքն՝ փոխանակել սովետական ապրանքների հետ։ Դա ձեռնտու լինել կարող է այն դեպքում, եթե ներքին արտադրությունը տվյալ ժամանակաշրջանում պահանջմունքները չի ծածկում, իսկ արտադրության մեծացումը կարող է ավելի թանկ նստել, քան պատրաստի արտադրանքի գնումը։ Որոշ դեպքերում ավելի ձեռնտու է, օրինակ, արտասահմանում գնել նոր կառուցվածքի մեքենա, քան այդպիսին արտադրել սեփական երկրում։ Շահեկանությունը կարող է լինել նաև ժամանակի խնայման մեջ։ Ես կարծում եմ, որ այդ բոլորը նույնպես լայն հիմք է ստեղծում փոխադարձաբար ձեռնտու առևտրի համար։

Արևմտագերմանական որոշ արդյունաբերողներ կան, որոնք պնդում են, թե իբր Սովետական Միության կողմից որոշ տեսակի սարքավորումների, օրինակ, քիմիական սարքավորումների գնումները, որպիսիք ԳՖՌ-ում կա-



տարվող սովետական ներմուծման մեջ մեծ տեսակարար կշիռ են կազմում, ժամանակավոր բան են, կապված սոսկ, ասենք, Սովետական Միության քիմիական արդյունաբերության զարգացման պլանի կատարման հետ։ Դա ճիշտ չէ։ Առևտրի նորմալ պայմաններում երկար տարիներ կպահպանվի Սովետական Միության պահանջմունքը քիմիական հաստոցների, բարձր արտադրողական հաստոցների, էլեկտրասարքավորման, գործիքների և մի շարք այլ ապրանքների նկատմամբ, որոնց արտադրության փորձում ԳՖՌ-ն լայն համբավ է նվաճել ամբողջ աշխարհում։ Մեզ մոտ, Սովետական Միությունում, բարձր են գնահատում ԳՖՌ-ից և ԳԴՌ-ից ստացված ապրանքները։

Ի փոխանակումն արևմտագերմանական ապրանքների մենք լայն նոմենկլատուրայի սովետական ապրանքներ ենք վաճառում։ Դրանք վերամշակվում են ԳՖՌ-ի ձեռնարկություններում, ծառայում են մեքենայական պարկի թարմացմանը կամ անմիջականորեն անցնում բնակչության սպառմանը։ Կարելի է ասել, որ սովետական ապրանքների մեծ մասը արդեն բարձր հեղինակություն է նվաճել ԳՖՌ-ի սպառողների մոտ։ Ներկայումս սովետական մարգանեցի հանքանյութը, քրոմի հանքանյութը, սովետական ասբեստը, վուշը ծածկում են այդ ապրանքների նկատմամբ ԳՖՌ-ի իմպորտային պահանջմունքի մեկ երրորդից մինչև մեկ քառորդը, սղոցանյութը՝ մինչև 10%-ը։ Դա արդեն վատ չէ։ Սակայն սովետական էքսպորտի մի շարք ապրանքների գծով Սովետական Միությունում գնումներ կատարելու հնարավորությունները դեռևս ամենևին էլ լրիվ չեն օգտագործվում արևմտագերմանական ֆիրմաների կողմից, իսկ հետևապես, չեն օգտագործվում նաև ԳՖՌ-ում սովետական գնումների համապատասխան մեծացման հնարավորությունները։

Հանրագումարի բերելով, կարելի է պնդել, որ որոշակի հաջողություններ կան երկու երկրների միջև կատարվող առևտրի զարգացման ուղղությամբ։ Մեծ նշանակություն ունեցան 1958 թ. կնքված երկարատև համաձայնագիրը ապրանքաշրջանառության և վճարումների մասին և համաձայնագիրը ՍՍՌՄ-ի և ԳՖՌ-ի միջև առևտրի և ծովագնացության ընդհանուր հարցերով։ Այդ համաձայնագրերը լավ հիմք ստեղծեցին փոխադարձաբար ձեռնտու առևտրի զարգացման համար։

Ընթացիկ տարում վերջանում է այդ համաձայնագրերի գործողության ժամկետը։ Կարելի է սպասել, որ, ելնելով փոխադարձ օգուտների սկզբունքից, նոր երկարատև համաձայնագիրը, որի կնքման մասին, ըստ երևույթին, պետք է բանակցություններ տարվեն այս թվականին, կնախատեսի երկու երկրների միջև առևտրական կապերի է՛լ ավելի ընդլայնում, որը օգուտ կբերի ինչպես ձեր, նույնպես և մեր երկրին և կծառայի ՍՍՌՄ-ի և ԳՖՌ-ի միջև հարաբերությունների բարելավման գործին։

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ՄԱՍԻՆ

*Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ*

Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի որոշմամբ ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի և ռեսպուբլիկայի գիտական այլ աշխատողներից կազմված հեղինակային կոլեկտիվն աշխատում է **«Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»** նոր գրքի ստեղծման վրա: Սույն համարից «Լենինյան ուղիով» ամսագիրը սկսում է հրապարակել նոր «Ուրվագծեր»-ի առանձին պրոբլեմներին նվիրված նյութեր: Կտպագրվեն նաև գրքի որոշ գլուխներ և պարագրաֆներ:

Ներկա հոդվածը «Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպական ձևավորումը» խորագրով ուսումնասիրության համառոտագրությունն է:

*Հայաստանի Կոմունիստական պարտիան Վ. Ի. Լենինի հիմնած փառապանծ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հնագույն ջոկատներից մեկն է։ Այն ստեղծվել է Սովետական Հայաստանի տերիտորիայում եղած բոլշևիկյան կազմակերպությունների միավորման շնորհիվ, որոնք սկիզբ էին առել դեռևս XX դարի արշալույսին, մարքսիստական փոքրիկ խմբակներից, լենինյան-իսկրայական սոցիալ-դեմոկրատական խմբերից և հետագայում՝ բանվորական ռևոլյուցիոն շարժումների ընթացքում ռեսպուբլիկայի տերիտորիայում ստեղծված կազմակերպություններից։ Բոլշևիկյան կազմակերպությունների միավորումն ու Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպական ձևավորումը նախապատրաստվել են Անդրկովկասում և Հայաստանում ծավալված ռևոլյուցիոն շարժումների ամբողջ ընթացքում։*

## 1. ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ ԵՎ ՄԵՐ ԵՐԿՐԻ ԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՊԱՐՏԻԱՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան հզոր ազդակ հանդիսացավ կապիտալիստական, գաղութային ու կիսագաղութային երկրներում կոմունիստական պարտիաների ստեղծման համար, մեր երկրում ազգային կոմունիստական պարտիաների կազմակերպական ձևավորման համար։ 1918 թվականի երկրորդ կեսին Կոմունիստական պարտիաներ ստեղծվեցին Գերմա-*



*նիայում, Լեհաստանում, Ֆինլանդիայում, Հունգարիայում, Ավստրիայում, Արգենտինայում։ Կապիտալիստական շատ երկրներում կազմակերպվեցին կոմունիստական խմբեր և ձախ սոցիալիստական կազմակերպություններ։ Մեծ Հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ լենինիզմի գաղափարները տարածվեցին ամբողջ աշխարհում և բանվոր դասակարգին ակտիվ պայքարի հանեցին հանուն իմպերիալիստական պատերազմի դադարեցման և բուրժուազիայի տիրապետության ոչնչացման։ Կոմունիստական շարժումը ծավալվեց և միջազգային բնույթ ստացավ։ Վ. Ի. Լենինի ջանքերով հիմք դրվեց III Կոմունիստական Ինտերնացիոնալին։*

*Մեր երկրի ազգային շրջաններում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակով և այնուհետև սովետական բազմազգ պետության ծագման, Կոմունիստական պարտիան կառավարող պարտիա դառնալու շնորհիվ պարտիական շինարարության մեջ տեղի էին ունենում նոր փոփոխություններ. հիմք էր դրվում ազգային եղբայրական կոմունիստական պարտիաների կազմակերպական ձևավորմանը, որպես Սովետական Միության Կոմունիստական պարտիայի տեղական ջոկատների՝ մարզային կոմիտեների իրավունքներով, որոնք լիովին ենթարկվում էին ՌԿ(բ)Պ Կենտկոմին։ 1918 թվականի հուլիսին ձևավորվում է Ուկրաինայի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան, նույն թվականի դեկտեմբերին՝ Բելոռուսիայի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան և այլն։ Մենք ընդգծում ենք* «բոլշևիկների» *բառը, քանի որ մեր երկրի ազգային եղբայրական կոմունիստական պարտիաները մայր պարտիայի հետ միասին կոչվելով կոմունիստական, միաժամանակ, VII համագումարից սկսած մինչև XIX համագումարը, փակագծերում պահպանում էին նաև «բոլշևիկների» բառը։ Պարտիայի անվան նման ճշգրտումը տվյալ ժամանակաշրջանում ո՛չ միայն հասունացել էր, այլև ուներ գիտական, քաղաքական և սկզբունքային մեծ նշանակություն։ «Բոլշևիկների» բառի պահպանումը ազգային կոմպարտիաների համար ուներ նաև այն նշանակությունը, որ ցույց էր տալիս, թե նա Ռուսաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի տեղական ջոկատն է։*

Միայն *Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո, երբ Ռուսաստանի ազգային շրջանների պարտիական կազմակերպությունների առջև ծառացան սովետական պետականության հարցերը, գործնական ձևով դրվեց ազգային սովետական ռեսպուբլիկաների կոմունիստական պարտիաների կազմակերպական ձևավորման հարցը, ըստ որում այն լուծվում էր մի տեսանկյունով, որ տարբեր էր սովետական պետական շինարարության տեսանկյունից։ Այդ այն է, որ եթե Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո Կոմունիստական պարտիան Վ. Ի. Լենինի գլխավորությամբ ընդունել էր պետական ֆեդերացիայի սկզբունքը՝ որպես սովետական պետության կառուցվածքի հիմք, ապա պարտիական շինարարության բնագավառում բոլշևիկներն անփոփոխ և հաստատուն կերպով պաշտպանում էին միասնական կենտրոնացած կոմունիստական պարտիայի սկզբունքը, պարտիա, որի ղեկավար օրգաններն ուղղություն են տալիս երկրի բոլոր պարտիական կազմակերպությունների գործունեությանը։*

*Այժմ տեսնենք, թե ինչպես է ձևավորվել Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան։*

## 2. ՌԿ(Բ)Պ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ 1919 Թ. ՍԵՊՏԵՄԲԵՐՅԱՆ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան, որը շրջադարձային մոմենտ հանդիսացավ համաշխարհային պատմության մեջ, Ռուսաստանում հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա և մեկընդմիշտ լուծեց ազգային հարցը մեր երկրում։ Սակայն Անդրկովկասում ստեղծված ներքին և արտաքին յուրահատուկ պայմանները՝ երկրամասի տնտեսական հետամնացությունը, օտարերկրյա իմպերիալիստների կողմից ոգեշնչվող և օգնություն ստացող հակառևոլյուցիոն պարտիաների բուրժուա-նացիոնալիստական բլոկը, որին հաջողվեց ժամանակավորապես զավթել իշխանությունը, մեծ չարիք հանդիսացան ռևոլյուցիայի զարգացման համար։ Ռևոլյուցիայի գործը, ինչպես այդ օրերին գրել է Ստ. Շահումյանը, ոչ մի տեղ այնպես վտանգի տակ չէր, ինչպես Անդրկովկասում։ Հակառևոլյուցիոն, բուրժուա-նացիոնալիստական պարտիաները, Անդրկովկասում զավթելով իշխանությունը, երկրամասը դարձրին իմպերիալիստական տերությունների գաղութ։

Իրենց կարճատև և անփառունակ տիրապետության շրջանում դաշնակցականները, վարելով հակաժողովրդական, իմպերիալիստներին հաճոյանալու քաղաքականություն, Հայաստանը հասցրին լիակատար քայքայման եզրին։ Հարկավոր էր փրկել Հայաստանը։

Հայաստանի աշխատավոր մասսաների պայքարը գլխավորում էին բոլշևիկները, որոնք ընդհուպ մինչև 1919 թ. սեպտեմբերը չունեին մեկ միասնական համահայաստանյան ղեկավար կենտրոն։ Հայտնի է, որ մինչև 1919 թվականը Կովկասի բոլոր բոլշևիկները ազգերի ինքնորոշման վերաբերյալ Կոմունիստական պարտիայի ծրագրի պահանջի իրականացումը Անդրկովկասի պայմաններում պատկերացնում էին առանց երկրամասում ինքնուրույն ազգային կոմպարտիաներ ստեղծելու։ 1918 թվականի մայիսից Անդրկովկասում ստեղծված փոփոխությունները, երբ ազգային կառավարությունների ձևավորման փաստը, կառավարություններ, որոնց գլխավորում էին բուրժուա-նացիոնալիստական պարտիաները, Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպություններին հարկադրեցին վերանայելու պարտիական շինարարության իրենց կոնկրետ մեթոդները։ Եթե առաջին շրջանում, մինչև 1919 թ. մայիսը, Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները բավարարվում էին երկրամասում ստեղծված բուրժուա-նացիոնալիստական պետությունների ու կառավարությունների լիակատար ժխտումով ու քննադատությամբ, աշխատավոր մասսաներին պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու, բուրժուական կառավարությունները տապալելու և ամբողջ երկրամասում Բաքվի Կոմունայի օրինակով Սովետական իշխանություն հաստատելու համար համատեղ պայքար մղելու կոչով, ապա 1919 թվականի երկրորդ կեսից բոլշևիկյան պարտիան Անդրկովկասում հռչակեց ազգային սովետական ռեսպուբլիկաներ ստեղծելու լոզունգը. մի բան, որ մեծ մասսայականություն ստացավ և նպաստեց աշխատավորության հոծ զանգվածների ազատագրմանը նացիոնալիստների նյութած որոգայթներից։

Պարտիայի ազգային քաղաքականությունը բխում էր պարտիական աշխատանքի պրակտիկայից և ստեղծված դրությունից ռևոլյուցիոն ճանապար-



հով դուրս գալու շահերից։ Ազգային սոցիալիստական ռեսպուբլիկաներ ստեղծելու լոզունգի հետ միասին, ՌԿ(բ)Պ Կենտկոմի ցուցումներով, օրակարգի մեջ է դրվում Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի եղբայրական կոմունիստական պարտիաների ձևավորման հարցը, պարտիաներ, որոնք մինչև այդ գործում էին որպես ՌԿ(բ)Պ տեղական կազմակերպություններ և անմիջապես ենթարկվում էին ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային Կոմիտեին, իսկ վերջինիս միջոցով՝ ՌԿ(բ)Պ Կենտկոմին։

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները 1919 թ. մայիսին Գ. Կ. Օրջոնիկիձեի գլխավորությամբ Բաքվում գումարված պարտիական կոնֆերանսից հետո ընդհատակի ծանր պայմաններում, հաղթահարելով բոլոր դժվարությունները, նոր թափ են հաղորդում պարտիական աշխատանքին։ Բաքվից, Թիֆլիսից և Անդրկովկասի պրոլետարական այլ վայրերից Երկրային կոմիտեն Հայաստան ուղարկեց մի շարք փորձված բոլշևիկների, որոնք անխոնջ աշխատանք կատարեցին պարտիական-քաղաքական գործունեություն ծավալելու ուղղությամբ։ Բացի այդ, ՌԿ(բ)Պ Կենտկոմի ցուցումներով Երկրային Կոմիտեն միջոցներ ձեռնարկեց Հայաստանի տերիտորիայի վրա գտնվող պարտիական կազմակերպությունների գործունեությունը ակտիվացնելու, կտրվածությունը վերացնելու և նրանց միջև սերտ կապ ստեղծելու, աշխատանքը կոորդինացնելու ուղղությամբ։ Այդ ժամանակ Հայաստանում մի կողմից՝ վերականգնվում էին ջախջախված բոլշևիկյան կազմակերպությունները, իսկ մյուս կողմից՝ ստեղծվում էին նոր բջիջներ։ Հյուսիսային Կովկասից և Կովկասի արդյունաբերական վայրերից Հայաստան՝ պարտիական աշխատանքի ուղարկված կայուն ու փորձված բոլշևիկների օգնությամբ քաղաքական աշխատանք էր ծավալվում, օգտագործվում էին լեգալ և անլեգալ հնարավորությունները, արհմիությունները և այլ կազմակերպություններ։ Հիմնվեց երիտասարդական «Սպարտակ» կազմակերպությունը։ Հարկավոր էր այդ բոլոր ուժերը կոորդինացնել, ստեղծել համահայաստանյան ղեկավարություն։

1919 թվականի սեպտեմբերին, ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային Կոմիտեի նախաձեռնությամբ, Երևանում տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություն։

Սեպտեմբերյան խորհրդակցությունը որոշումներ չընդունեց. այն հանձնարարեց Ս. Կասյանին՝ ելնելով ստեղծված իրադրությունից, պատրաստել մի փաստաթուղթ պարտիական կազմակերպություններին ուղարկելու համար։ Շատ կարճ ժամանակում նա կատարեց այդ հանձնարարությունը։ 1919 թ. դեկտեմբերին լույս տեսավ Ս. Կասյանի (Ս. Ատենյան) «Ո՞ւր է ելքը» խորագրով բրոշյուրը, որտեղ փորձ էր արվում տալ ստեղծված իրադրության գնահատականը և հայ ժողովրդի սոցիալական ազատագրության ելքը։ Իր թերություններով ու սխալներով հանդերձ, նրանում հեղինակը Հայաստանի ազատագրումը ճիշտ կերպով կապում էր Հոկտեմբերյան ռևոլյուցիայի, Ռուսաստանի հերոսական պրոլետարիատի ձեռք բերած հաղթանակների հետ և մերկացնում էր իմպերիալիստական պետությունների ու նրանց դրածո դաշնակ ավանտյուրիստների վարած հակաժողովրդական քաղաքականությունը։

Խորհրդակցությունում ստեղծվեց համահայաստանյան մի միասնական պարտիական ղեկավար կենտրոն՝ ՌԿ(բ)Պ Հայաստանի Կոմիտե, որի կազմի

մեջ մտան Ս. Ալավերդյանը, Ղ. Ղուկասյանը, Ա. Մռավյանը, Դ. Շահվերդյանը, Ս. Խանոյանը և ուրիշներ։ Հայաստանի բոլշևիկների 1919 թվականի սեպտեմբերյան խորհրդակցությունը առաջին լուրջ քայլը կատարեց Հայաստանի պարտիական կազմակերպությունների աշխատանքը կոորդինացնելու ճանապարհին, հող պատրաստեց Հայաստանի պարտիական կազմակերպությունների միավորման համար, նախապատրաստեց 1920 թվականի հունվարյան առաջին կոնֆերանսը։

### 3. ՌԿ(Բ)Պ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ 1920 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆՎԱՐՅԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ

1920 թ. հունվարի 18—19-ին Երևանում, անլեգալ պայմաններում, գումարվեց Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների առաջին կոնֆերանսը, որին մասնակցեցին 22 պարտիական կազմակերպությունների ներկայացուցիչներ [1]։

Հունվարյան կոնֆերանսը քննարկեց ՌԿ(բ)Պ Հայաստանի Կոմիտեի հաշվետու զեկուցումը, ընթացիկ մոմենտը և Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների խնդիրները, կազմակերպական աշխատանքի հարցը և տեղերից եկած պատգամավորների զեկուցումներն ու հաղորդումները։

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների հետագա գործունեության համար ծրագրային նշանակություն ուներ կոնֆերանսում քննարկված ընթացիկ մոմենտը և Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների խնդիրների հարցը։ Այդ առթիվ կոնֆերանսի ընդունած բանաձևում տրված էր միջազգային դրության վերլուծությունը, բացահայտված Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական պարտիաների, ներքին և արտաքին հակառևոլյուցիոն ուժերի վարած քաղաքականության ռեակցիոն էությունը։ Կոնֆերանսը հատկապես ընդգծում էր Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի համաշխարհային-պատմական դերը, Կարմիր Բանակի տարած հաղթանակների միջազգային նշանակությունը։ Ընդունված բանաձևում [2] կոնֆերանսը հաստատ համոզմունք էր հայտնում, որ Սովետական Ռուսաստանի և միջազգային իմպերիալիզմի միջև տեղի ունեցող գոտեմարտում հաղթանակը, վերջին հաշվով, պատկանում է կոմունիզմին։ Հայ ժողովրդի համար ստեղծված ծանր դրությունից դուրս գալու ելքը կոնֆերանսը տեսնում էր զինված ապստամբության մեջ։ «Ինչպես Վրաստանում և Ադրբեջանում, այնպես էլ Հայաստանում,—ասված է կոնֆերանսի բանաձևում,—տիրապետող դասակարգի և նրանց կողմից կազմակերպված «դաշնակցական» կառավարության դեմ քաղաքացիական պատերազմը, դաշնակների իշխանության ռևոլյուցիոն բռնի

[1] Կոնֆերանսի դելեգատներն էին. ՌԿ(բ)Պ Երկրային Կոմիտեից՝ Ա. Մռավյանը և Ս. Կասյանը, Երևանի կազմակերպությունից՝ Ս. Ալավերդյանը, Ս. Մարտիկյանը, Ա. Մելիքյանը, Ա. Տեր-Ղազարյանը, «Սպարտակ» երիտասարդական կազմակերպությունից՝ Ղ. Ղուկասյանը և Ա. Խանջյանը, Կարսից՝ Ս. Գրիգորյանը, Նոր Բայազետից՝ Հովհ. Սարուխանյանը և Բ. Բատիկյանը, Դիլիջանից և Ղազախ-Շամշադինից՝ Ն. Շամախյանը, Մ. Հարոյանը, Հայկ Յաղուբյանը, Պ. Վարդանյանը, Սարիղամիշից՝ Ռ. Ոսկանյանը, Լոռուց՝ Դ. Շահվերդյանը և Ս. Կախոյանը, Էջմիածնից՝ Հովսեփ Պողոսյանը։

[2] Կասկած չկա, որ մեզ հայտնի բանաձևն ընդունվել է կոնֆերանսում։ Այդ են հաստատում պատմական վավերագրերը։ Տե՛ս այդ առթիվ նաև ՀամԿ(բ)Պ Անդրերկրամի 1923 թ. մարտի որոշումը՝ «Խորհրդային Հայաստան» № 50, 11-ին մարտի, 1923 թ.։



տապալումը հանդիսանում է Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջնագույն խնդիրը։

Միայն այդ միջոցով մենք կարող ենք Սովետական իշխանության ամուր հիմք դնել, միայն այդ միջոցով հնարավոր է փրկել մասսաներին կործանումից» [1]։

Ելնելով այս դիրքորոշումից, կոնֆերանսը պարտիական կազմակերպություններից պահանջեց՝ է՛լ ավելի ամրապնդել իրենց շարքերը, ուժեղացնել կապը պրոլետարական մասսաների հետ, դաշնակների ազդեցությունից ազատել արհմիությունները և նրանց մեջ պատվաստել բոլշևիկյան պարտիայի տակտիկան ու քաղաքականությունը, պրոլետարիատի կողմը նվաճել գյուղացիությանը, ուժեղացնել աշխատանքը զորամասերում, բանակը ռևոլյուցիայի կողմը գրավել։ Այս և մի շարք այլ տակտիկական բնույթի հարցերի հաջող կենսագործման պայմաններում Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները կարող էին անցնել հարձակման և տապալել դաշնակների անարգ լուծը։

Հունվարյան կոնֆերանսը քննարկել և հաստատել է Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների կազմակերպական կանոնադրությունը, լեգալ կազմակերպությունների մեջ կատարվող աշխատանքի ծրագիրը և այլն։ Կազմակերպական կանոնադրության հիմքում լիովին դրված են մեր պարտիայի կանոնադրությունը, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքները։ Այնտեղ ասված է, որ ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային Կոմիտեն հանդիսանում է ՌԿ(բ)Պ Կովկասի բոլոր կազմակերպությունների ղեկավար օրգանը. Հայաստանի տերիտորիայի վրա գտնվող բոլոր կազմակերպությունների ղեկավար օրգանը հանդիսանում է ՌԿՊ Հայաստանի խորհուրդը, ընտրված հիշյալ կազմակերպության կոնֆերանսի կողմից, որ խորհուրդը ղեկավարում է երկրի [Հայաստանի] բոլոր կազմակերպությունների կազմակերպական, քաղաքական, գաղափարական աշխատանքը, տալիս է նրանց հրահանգներ և ցուցումներ համաձայն կոնֆերանսի որոշումների, հրատարակում է գրքեր, թերթեր և թռուցիկներ, տեղական կազմակերպություններին մատակարարում է գրականություն, վարում կենտրոնական դրամարկղը և պահում կուսակցության գույքը, նյութական նպաստ է տալիս տեղական կազմակերպություններին՝ համաձայն վերջինների նախահաշիվների և ստանում նրանցից դրամական հաշիվներ։

Կանոնադրության մեջ հանգամանորեն շարադրված է պարտիական կազմակերպությունների կառուցվածքը [2]։

[1] Տե՛ս ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 33։

[2] Ի դեպ, կանոնադրության 12-րդ կետում ասված է. «12. Կուսակցության անդամ համարվում է նա, ով ընդունում է կուսակցության ծրագիրն ու կանոնադրությունը, մուծում է կուսակցության դրամարկղը անդամավճարները, ենթարկվում է նրա բոլոր որոշումներին և պատկանում է որևէ բջիջի։

Ծանոթ.— ա) կազմակերպության երկու հին ընկերների միջնորդությամբ և տեղական ղեկավար օրգանի համաձայնությամբ նոր անդամները մտնում են համակիրների բջիջը, ապա որոշ ժամանակից հետո կամ ընդունվում են որևէ բջիջ, տեղական կոնֆերանսի որոշմամբ և կամ խայտառ հեռացվում։

բ) Տեղական ղեկավար անդամները պարտավոր են խիստ ուշադրության դարձնել իրենց

Կոնֆերանսը, առանձնահատուկ նշանակություն տալով լեգալ կազմակերպություններում կատարվող աշխատանքին, ծրագրային որոշում ընդունեց արհմիություններում, բանվորական ակումբներում, գյուղացիական միություններում, կոոպերատիվներում, ժողովրդական համալսարաններում և այլ հաստատություններում պարտիական-քաղաքական աշխատանքն ուժեղացնելու, պարտիայի ազդեցությունն այդ կազմակերպությունների վրա տարածելու համար: Պատգամավորներին տրված հարցաթերթիկներում կարճ ու հստակ պատասխան է տրված տվյալ ժամանակաշրջանի քաղաքական իրադրությանը, Հայաստանում կոմունիստական կազմակերպության տակտիկային, նրա կազմակերպական, ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքների հետ կապված հարցերին:

Հունվարյան կոնֆերանսը ողջույնի հեռագիր ուղարկեց Ադրբեջանի, Վրաստանի, Պարսկաստանի և Թուրքիայի կոմունիստական կազմակերպություններին:

Հունվարյան կոնֆերանսը ընտրեց ՌԿ(բ)Պ Հայաստանի Կոմիտե, որի կազմում ընտրվեցին Ս. Ալավերդյանը, Ս. Կասյանը, Ա. Մռավյանը, Ա. Նուրիջանյանը, Ս. Խանոյանը, Հ. Սարուխանյանը, Ղ. Ղուկասյանը, Դ. Շահվերդյանը, Ս. Մարտիկյանը, Հ. Կոստանյանը, Դ. Տեր-Սիմոնյանը և ուրիշներ:

Հունվարյան կոնֆերանսի որոշումները տոգորված են բոլշևիկյան պարտիայի գաղափարական, կազմակերպական, տակտիկական և տեսական հիմունքների նկատմամբ հավատարմության ոգով, ՌԿ(բ)Պ-ի հետ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների միասնության և անխզելի կապի ոգով: ՌԿ(բ)Պ Հայաստանի կազմակերպությունների 1920 թ. հունվարյան կոնֆերանսը փաստորեն ավարտեց Հայաստանի տերիտորիայի վրա մինչև այդ անջատ-անջատ գործող բոլշևիկյան կազմակերպությունների միավորումը համահայաստանյան պարտիական մեկ ղեկավար օրգանի՝ ՌԿ(բ)Պ Հայաստանի Կոմիտեի շուրջը ու նրա ղեկավարության ներքո և դրանով իսկ սկիզբ դրեց Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպական ձևավորմանը: Կոնֆերանսը, որ կարևոր իրադարձություն է հանդիսանում Հայաստանի Կոմպարտիայի պատմության մեջ, ամբողջովին ելնում էր ՌԿ(բ)Պ VIII համագումարի որոշումներից: Ինչպես որ ՌԿ(բ)Պ VIII համագումարի որոշման համաձայն Ուկրաինայի, Լատվիայի, Բելոռուսիայի, Լիտվայի կոմունիստական պարտիաների կենտկոմները օգտվում էին պարտիայի մարզային կոմիտեների իրավունքներով և ամբողջությամբ ենթարկվում էին ՌԿ(բ)Պ Կենտկոմին, այդպես էլ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների կոնֆերանսը որոշեց, որ Հայաստանի Կոմունիստական կազմակերպությունը օգտվելու է մարզային կազմակերպության իրավունքներով: 1920 թվականի ապրիլի 28-ին բոլշևիկյան «Պրավդա» թերթը կոնֆերանսին նվիրված ինֆորմացիայում գրել է. «Կոնֆերանսը որոշեց մտնել ՌԿ(բ)Պ-ի մեջ մարզային կազմակերպության իրավունքներով»:

Հունվարյան կոնֆերանսը վճռական հակահարված տվեց Հայաստանի

---

անդամների հասարակական-քաղաքական վարքի վրա, որպեսզի կուսակցությունը ազատ լինի պրիստիժ գցող տարրերից»: Տե՛ս ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 33, գ. 894:



Կոմունիստական պարտիայի լիակատար կազմակերպական մեկուսացման կողմնակիցներին, Ա. Ջուրաբյանի անկախ սոցիալ-դեմոկրատական խմբին և առանձին կոմունիստների ու խմբերի մոտ նկատվող կենտրոնախույս տրամադրությունների դրսևորումներին, որոնք ձգտում էին Հայաստանի պարտիական կազմակերպությունների կազմակերպական լիակատար մեկուսացման:

## 4. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ԱՎԱՐՏՈՒՄԸ

1920 թվականի հունվարյան կոնֆերանսը Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի կազմակերպական ձևավորումը վերջնականապես չավարտեց: Կոնֆերանսն իր առջև այդպիսի խնդիր չէր էլ դրել: Նա, ինչպես նշեցինք, միայն ՀԿ(բ)Պ փաստական կազմակերպական ձևավորման սկիզբ դրեց: Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի կազմակերպական ձևավորումը հարթ ուղիով չի ընթացել: Դա համառ, սկզբունքային պայքարի մի պրոցես էր, որի ընթացքում պարտիական կազմակերպությունները և նրանց ղեկավար օրգանները հարկադրված էին մի կողմից՝ ծանր պայմաններում ամրապնդել իրենց բջիջները, իսկ մյուս կողմից՝ անհաշտ պայքար մղել Ռուսաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայից կազմակերպական լիակատար մեկուսացման կողմնակիցների, ազգային-նացիոնալիստական հովերով տարվածների և, այսպես կոչված, «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խմբի՝ կազմակերպական և մյուս հարցերում ստեղծած խառնաշփոթության դեմ: Հայաստանի Կոմպարտիայի, ինչպես նաև մեր երկրի մյուս ազգային շրջանների տերիտորիալ պարտիական կազմակերպությունների կազմավորումը նոր գործ էր ներպարտիական շինարարության մեջ և ժամանակ էր պահանջում այդ խնդրի լուծման առավել ընդունելի ձևեր գտնելու համար:

Որո՞նք են այն գլխավոր նախադրյալները, որ անհրաժեշտ և հնարավոր դարձրին Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի կազմակերպական ձևավորումը: Ինչպես մյուս ազգային եղբայրական կոմպարտիաների, այնպես էլ Հայաստանի Կոմպարտիայի ձևավորման գլխավոր նախադրյալը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի շնորհիվ Կոմունիստական պարտիայի շինարարության մեջ տեղի ունեցած արմատական փոփոխություններն էին: Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ազդեցությամբ, նրա գաղափարների հաղթանակի համար Հայաստանում ստեղծված ռևոլյուցիոն իրադրությունը, հենց ինքը՝ կյանքն էր առաջ քաշում Հայաստանի բոլշևիկյան բոլոր կազմակերպությունների ավելի սերտ համախմբման, միասնական բոլշևիկյան կազմակերպության մեջ միավորելու անհրաժեշտությունը: Այդ նախադրյալները 1919 թ. սեպտեմբերյան խորհրդակցությունն ու 1920 թ. հունվարյան կոնֆերանսն էին, հունվարյան կոնֆերանսից հետո պարտիական-քաղաքական աշխատանքում առաջացած նոր թափը: 1920 թվականին ՌԿ(բ)Պ Հայաստանի Կոմիտեն և նրա տեղական կոմիտեները լայն թափ հաղորդեցին քաղաքական-մասսայական աշխատանքին, հիմք դրեցին բոլշևիկյան մի շարք թերթերի, այդ թվում՝ «Ալիք»-ին (Ալեքսանդրապոլ), «Կոմունիստ»-ին

(Երևան), «Լոռվա գյուղացիության ձայն»-ին և այլն, հրատարակեցին ռևոլյուցիոն-բոլշևիկյան բազմաթիվ թռուցիկներ։ Այս բոլորը նկատի ունենալով Ա. Միկոյանը 1920 թ. մարտին գրել է Աստրախան, Ս. Կիրովին, ՌԿ(բ)Պ Կենտկոմին հաղորդելու համար, թե «Հայաստանում աշխատանքը կարգի է գցվել։ Մեր ուժերն աճում են»[1]։

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները գլխավորում էին աշխատավոր մասսաների պայքարն ընդդեմ դաշնակցության տիրապետության. ներքին և արտաքին հակառևոլյուցիոն ուժերի։ Այդ պայքարի հերոսական էջերից է 1920 թվականի մայիսյան ապստամբությունը։ Այն իր բնույթով համաժողովրդական էր և ընթանում էր «Կեցցե՛ Սովետական Հայաստանը» նշանաբանով։ Մայիսյան ապստամբությունը աշխատավորների հզոր ժողովրդական-մասսայական շարժում էր՝ ուղղված դաշնակների և իմպերիալիստների դեմ՝ հանուն Հայաստանում Սովետական իշխանության հաստատման։ Մայիսյան զինված ապստամբության բոցերում Հայաստանի աշխատավորները բոլշևիկյան կազմակերպությունների գլխավորությամբ անցան քաղաքական, ռևոլյուցիոն դաստիարակության մեծ դպրոց, մարտական մկրտություն ստացան և ձեռք բերեցին քաղաքացիական կռվի, սոցիալական ազատագրության համար մղված պայքարի հարուստ փորձ։ Մայիսյան ապստամբությունը որակական փոփոխություններ մտցրեց նաև Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների կյանքում։ Ապստամբության դասերը համոզեցին, որ չնայած դաշնակցության տմարդի հալածանքներին ու խոշտանգումներին, օրավուր բարձրանում է բոլշևիկների հեղինակությունը աշխատավոր մասսաների մեջ, ուստի անհրաժեշտ է արագացնել Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների կազմակերպական ձևավորման պրոցեսը՝ երկրում ղեկավարող պարտիայի դերը նվաճելու համար։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի ձևավորման պրոցեսի արագացմանը նպաստում էին նաև այլ հանգամանքներ։ Հայտնի է, որ 1920 թվականի փետրվարի 11—12-ին Բաքվում անլեգալ կերպով տեղի ունեցած Ադրբեջանի բոլշևիկյան կազմակերպությունների առաջին համագումարը հիմք դրեց Ադրբեջանի Կոմպարտիային, իսկ նույն թվականի ապրիլի 28-ին Ադրբեջանում հաստատվեցին սովետական կարգեր։ Ադրբեջանի Կոմպարտիայի ստեղծումը լուրջ ազդակ հանդիսացավ Հայաստանի և Վրաստանի կոմպարտիաների ձևավորման համար։

1920 թվականի ապրիլին ՌԿ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային Կոմիտեն վերացվում է և ստեղծվում է ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան բյուրո։

1920 թ. մայիսի 7-ին Վրաստանի մենշևիկյան կառավարությունը պայմանագիր կնքեց Սովետական Ռուսաստանի հետ, որով ճանաչվեց Վրաստանի անկախությունը։ Այդ պայմանագրով Վրաստանի կոմունիստական կազմակերպությունները ստացան լեգալ գործելու իրավունք։ Քաղաքական նոր սիտուացիան ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի առջև նոր խնդիրներ էր դնում։ 1920 թվականի մայիսի վերջերին Կովկասյան բյուրոն, ելնելով ստեղծված դրությունից, որոշում է Հայաստանի և Վրաստանի բոլշևիկյան կազմակերպությունները նույնպես ձևավորել որպես ինքնուրույն ազգային կոմպարտիաներ։ Նույն թվականի հուլիսի 30-ին Ռուսաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Կազմբյուրոն, քննության առնելով ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի միջնորդությունը, որոշում է. «Վրաստանում, Հայաստանում և Ադրբեջանում ստեղծել Կոմունիստական պարտիաներ՝ նրանց տալով պարտիայի մարզային կազմակերպությունների իրավունքներ և ենթարկելով Կենտկոմի Կովկասյան բյուրոյին։ Տվյալ պարտիական կազմակերպություններից յուրաքանչյուրը սպասարկում է իր տերիտորիայում ապրող ամբողջ բնակչությանը՝ անկախ ազգային կազմից»[1]։

Գնալով աճում էր Հայաստանի Կոմունիստական կազմակերպության հեղինակությունը։

1920 թվականի հուլիս-օգոստոսին Հայաստանի Կոմունիստական պարտիայի ներկայացուցիչներ Ա. Նուրիջանյանը և Հմայակ Նազարեթյանը վճռական ձայնի իրավունքով մասնակցում են III Կոմունիստական Ինտերնացիոնալի II կոնգրեսին։ Որպես Ռուսաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի տեղական ջոկատներից մեկի պատվիրակներ, նրանք կոնգրեսին ներկայացրին մի բովանդակալից զեկուցում, որը հայտնի է «Կոմունիզմը Հայաստանում» խորագրով։ Զեկուցման մեջ հանգամանորեն տրված էր Հայաստանի այն ժամանակվա ռևոլյուցիոն իրադրության վերլուծությունը, մայիսյան ապստամբության շատ վավերագրեր և նրանց նշանակությունը, Հայաստանի Կոմպարտիայի հերթական խնդիրները։

Հայաստանում պարտիական-քաղաքական աշխատանքն ուժեղացնելու, ղեկավարությունն ամրապնդելու նպատակով Թիֆլիսում ստեղծվեց Հայաստանի Կոմունիստական կազմակերպության Արտասահմանյան բյուրո, որի կազմում մտան՝ Ս. Կասյանը, Ա. Բեկզադյանը, Ա. Մռավյանը, Դ. Շահվերդյանը, Հովսեփ Պողոսյանը և ուրիշներ։ Արտասահմանյան բյուրոն Թիֆլիսում իր աշխատանքը երկար չշարունակեց։ Ամռանը Բաքվում ձևավորվեց Արտասահմանյան նոր բյուրո, որի մեջ մտան՝ Սահակ Տեր-Գաբրիելյանը, Հայկազ Կոստանյանը, Դ. Տեր-Սիմոնյանը, Ի. Դովլաթյանը և ուրիշներ։ ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան բյուրոն (Բաքվի նոյակը) 1920 թվականի սեպտեմբերին, Ս. Կիրովի, Ե. Ստասովայի, Շ. Էլիավայի, Բ. Լեգրանի, Բելա Կունի մասնակցությամբ, քննության առնելով Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի և Հայաստանի Արտասահմանյան բյուրոյի հարցը, հաստատում է նրանց կազմը։ ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի 1920 թ. օգոստոսի 13-ի որոշմամբ Ս. Տեր-Գաբրիելյանը նշանակվում է Կովկասյան բյուրոյի ներկայացուցիչ Հայաստանում, որին հանձնարարվում է «ղեկավարել ամբողջ պարտիական աշխատանքը, մինչև Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի ձևավորումը»[2]։ Օգոստոսի 29-ին Ս. Տեր-Գաբրիելյանը և Հայկազ Կոստանյանը Բաքվից Թիֆլիս՝ Ալեքսանդր Շահսուվարյանին գրել են.

«Հայաստանի Կոմպարտիայի Արտասահմանյան բյուրոն տեղեկացնում է Ձեզ, որ այստեղ կազմակերպված է Հայաստանի ԿՊ Կենտկոմ և հաստատված է ՌԿՊ Կենտկոմի կողմից։ Ներկայումս գոյություն ունեցող մյուս բոլոր «Կենտրոնները», ղեկավար օրգանները համարվում են վերացված։

[1] С. М. Киров. Статьи, речи, документы, т. 1, стр. 205.

[1] Архив Аз. филиала ИМЛ, ф. 1, оп. 125, ед. хр. 23, л. 2.

[2] ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 49, գ. 3, թ. 35։

Հայտնում ենք, որ Դուք նշանակված եք ՀԿՊ Կենտկոմի ներկայացուցիչ Թիֆլիսում, Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների հետ կապ պահպանելու համար: Այն բոլոր ընկերները, որոնք ընդհատակյա աշխատանքի համար մեր կողմից կգործուղվեն Հայաստան և կանցնեն Թիֆլիսով, կկապվեն միայն Ձեզ հետ: Դուք ձեր կողմից սերտ կապ պահպանեցեք Հայաստանի հետ: Ձեզ իրավունք է վերապահվում Ձեր հայեցողությամբ աշխատողներ ուղարկել Հայաստան, ինարկե, այդ մասին մեզ իրազեկ պահելով հանդերձ, որ մենք իմանանք, թե քանի ընկեր է ուղարկված, ովքեր, ուր, որ շրջանը և ինչ աշխատանքի:

Այդ առաջադրանքի կատարման համար անհրաժեշտ դրամական միջոցներ մենք ձեզ կուղարկենք: Հայտնեցեք, թե սկզբնական ժամանակի համար ինչքան փող է անհրաժեշտ (մոտավորապես): Ձեզ հանձնարարվում է հաշվետվություններ պահանջել այն ընկերներից, ովքեր մինչև այժմ զբաղվում են այդ աշխատանքով և այդպիսիք ուղարկել մեզ: Պարզել նաև (ըստ հնարավորին) Հայաստանում գնդակահարված ընկերների ստույգ ցուցակը, ձեռք բերել նրանց լուսանկարները և ընդհանրապես լրիվ ինֆորմացիա տալ Հայաստանի վերաբերյալ:

Կապվեցեք նաև ընկ. Լեգրանի հետ, պարզեցեք, թե այդ նպատակի համար ունեցած փողից ինչքան է ուղարկված Հայաստան:

Ուղարկում ենք Ձեզ մանդատ, միայն թե Արտասահմանյան բյուրոյի կնիքով, որովհետև Կենտկոմի կնիքը դեռևս պատրաստ չէ:

Կոմբարևներով Սահակ Տեր-Գաբրիելյան

Հ. Կոստանյան»[1]:

29/VIII 20 թ. քաղ. Բաքու

ՌԿ(բ)Պ Հայաստանի կազմակերպության Արտասահմանյան բյուրոն մեծ օգնություն ցույց տվեց Հայաստանի պարտիական կազմակերպություններին և ռևոլյուցիոն մասսաներին:

Հայաստանում պարտիական աշխատանքների ծավալմանը նոր թափ հաղորդվեց 1920 թվականի սեպտեմբերին, Բաքվում գումարված Արևելքի ժողովուրդների համագումարից և Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների սեպտեմբերյան կոնֆերանսից հետո: 1920 թվականի հոկտեմբերի 1-ին ՌԿ(բ)Պ Կենտկոմի կազմբյուրոն քննության առնելով Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի կազմի և Հայաստանի Արտասահմանյան բյուրոյի հարցը, որոշել է.

«Համաձայն Կովկասյան բյուրոյի առաջարկության հաստատել Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմը հետևյալ կազմով՝ ընկ. ընկ Դովլաթով, Ավիս, Կոստանյան, Աղասի և վեցերորդ ընկ. Հայաստանում աշխատող ընկերների կազմից՝ Երևանի խմբի գիտությամբ: Թեկնածուներ՝ ընկ. ընկ Ամիրխանյանին, Շահգելդյանին (Կառլ): Արտասահմանյան աշխատանքին վերաբերող բոլոր հարցերը Հայաստանում լուծվում են Կովկասյան բյուրոյի և ընկ. ընկ. Դովլաթյանի, Ավիսի և Կոստանյանի հետ համատեղ: Ընկ. Սահակ Տեր-Գաբրիելյանին Կենտկոմի մեջ չմտցնել, քանի որ նա Հայաստանում Ռուսաստանի ներկայացուցչության պատասխանատու աշխատող է»[2]:

ՌԿ(բ)Պ Կենտկոմի այս որոշումը ծրագրային նշանակություն ունեցավ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների կազմակերպական ձևավորման պրոցեսը վերջնականապես ավարտելու գործում: 1920 թվականի հոկտեմբերին Բաքվում ռուսաց լեզվով լույս է տեսնում Հայաստանի Կոմ-

---

[1] ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 49, գ. 15:

[2] Տե՛ս ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կազմբյուրոյի 1920 թ. հոկտեմբերի 1-ի նիստի № 57 արձանագրությունը:



պարտիայի Կենտկոմի «Տեղեկագրի» առաջին համարը (մեզ հաջողվել է հայտաբերել 3-րդ համարը, որը լույս է տեսել նոյեմբերի 22-ին և իր ճակատին կրում է «Հայաստանի Կոմունիստական Կուսակցության Կենտրոնական Կոմիտե» բառերը): 1920 թ. հոկտեմբերի 21-ին Կրասնոդարում լույս տեսնող բոլշևիկյան «Կարմիր աստղ» թերթի № 19-ում հրապարակվել է «Հայաստանի բանվորներին և գյուղացիներին» կոչը, որի տակ ստորագրված է «Հայաստանի կոմունիստական կուսակցության (բոլշևիկների) Կենտրոնական Կոմիտե»: Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեն, բնութագրելով Հայաստանի աշխատավորության մղած պայքարը դաշնակցության արյունոտ տիրապետության դեմ, հատկապես մայիսյան պանծալի ապստամբության կազմակերպման ու ղեկավարման գործում Կոմպարտիայի խաղացած դերը, իր այդ մարտական կոչն ավարտում է հետևյալ խոսքերով.

«Մենք դիմում ենք Հայաստանի բանվորա-գյուղացիական մասսաներին, նրանց հեղափոխական կռովին ու դասակարգային գիտակցության՝ կազմակերպվելու կոմունիստական կուսակցության դրոշակի շուրջը, հավաքելու ցրված հեղափոխական ուժերը, որպեսզի ձեռք-ձեռքի տված Խորհրդային Ռուսաստանի պրոլետարիատի հետ միահամուռ ուժերով խորտակենք միջազգային իմպերիալիզմի հայկական դաշնակցական հատվածի լուծը, նորից բարձրացնենք կոմունիզմի դրոշակը Հայաստանում»:

1920 թվականի օգոստոս-հոկտեմբեր ամիսները նշանավորվում են նրանով, որ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները ՌԿ(բ) Կենտկոմի և ՌԿ(բ)Պ Կովկասյան բյուրոյի ցուցումներով ուժեղ թափով միավորվում են մեկ միասնական ղեկավար կենտրոնի շուրջը: Այդ կազմակերպությունները ամռանը կազմավորվում և կոչվում են Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիա: ՌԿ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ ստեղծվում է Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմ, երկրում ստեղծված վիճակը այդ ժամանակ հնարավորություն չի տալիս պարտիական համագումար հրավիրել, վերացվում են մյուս բոլոր «կենտրոնները» ու ղեկավար օրգանները:

Հայաստանում սովետական կարգերի հաստատման նախօրյակին, 1920 թ. նոյեմբերի 11-ին, Կովկասյան բյուրոն Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի կազմում լրացուցիչ կերպով մտցրեց Ս. Կասյանին, Ա. Բեկզադյանին և Ս. Տեր-Գաբրիելյանին: Այսպիսով, Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի լրիվ կազմը բաղկացած էր հետևյալ գործիչներից՝ Ս. Կասյան, Ա. Նուրիջանյան, Հ. Կոստանյան, Ի. Դովլաթյան, Ս. Տեր-Գաբրիելյան, Ա. Բեկզադյան, Ա. Խանջյան, Ա. Շահգելդյան, Շ. Ամիրխանյան:

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները միավորվելով հաջողությամբ գլխավորում են աշխատավորության պայքարը հանուն Հայաստանում Սովետական իշխանության հաղթանակի:

Ձևավորվելով որպես առանձին ազգային կոմպարտիաներ, Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները, առաջվա նման մտնում էին ՌԿ(բ)Պ կազմի մեջ, ղեկավարվում մեկ միասնական կանոնադրությամբ և ծրագրով:

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան ձևավորվեց որպես Ռուսաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի անբաժան մասը, նրա տեղական մարտական ջոկատներից մեկը: Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպական ձևավորումը մի պրոցես է, որ սկսվելով 1919 թվականի սեպտեմբերյան խորհրդակցությունից, իր զարգա-

ցումը ստացավ 1920 թվականի հունվարյան կոնֆերանսում և նրանից հետո ընկած ժամանակաշրջանում, հատկապես 1920 թվականի ամռանը՝ ՌԿ(բ) պարտիայի Կենտկոմի և ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի որոշումներում և Հայաստանի պարտիական կազմակերպությունների պրակտիկ կյանքում:

«Երբ Ադրբեջանի Կոմպարտիան հաջողվեց ստեղծել դեռևս 1920 թվականի մարտապրիլին,— *գրել է Ա. Միկոյանը,*— ապա Վրաստանի և Հայաստանի ազգային պարտիաների կազմակերպումը, Կենտկոմի որոշման համաձայն, հետաձգվեց մինչև 1920 թվականի վերջը, երբ Ադրբեջանում արդեն գոյություն ուներ Սովետական իշխանություն և կարմիր աստղը հաստատապես սավառնում էր Վրաստանի և Հայաստանի վրա» [1]:

*1920 թվականի նոյեմբերի 29-ին սովետական կարգերի հաստատումով Հայաստանի Կոմունիստական պարտիան դառնում է կառավարող պարտիա Սովետական Հայաստանում:*

## 5. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ՀԵՏ ԿԱՊՎԱԾ ՀԱՐԱԿԻՑ ՄԻ ՀԱՐՑԻ ՄԱՍԻՆ

*Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպական ձևավորման հետ կապված հարակից հարցերից մեկը, այսպես կոչված, «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խմբի, նրա գործունեության գնահատման, և նրա կատարած դերի բնութագրման հարցն է: Մի բան, որը առնչվում է մեզ զբաղեցնող հարցի հետ և հարկավոր է գիտական պատասխան տալ դրան: Անհրաժեշտ է պարզել, թե ինչպիսի՞ պայմաններում և ինչո՞ւ էր հիմնադրվել «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խումբը:*

*Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան վերջ տվեց ոչ-ռուս ազգությունների ճնշմանն ու անիրավահավասարությանը: Սովետական կառավարության 1917 թվականի նոյեմբերի 2-ին հռչակած «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան» օրենսդրական կարգով սահմանեց Ռուսաստանի բոլոր ազգությունների ազատ զարգացում և լիակատար իրավահավասարություն: Բոլոր ազգերի համար ապահովվում էր ինքնորոշման իրավունք՝ ընդհուպ մինչև անջատումը և ինքնուրույն պետությունների ստեղծումը: 1917 թվականի դեկտեմբերին Սովետական կառավարությունը ճանաչեց Ուկրաինայի և Ֆինլանդիայի պետական անկախությունը, նույն դեկտեմբերի 29-ին ՌՍՖՍՌ-ի Ժողովրդական Կոմիսարների Սովետը ընդունեց ««Թուրքահայաստանի» մասին» հայտնի դեկրետը, որով Ժողովրդական Կոմիսարների Սովետը հայտարարում է հայ ժողովրդին, որ Ռուսաստանի բանվորական և գյուղացիական կառավարությունը պաշտպանում է Ռուսաստանի կողմից «պատերազմի իրավունքով» գրավված «Թուրքահայաստանի» հայերի ազատ ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև կատարյալ անկախությունը:*

*Սովետական իշխանության այդ դեկրետը հայ ժողովրդի նկատմամբ լենինյան հոգատարության վառ արտահայտություններից մեկն էր: Ազգային ճնշման իմպերիալիստական քաղաքականությանը Սովետական Ռուսաստանի Ժողկոմսովետը դրանով իսկ հակադրեց ճնշված ժողովուրդների լիակատար ազատագրության քաղաքականությունը: Բոլշևիկյան պարտիան և նրա Կենտրոնական Կոմիտեն, ինչպես 1919 թվականին նշել է Ա. Միկոյանը, այդ ժամանակ առանձնահատուկ վերաբերմունք էին հանդես բերում դեպի Հայկական հարցը, քան, օրինակ, դեպի վրացական կամ Կովկասի մի ուրիշ ազգության հարցը: Դա միանգամայն հասկանալի էր: Հայկական հարցը փոխադրվել էր միջազգային ոլորտները: Ո՛չ մի երկիր այնպես չի տուժել իմպերիալիստական պատերազմից, ինչպես Հայաստանը: Այդպիսին էր արևմտահայերի վիճակն այդ ժամանակ: Այստեղից միանգամայն պարզ է դառնում այն քաղաքական խոշոր նշանակությունը, որ ուներ ««Թուրքահայաստանի» մասին» դեկրետը և որի իրագործումը ամենից առաջ պայմանավորված էր մի շարք երաշխիքներով:*

*ՌՍՖՍՌ Ժողկոմսովետի դեկրետում նշված երաշխիքների իրականացման ճանապարհին, Արևելքի շեմքին Թուրքիայում կոմունիզմի գաղափարների տարածման աճող տարերային շարժմանը միջամտելու և այն է՛լ ավելի զարգացնելու, իմպերիալիզմի դեմ մղվող պայքարը գիտակցական աստիճանի հասցնելու համար հարկավոր էր կենսագործել մի շարք միջոցառումներ: Այդ միջոցառումներից մեկն էլ, այսպես կոչված, «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խմբի ստեղծումն էր, որը կոչված էր նպաստելու ազգերի ինքնորոշման լոզունգի ժողովրդականացմանը, փախստական հայերի վիճակի բարելավմանը և նրանց մեջ Սովետական իշխանության, կոմունիզմի գաղափարի տարածմանը:*

*«Հայաստանի Կոմունիստական կուսակցություն»-ը պատմության արենայում առաջին անգամ երևաց Թիֆլիսում, 1918 թվականի հունվարին և իր գոյությունը մեծ ընդհատումներով պահպանեց որպես էքստերիտորիալ կոմունիստական կազմակերպություն մինչև 1920 թվականը: «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն»-ը, ինչպես 1918 թ. միանգամայն ճիշտ կերպով նկատել են ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային Կոմիտեի անդամներ Ց. Մախարաձեն, Վ. Նանեյշվիլին, Գ. Ստուրուան, Ա. Միկոյանը և Ի. Դովլաթյանը, սկզբից մինչև ընդհուպ նրա լիկվիդացումը, մնաց որպես* հայ ինտելիգենտներից կազմված մի խումբ՝ պարտիա կազմակերպելու համար:

*Եթե իր դեկլարացիայում և մյուս նյութերում այդ խումբը փորձում էր շրջանցել այն փաստը, որ այդ նորաստեղծ կազմակերպությունը կոչված էր Արևմտահայաստանում հիմնվելու և գործելու ոչ թե Կովկասում, ուր մարքսիստական բոլշևիկյան կազմակերպություններն արդեն ավելի քան քառորդ դարի պատմություն ունեին և միշտ պրոլետարական ինտերնացիոնալիզմի ուսանելի օրինակ էին տվել, ապա Կովկասի բոլշևիկները և նրանց ղեկավար օրգանները համարձակորեն պարզաբանում էին, թե նրանց տեղը Արևմտահայաստանն է:*

*ՌԿ(բ)Պ Երկրային Կոմիտեի որոշումներում, Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների աչքի ընկնող գործիչների ելույթներում, հոդվածներում, այդ թվում՝ Ց. Մախարաձեի, Ա. Միկոյանի, Ա. Մռավյանի, Ս. Կասյանի, Բ. Բորյանի և մյուսների, միշտ էլ նշվել է, որ «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն»-ը հիմնվել է Թուրքահայաստանում աշխատելու համար: Այս միտքը չեն ժխտել նույնիսկ վերոհիշյալ կազմակերպության ակտիվ գործիչներ Վ. Տերյանը, Գ. Վարդանյանը, Վ. Երեմյանը, Հ. Հովսեփյանը և ուրիշներ: Վ. Տերյանը իր հայտարարության մեջ շարադրելով «Հայաստանի*

[1] «Бакинский рабочий», № 75, 5 апреля 1925 г.

Կոմունիստական կուսակցության» մեջ մտնելու և նրա շարքերից ու Կենտկոմի կազմից հեռանալու դրդապատճառները (1919 թ. մայիսի 22—23), գրել է.

«Ինձ հրավիրել են Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի կազմի մեջ ՌԿ(բ)Պ-ի մի շարք անդամների հետ, որոնք ունենալով շատ թե քիչ չափով բավարար տեսական պատրաստականություն և գործնական փորձ, ինչպես նաև վայելելով մասսաների և ՌԿՊ հայ ընկերների որոշ վստահությունը, կարող էին նրանց հրավիրող պարտիայի Կենտկոմի նախկին անդամների հետ միասին կազմել Կենտրոնական կազմակերպական այն ժամանակավոր ապարատը, որը կղեկավարեր ՌԿՊ համաձայնությամբ ճայտնի տակտիկական նկատառումներով կյանքի կոչված նոր ստեղծվող պարտիայի գործունեությունը» (տե՛ս ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի արխիվ)։ Այնուհետև Վ. Տերյանը սուր քննադատության ենթարկելով «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խմբի գործունեությունը, գրել է. ««Հայաստանի կոմունիստական կուսակցության» Կենտկոմի և ՌԿՊ Կենտկոմի հարաբերությունները ծածկված են ինչ որ անհասկանալի խավարով»։ Մի այլ ղեկավար աշխատող՝ Վ. Երեմյանը, քննադատելով այդ խմբի գործունեությունը, գրել է. «Որպես կազմակերպություն գլխավորապես Թուրքահայաստանի համար, նա իր աշխատանքը պետք է սկսեր ոչ թե Թիֆլիսում, այլ թեկուզ Երևանում։ Ես համոզված եմ, որ Մոսկվայում և Լենինգրադում հենց այսպես էլ մտածում էին...

Նա պետք է ֆրոնտում լիներ և Հայաստանում, այլ ոչ թե բչիչներ ստեղծեր Թիֆլիսում, ստեղծելով սպեցիֆիզմի նախադեպը» [1]։

Եվ ո՞ւմ հայտնի չէ, որ մինչև 1918 թվականի մայիսի վերջերը, այսինքն՝ երբ այդ կազմակերպությունն արդեն հրապարակ էր եկել, «Հայաստան» բառի տակ հասկացվում էր միայն Արևմտյան Հայաստանը՝ «Թուրքահայաստանը»։ Այս ճշմարտությունը հայտնի էր նաև «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խմբի ղեկավարներին։ Ուշագրավ է այն փաստը, որ նրանք իրենց տպագիր օրգաններում Արևմտյան Հայաստանին վերաբերող նյութերը հրապարակում էին «Հայաստան» ռուբրիկայի տակ, իսկ հիշատակված նահանգներին ու Կարսի մարզին նվիրված նյութերը՝ «Կովկաս», «Անդրկովկաս» խորագրի տակ։ Որ «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խումբը Արևմտահայաստանի համար է կազմակերպվել, հաստատում է նաև այն փաստը, որ ներկայիս Սովետական Հայաստանի տերիտորիայի վրա արդեն XX դարի սկզբից գործում էին բոլշևիկյան կազմակերպություններ, և խոսքը ոչ թե այդ կազմակերպությունների հիմնադրման, այլ կազմակերպական միավորման, ձևավորման մասին է։ Էլ չենք խոսում այն մասին, որ մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն 1917—1918 թվականներին Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ձևավորման հարցը չէր առաջադրում։ Նույնիսկ 1918 թվականի ապրիլի 1-ին, երբ Բաքվում և նրա շրջակայքում (Ղուբա, Լենքորան, Շամախի) հաստատվեցին սովետական կարգեր՝ Բաքվի Կոմունան, դրանից հետո էլ պարտիան տակտիկական նկատառումներով չհռչակեց «Կեցցե Սովետական Ադրբեջանը» լոզունգը և ոչ էլ առաջադրեց Ադրբեջանի Կոմպարտիայի ձևավորման հարցը։ Էլ ինչ մնաց, որ այդ ժամանակ առաջադրվեր Լոռու, Զանգեզուրի և Երևանի նահանգի (եթե այդ ենք հասկանում Հայաստան ասելով) բոլշևիկյան կազմակերպությունների միավորման, Հայաստանի Կոմունիստական պարտիայի ձևավորման հարցը։

ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային Կոմիտեն սկզբից ևեթ գտավ, որ ««Հայաս-

[1] ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 91, գ. 97, թ. 27—29։



տանի Կոմունիստական կուսակցություն» խմբի գոյությունը չափազանց վնասակար երևույթ է կովկասյան իրականության պայմաններում», առաջարկեց «նրանց մեկնել Թուրքահայաստան՝ տեղերը ու պարտիա ստեղծել ներքևից Թուրքահայաստանի սահմաններում, այլ ոչ թե Կովկասում, որտեղ պարտիական աշխատանքը տանում է ՌԿՊ համակովկասյան կազմակերպությունը» [1]։

Սակայն ելնելով ստեղծված դրությունից, պետական ձևերից ու սահմաններից, հարկավոր է Արևմտահայաստանում հայ աշխատավորության բեկորների մեջ կոմունիզմի գաղափարները տարածել ոչ թե ազգային պարտիայի միջոցով, այլ, ինչպես Ա. Միկոյանն է 1919 թվականին նշել՝

«Կենտկոմը... պետք է առաջարկի Թուրքիայի հայերի մեջ աշխատել ցանկացող բոլոր ազնիվ հայ կոմունիստներին՝ թուրք կոմունիստական խմբերի հետ միասին կազմակերպվել մեկ կոմունիստական պարտիայի մեջ, իսկ եթե [ստեղծված է] Կենտկոմ, կազմել նրա առանձին հայկական սեկցիա... Հակառակ դեպքում, նույնիսկ հաջող կոմունիստական շարժումը միայն հայերի մեջ, երբ այդպիսին բացակայում է տվյալ տերիտորիայի մուսուլմանների մեջ, անխուսափելիորեն կընդունի հայկական շովինիստական բնույթ և կարող է հանգեցնել պրովոկացիոն, իրենց օբյեկտիվ հետևանքներով հակառևոլյուցիոն երևույթների» (տե՛ս Ա. Միկոյանի «Թեզիսներ Կովկասյան հարցի շուրջը»)։

«Հայաստանի Կոմունիստական կուսակցության» այս էքստերիտորիալ վիճակն էլ սկզբից ևեթ տեղիք տվեց անախորժությունների։ ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային Կոմիտեի և «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խմբի ղեկավարության միջև եղած տարաձայնությունները խորանալով հասցրին մի այնպիսի միջադեպի, որ, ինչպես նշեցինք, որոշ ընդհատումներով ձգձգվեց մոտ երկու տարի և ի վերջո ավարտվեց ՌԿ(բ)Պ Կենտկոմի վճռական միջամտությունից հետո, այդ խմբի լիկվիդացմամբ։

Հարկավոր է նկատել, որ այդ խմբի ղեկավարները որոշել էին իրենց կազմակերպությունն անվանել Հայաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցություն։ Բայց, ելնելով III Կոմունիստական Ինտերնացիոնալի կառուցվածքից, իբրև արտասահմանյան կազմակերպություն, այն կոչվեց «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն»։ Եվ երբ 1919 թվականի մարտին «Հայաստանի Կոմունիստական կուսակցության» ներկայացուցիչ ընկ. Գ. Հայկունին մասնակցեց Կոմինտերնի I կոնգրեսին, մեր կարծիքով, նրան նկատի ունեին որպես արտասահմանյան կոմունիստական կազմակերպության ներկայացուցիչ և ոչ թե ՌԿ(բ)Պ տեղական ջոկատներից մեկի պատվիրակ։

Փաստ։ «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խումբը երբեք իրեն բոլշևիկյան չի համարել։ Ավելին, իրենց տպագիր օրգաններում նրանք գրում էին «Մենք և բոլշևիկները», «Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունն է մեր դաշնակիցը» (Տե՛ս «Կարմիր օրեր», № 10, 24 մարտի, 1918 թ.) և այլն։

1919 թ. օգոստոսի 1-ին ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կազմբյուրոն քննության առնելով «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խմբի կարիքների համար ֆինանսական նախահաշվի հարցը, առաջարկել է նրան դիմել III Ինտերնացիոնալին։

Հարազատ մնալով պատմությանը, մենք կարող ենք արձանագրել,

[1] См. ЦПА ИМЛ при ЦК КПСС, док. 32356.

որ «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խմբի անդամները 1918—1919 թվականներին որոշ աշխատանք կատարեցին Հյուսիսային Կովկասում և Մոսկվայում գաղթած հայերի մեջ կոմունիզմի, Սովետական իշխանության գաղափարները պրոպագանդելու ուղղությամբ, հրատարակեցին «Կարմիր օրեր» և «Կարմիր դրոշակ» թերթերը, մարքսիստական մի շարք բրոշյուրներ: Հատկապես 1919 թ. մայիսից, 8-ամսյա դադարից հետո, իրենց աշխատանքները վերականգնելով Մոսկվայում, խմբի անդամները ակտիվ մասնակցություն ունեցան Հայկական Գործերի Կոմիսարիատի գործունեությանը: Անհասարակ սկզբից ևեթ այդ խմբում գտնվողների մեծ մասը իր աշխատանքը ծավալել է Հայկական Գործերի Կոմիսարիատի և գաղթականության մեջ աշխատանք կատարող լիազորությունների հետ միասին: Ինչ վերաբերում է այսպես կոչված «Հայաստանի կոմունիստական կուսակցությանը», ապա լինելով էքստերիտորիալ կազմակերպություն, դեմոկրատական ցենտրալիզմին խորթ և ազգային սկզբունքներով ստեղծված, այն մնաց Հայաստանի բոլշևիկյան կազմակերպություններին և ռևոլյուցիոն մասսաներին օտարոտի մի կազմակերպություն: Նրան ոչնչով չօգնեց նույնիսկ այն աշխուժությունը, որ 1919 թ. վերջերից մինչև 1920 թվականի հունիսը հանդես բերեց Մոսկվայում: Այդ ժամանակ խմբի որոշ ղեկավարներ (Գ. Հայկունի, Վ. Երեմյան, Գ. Վարդանյան, Ե. Գարագաշ) տեսնելով, որ Անդրկովկասում օրակարգի մեջ էր դրված կոմպարտիաների ձևավորման հարցը, ամեն կերպ աշխատում էին ՌԿ(բ)Պ Կենտկոմի միջոցով իրավունք ստանալ Հայաստանի Կոմունիստական պարտիայի ստեղծողների դափնիները նվաճելու համար: Բայց ապարդյուն ջանքեր: Գնալով ավելի ու ավելի էր պարզ դառնում այդ խմբի կողմից կազմակերպական հարցերում մտցրած խառնաշփոթության իմաստը: 1919 թ. վերջերից նորից ուժեղ քայքայում սկսվեց խմբի ղեկավարության մեջ: Մայիսին ղեկավարությունից հեռացավ Վ. Տերյանը, նոյեմբերին «Հայաստանի Կոմկուսակցության» Կենտկոմի քարտուղարի լիազորությունները վայր դրեց Հ. Հովսեփյանը: Խմբից իրենց գաղափարական-քաղաքական կապերը խզեցին ՌԿ(բ)Պ-ի այն անդամները, որոնք գտնվում էին Ռուսաստանի քաղաքներում, ռազմաճակատներում ու պատրաստակամություն էին հայտնել օգնել նրան: Նրանից հեռացան նաև այլ ընկերներ: Ի վերջո 1920 թվականի հունիսի վերջերին այդ խումբը վերջնականապես քայքայվեց: Այն այլևս իրավունք չստացավ ո՛չ մասնակցելու Կոմինտերնի II և հետագա կոնգրեսներին, և ո՛չ էլ կոմունիստական կուսակցություն կոչվելու: Հայաստանի (այս դեպքում մենք նկատի ունենք Սովետական Հայաստանի տերիտորիան) համար նա պետք չէր, որովհետև այնտեղի բոլշևիկյան կազմակերպությունները, ինչպես տեսանք, միավորվել և մեկ պարտիա էին դարձել: Իսկ III Կոմունիստական Ինտերնացիոնալի կոնգրեսի որոշմամբ արգելվում էր միևնույն երկրում երկու կոմունիստական պարտիաների առկայությունը: Արևմտահայաստանի համար խումբը նույնպես այլևս անելիք չուներ: Այդ է պատճառը, որ երբ հայտնի դարձավ, որ Գ. Հայկունին, Ռ. Քաթանյանը և Վ. Ավանեսովը նշանակվել են Կոմինտերնի կոնգրեսի դելեգատներ, Ադրբեջանի ԿՊ Կենտկոմի բյուրոն հուլիսի 13-ին քննության առավ այդ հարցը: Նիստը, որին մասնակցում էին Կարաևը, Եգորովը, Նանեյշվիլին, Միկոյանը և ուրիշներ, որոշել է «Հայտնել Հայաստանի Կենտկոմին և ՌԿՊ Կենտկոմին, որ Հայաստանի հետ կապ չու-



նեցող և կովկասյան աշխատողների վստահությունը չվայելող աշխատողների [Գ. Հայկունի, Ռ. Քաթանյան, Վ. Ավանեսով] նշանակելը՝ դեմոնստրացիա է և կովկասյան աշխատողների կարծիքի անտեսում»[1]: Հայտնի է, որ այս որոշումից հետո Գ. Հայկունին չմասնակցեց կոնգրեսի նիստերին, իսկ Վ. Ավանեսովն ու Ռ. Քաթանյանը մասնակցեցին խորհրդակցական ձայնով:

«Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խմբի ղեկավարները ռևոլյուցիոն ֆրազի սիրահարներ էին: Նրանք շատ էին սիրում ռևոլյուցիոն ֆրազներ շռայլել:

Չնայած «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» խմբի գործունեությանը պարտիական վերադաս օրգանների կողմից տրված մարքսիստական գնահատականին, այն, որ նա ոչ մի կապ չի ունեցել Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի կազմակերպական ձևավորման հետ, առանձին մարդիկ երբեմն փորձում են վերանայել այդ ճշմարտությունները և նորից շփոթ ստեղծել հարցի մեկնաբանության մեջ: Մի՞թե նրանք չեն տեսնում, որ պատմական փաստաթղթերը և Հայաստանի Կոմունիստական պարտիայի ամբողջ նախորդ պատմությունը ամենահամոզիչ կերպով հերքում են այն հակագիտական տեսակետը, որ իբրև թե Հայաստանի Կոմպարտիան հիմնադրվել է երկու ճյուղերից՝ Հայաստանի տերիտորիայի վրա XX դարի արշալույսից առաջացած բոլշևիկյան կազմակերպությունների միավորումից և, այսպես կոչված՝ «Հայաստանի Կոմունիստական կուսակցությունից»: Իհարկե, Հայաստանի Կոմունիստական պարտիայի մեջ մտել են «Հայաստանի Կոմունիստական կուսակցության» անդամներ, բայց, նախ՝ դրանք մեծ մասամբ ՌԿ(բ)Պ անդամներ էին և երկրորդ՝ նրանք մտել են ոչ թե որպես այդ պարտիայի կազմակերպություններ, այլ որպես այնպիսի մարդիկ, որոնք արդեն համոզվել էին, որ «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն»-ը իր տվյալ կառուցվածքով սխալ է և նրանք դրանով իսկ կանգնում էին մարքսիստական պարտիայի դիրքերի վրա: Տեղին է հիշել Ա. Միկոյանի 1925 թ. այդ խմբին տված գնահատականը, որտեղ ասված է.

> «...Հայ կոմունիստների շրջանում 1918 թվականից սկսած համառ պայքար էր տեղի ունենում մի կողմից՝ Հայկունու գլխավորած խմբի, որին աջակցում էին Մոսկվայում գտնվող հայ կոմունիստները և որը 1918 թվականին կազմակերպել էր «Հայաստանի Կոմունիստական կուսակցություն» և մյուս կողմից, ինտերնացիոնալիստական համոզմունքներ ունեցող մնացած հայ կոմունիստների միջև, որոնք պայքարում էին հանուն պարտիայի միասնության, ընդդեմ ազգային գծով պարտիան տրոհելուն: Դրությունն այնպիսին էր, որ ինքնուրույն պարտիայի կողմնակիցները ոչ մի ազդեցություն չունեին Հայաստանի ներսում, մեծ մասամբ գտնվում էին Մոսկվայում, ամեն տեսակ աջակցություն էին ստանում պարտիայի Կենտրոնական Կոմիտեից, իրենց էմիսարներն էին ուղարկում աշխատանքը կազմակերպելու և գոյություն ունեցող կազմակերպությունները նվաճելու համար: Սակայն այդ ամենն ապարդյուն եղավ Կովկասում, որովհետև մենք, պարտիայի Երկրկոմը, ամուր կերպով մեր կազմակերպական ազդեցության տակ էինք պահում Հայաստանի ներսի բոլոր կազմակերպությունները, չխոսելով արդեն Թիֆլիսի հայ կոմունիստների մասին, որոնց «Հայաստանի կոմկուսակցության» լիազորները ճգնում էին իրենց կողմը գրավել և հենվելով նրանց վրա պայքար սկսել երկրային կոմիտեի դեմ»[2]:

Պատշաճ ձևով գնահատելով «Հայաստանի Կոմունիստական կուսակցու-

[1] Архив Аз. филиала ИМЛ, ф. 1, оп. 74, св. 120, л. 41.
[2] Газ. «Бакинский рабочий», № 75, 5 апреля, 1925 г.

թյուն» խմբի կատարած քաղաքական-պրոպագանդիստական աշխատանքնե-րը, տակտիկական նկատառումներով տրված առաջադրանքի իրականացման գործում նրանց որոշ ծառայությունները, միաժամանակ հարկավոր է մեկ-ընդմիշտ վերջ տալ այն հակագիտական և քաղաքականապես արատավոր մտայնությանը, որ իբրև թե Հայաստանի Կոմպարտիան հիմնադրվել է այդ խմբի կողմից:

***

*Հայաստանի Կոմունիստական պարտիան ձևավորվել է որպես Սովետա-կան Միության Կոմունիստական պարտիայի անբաժան մաս: Հարուստ ու բազմաբովանդակ է Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմությունը: Դա ռուսական երեք ռևոլյուցիաների, Հայաստանում Սովետական իշխանու-թյան հաստատման, բուրժուական նացիոնալիզմի, հակալենինյան բոլոր հո-սանքների ու խմբավորումների դեմ մղած պայքարի, սոցիալիզմի և կոմու-նիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի պատ-մությունն է:*

---

# ՔԵՅՆՍԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՌԵՖՈՐՄԻԶՄԸ

*Բ. ՄԿՐՏՉՅԱՆ*

*Սոցիալիզմի և կոմունիզմի հաջող կառուցումը ՍՍՌՄ-ում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում մեծ ազդեցություն է գործում աշխատավոր լայն մասսաների գիտակցության վրա, ինչպես և, կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի գիտակցության վրա: Այդ մասին վառ կերպով վկայում է երկրորդ համաշխարհային պատերազմից հետո կոմունիստական պարտիա-ների և պրոգրեսիվ բանվորական կազմակերպությունների աճը կապիտալի երկրներում, դեմոկրատական ուժերի ակտիվ մասնակցությունը հանուն խա-ղաղության, միլիտարիզմի և գաղութակալության դեմ մղվող պայքարում:*

*Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի քաղաքական շարժ-ման աճումը սարսափեցնում է միջազգային ռեակցիային, որն ուժեղացնում է հարձակումները աշխատավորների քաղաքական ու դեմոկրատական իրավունք-ների վրա, լայնորեն օգտագործելով գաղափարախոսական դիվերսիայի նորա-գույն զինանոցը:*

*Ժամանակակից ռեֆորմիստներն իրենց առջև դնում են նույն խնդիրները, ինչ և նրանց նախորդները՝ երկրորդ ինտերնացիոնալի գաղափարախոսները, բեռնշտայնականները, կաուցկիականները. դասակարգային հաշտության գա-ղափարների պրոպագանդա, պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ մարքսիստական-լենինյան ուսմունքի ժխտում, առանց կապիտալիստական սեփականությունը և շահագործումը վերացնելու, խաղաղ կերպով կապիտա-լիզմը սոցիալիզմի վերաճելու քարոզ և այլն: Սակայն ժամանակակից ռեֆոր-միստների գաղափարախոսական դիվերսիայի մեթոդները փոքր-ինչ այլ են: Նրանցից շատերը բացահայտ կերպով արդեն չեն արտահայտում իրենց ատե-լությունը Մարքսի ուսմունքի նկատմամբ, այլ գերադասում են խոսել այն մասին, որ մարքսիզմը հնացել է և արդեն կիրառելի չէ ժամանակակից կա-պիտալիզմի պայմաններում: Ոմանք նույնիսկ փորձում են նմանություն գտնել Մարքսի ուսմունքի և ռեֆորմիստական տեսաբանների նոր կոնցեպցիաների միջև, որպեսզի նրանց համար քաղաքական կապիտալ ստեղծեն բանվորա-կան շարժման մեջ, իսկ միաժամանակ նաև խեղաթյուրեն մարքսիզմի ռևո-լյուցիոն էությունը:*

*Համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության փոփոխու-թյունը հօգուտ սոցիալիզմի՝ ժամանակակից ռեֆորմիստներին հարկադրում է զգալիորեն ուժեղացնել հակասովետական պրոպագանդան կապիտալիստա-*

կան երկրների աշխատավորների շրջանում։ Ռեֆորմիստական «տեսաբանների» և «բանվորական» լիդերների մեծամիլ բանակն ամեն կերպ աշխատում է նսեմացնել ՍՍՌՄ-ում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում կոմունիստական և սոցիալիստական շինարարության հաջողությունները, սխալ ձևով ներկայացնել համաշխարհային երկու սիստեմների տնտեսական մրցության ընթացքը, վարկաբեկել սոցիալիզմի քաղաքատնտեսությունը։

Ժամանակակից բուրժուական քաղաքատնտեսության բնորոշ գիծն է՝ ուղիներ և միջոցներ փնտրել կապիտալիստական սիստեմը անխուսափելի կործանումից փրկելու համար։ Բուրժուական քաղաքատնտեսության մեջ այդ նոր ուղղության հիմնադիրներից մեկն էր մոնոպոլիստական կապիտալի մոլի պաշտպան, իմպերիալիզմի դարաշրջանի ամենախոշոր բուրժուական տնտեսագետ Քեյնսը, որին Լենինը անվանել է ակնհայտ բուրժուա և բոլշևիզմի անողոք հակառակորդ (Երկեր, հ. 31, էջ 262)։

Քեյնսականությունը մի տեսություն է, որը փորձում է էկոնոմիկայի մեջ պետական միջամտության միջոցառումների լայն ծրագրի օգնությամբ փրկել կործանվող կապիտալիստական տնտեսական սիստեմը։ Եվ այն փաստը, որ ռեֆորմիստների տնտեսական բոլոր տեսությունները հենվում են Քեյնսի տընտեսական տեսության վրա, խոսում է այն մասին, որ ժամանակակից ռեֆորմիստները փորձում են հավերժացնել կապիտալիստական կարգերը։

Ժամանակակից ռեֆորմիզմի գաղափարախոսության մերկացումը մարքսիստների համար եղել է և մնում է որպես առաջնակարգ կարևորություն ունեցող խնդիր։ Իսկ դրա հաջող լուծման համար անհրաժեշտ է բացահայտել նաև նրա կոնցեպցիաների ակունքները, որոնք բխում են բուրժուական ջատագովական գիտությունից, մասնավորապես լորդ Քեյնսի ռեակցիոն ուսմունքից։

Քեյնսականությունն առաջացել է մեր դարի 30-ական թվականներին, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացման ժամանակաշրջանում։ 1929-1933 թվականների գերարտադրության համաշխարհային ճգնաժամը իր չտեսնված խորությամբ և տևականությամբ սարսափելի խուճապ և լիակատար շփոթվածություն առաջացրեց կապիտալիստական աշխարհում։ Բուրժուազիայի առջև կանգնեցին սուր պրոբլեմներ՝ ինչպե՞ս ազատվել գերարտադրության պարբերական ճգնաժամերից, ի՞նչ ձևով հասնել մշտապես աճող տնտեսական կոնյունկտուրայի, ինչպե՞ս վերջ տալ շարունակ աճող մասսայական գործազրկությանը, չսահմանափակելով կապիտալի շահերը։

Այդ ժամանակ քաղաքական ասպարեզի վրա երևան է գալիս Քեյնսը, որը 1936 թվականին հրատարակում է իր «Զբաղվածության, տոկոսի և փողի ընդհանուր տեսություն» հայտնի գիրքը։ Քեյնսի և նրա տեսության շուրջը Եվրոպայում, իսկ այնուհետև նաև Ամերիկայում բարձրացվեց պրոպագանդիստական աղմուկ. քեյնսականությունը հայտարարեցին նոր ռևոլյուցիա տնտեսական մտքի ասպարեզում։ Քեյնսի ամբողջ «ռևոլյուցիոնականությունը» այն էր, որ նա հանդես եկավ «գործողությունների ազատության» (այսինքն՝ մրցակցության ազատության) տրադիցիոն դոկտրինայի դեմ, որը պնդում էր, թե իբր կապիտալիստական սիստեմի ամբողջ մեխանիզմին հատուկ է ինքնակարգավորման ունակություն և, եթե չխանգարեն շուկայական ուժերի տարերային գործողությանը, կապիտալիզմը կզարգանա անճգնաժամ, ներդաշնակորեն։ Պարզ է, որ մոնոպոլիաների տիրապետության դարաշրջանում նման դոկտրինան առերևույթ հակասում էր մոնոպոլիաների շահերին, որոնք ձգտում էին



ամբողջ էկոնոմիկան ենթարկել իրենց տիրապետությանը։ Երբ Քեյնսը հայտարարեց, որ կապիտալիզմն ինքն իրեն չի կարող ապահովել ներդաշնակ զարգացում և վերացնել գործազրկությունը, և որ այդ նպատակներին հասնելու համար անհրաժեշտ է կապիտալիստական տնտեսության պետական կարգավորում՝ բյուջետային միջոցների հաշվին, մոնոպոլիստական միավորումները անմիջապես քեյնսականությունը գնահատեցին որպես հարմար բանալի այն սեյֆերը բացելու համար, որոնց մեջ պահվում են հարկատուների՝ բանվորների ու ծառայողների, գյուղացիների ու ֆերմերների կողմից պետությանը մուծած միլիարդավոր գումարները։

«Գործողությունների ազատություն» դոկտրինայի դեմ Քեյնսի հանդես գալը բխում էր խոշոր մոնոպոլիաների շահերից, որոնք պետական-մոնոպոլիստական միջոցառումների իրականացումը դիտում էին որպես առավելագույն շահույթների ապահովման կարևոր միջոց և աշխատավորներին խաբելու պրոպագանդիստական ճարպիկ մանևր։ Այդ քարոզը աշխատավորների շրջանում պատրանքներ է սերմանել, թե իբր կապիտալիզմի պայմաններում հնարավոր է վերահսկողություն իրականացնել արտադրության և նրա պլանավորման վրա։ Ուստի օպորտունիստները և ռեֆորմիստները, բանվորների շրջանում ռեկլամի ենթարկելով քեյնսականությունը, հայտարարում են, որ դա տնտեսական նոր գիտություն է, որը փոխարինելու է եկել «հնացած» մարքսիզմին։

Քեյնսը թշնամաբար էր վերաբերվում մարքսիզմին և Մարքսի «Կապիտալ»-ը անվանում էր հնացած տնտեսագիտական դասագիրք, որը բոլորովին պիտանի չէ արդիականության համար, իսկ մարքսիստական ուսմունքը գնահատում էր որպես մի ինչ-որ կրոն, որին նա ոչ մի կերպ չի կարող հավատալ միայն այն պատճառով, որ մարքսիզմը «...դրվատում է ձանձրալի պրոլետարիատին, նրան ավելի բարձր է դասում բուրժուայից և ինտելիգենտից»։

Տալով քեյնսականության ընդհանուր բնութագիրը, անգլիական պրոգրեսիվ տնտեսագետ Ջոն Իտոնը գրել է. «Լիբերալների համար դա կապիտալիզմը բարեփոխելու եղանակ է, առանց սոցիալիզմին անցնելու։ Մոնոպոլիաների համար դա մի տեսություն է, որը հանձնարարում է պետական միջամտության որոշ միջոցառումներ, որոնք չեն դիպչում ո՛չ մոնոպոլիստական կապիտալի տիրապետությանը, ո՛չ էլ մոնոպոլիստական մասնավոր սեփականությանը։

Քեյնսականությունը մի տեսություն է, որը բոլորից լավ կարող էր ծառայություն մատուցել մոնոպոլիաներին, ինչպես անուղղակի ձևով՝ պատրանքներ ստեղծելու և մոնոպոլիստական կապիտալիզմի իսկական էությունը քողարկելու ճանապարհով, այնպես էլ ուղղակի ձևով՝ այս կամ այն հզոր մոնոպոլիստական խմբերի որոշակի շահերի պաշտպանության միջոցով» (Дж. Итон, «Маркс против Кейнса», стр. 17)։

Քեյնսի տեսության էությունը պարզ պատկերացնելու համար անհրաժեշտ է հենց սկզբից պարզաբանել նրա մեթոդոլոգիայի բնույթը։

Քեյնսի «գիտական» մեթոդը բնորոշ է վառ կերպով արտահայտված սուբյեկտիվիզմով. նա իդեալիստորեն է մեկնաբանում կապիտալիստական հասարակության տնտեսական զարգացման պրոցեսը։ Ըստ Քեյնսի, մարդկանց հոգեբանությունը, իսկ ավելի ճիշտ՝ «տնտեսական սուբյեկտի» հոգեբանությունը կանխորոշում է տնտեսական ցիկլի շարժումը։ Ճգնաժամերը տեղի են ունենում այն պատճառով, որ «տնտեսական սուբյեկտների» շրջանում սկսում

է դրսևորվել մասսայական պեսիմիզմ, որն առաջ է գալիս նոր ներդրումների շահավետության նկատմամբ ընդհանուր անվստահությունից։ Անհատական հոգեբանության դիրքերից Քեյնսը բացատրում է նաև հասարակական բոլոր երևույթները, տնտեսական բոլոր կատեգորիաները։

Քեյնսի մեթոդի մյուս գիծն այն է, որ նա ինքն է փորձում տպավորություն ստեղծել, թե տնտեսական բոլոր կատեգորիաներն իր կողմից ընկալվում են որպես մի ինչ-որ հավերժ, անխախտ բան, նա փորձում է իր տեսությունը ներկայացնել որպես հայացքների ընդհանրական մի սիստեմ և բոլոր ժամանակների համար իբրև պիտանի գործողության ուղեցույց։ Քեյնսի հետևորդները պնդում են, թե նրա տեսությունը կիրառելի է ամեն մի հասարակական-տնտեսական ֆորմացիայի համար, որովհետև այն, իբր, աբստրահվում է կոնկրետ արտադրական հարաբերություններից։ Եվ իրոք, առաջին հայացքից կարող է նույնիսկ այդպես թվալ։ Իր «Զբաղվածության, տոկոսի և փողի ընդհանուր տեսություն» աշխատության մեջ Քեյնսը նույնիսկ չի հիշատակում կապիտալիստական մոնոպոլիաների մասին։

Քեյնսի մեթոդի վերացականությունը միայն արտաքին երևույթ է։ Նա գիտակցաբար ուշադրությունը չի կենտրոնացնում կապիտալիզմի զարգացման ներքին օրինաչափությունների վրա և որպես իսկական վուլգար բուրժուական տնտեսագետ փորձում է սքողել կապիտալիստական արտադրաեղանակի բոլոր հակասությունները։ Ուստի Քեյնսը վերլուծում է միայն տնտեսական այն կատեգորիաները, որոնք ընկած են կապիտալիստական արտադրական հարաբերությունների մակերեսի վրա և իր ամբողջ ուշադրությունը դարձնում է շրջանառության ոլորտին։

Լինելով սոցիալական դեմագոգիայի վարպետ՝ Քեյնսը բազմիցս հայտարարել է, թե իբր իր «հետազոտությունների» վերջնական նպատակը գործազրկությունը վերացնելն է։ Գործազրկության պատճառները Քեյնսը տեսնում է ո՛չ թե կապիտալիզմի տնտեսական հակասությունների առկայության մեջ, այլ «խնայողության հակումի» հոգեբանական օրենքի գործողության մեջ։ Այդ «օրենքը» ձևակերպել է ինքը՝ Քեյնսը։ «Հոգեբանական օրենքի» գործողության հետևանքով մարդկանց՝ խնայողության հակումը աճում է, իսկ սպառման հակումը՝ նվազում, այսինքն, որքան ավելի բարձր են մարդկանց եկամուտները, այնքան ավելի քիչ են մարդիկ հակված սպառելու։ Այստեղից Քեյնսը անում է պարադոքսային հետևություն, որ սպառման նկատմամբ մարդկային հակումը բարձրացնելու համար անհրաժեշտ է իջեցնել բնակչության եկամուտները։

Զբաղվածության մեծացմանը և կապիտալիզմի անճգնաժամ զարգացմանն ուղղված կարևոր միջոցառումներից մեկը Քեյնսը համարում է աշխատավոր լայն մասսաների ռեալ աշխատավարձի իջեցումը։ «Զբաղվածության մեծացումը (այսինքն՝ գործազրկության նվազումը.— Բ. Մ.) կարող է վրա հասնել,—գրում է Քեյնսը,—միայն աշխատավարձի դրույքների պակասեցման հետ միասին» (Ջ. Քեյնս, «Զբաղվածության, տոկոսի և փողի ընդհանուր տեսություն», էջ 16, ռուս.)։ Նա առաջարկում էր ռեալ աշխատավարձն իջեցնել լայն սպառման ապրանքների գները բարձրացնելու ճանապարհով, խորհուրդ էր տալիս ռեալ աշխատավարձի իջեցումն իրականացնել նաև ինֆլյացիոն քաղաքականության օգնությամբ։

Քեյնսը մեծ նշանակություն էր տալիս նաև «ներդրումների հակման» իր



հոգեբանական կատեգորիային, որովհետև նա չէր կարող չընդունել այն փաստը, որ կապիտալիստական երկրներում արտադրության միջոցների պահանջարկը բավարար չափով բարձր չէ։ Սակայն, «ներդրումների հակման» ցածր մակարդակը Քեյնսը բացատրում էր ո՛չ այն բանով, որ մոնոպոլ շահույթներ ձեռք բերելու համար կապիտալիստները ապրանքներն արտադրում են առանց պահանջարկի ռեալ հաշվառման, ոչ էլ այն բանով, որ կապիտալիստական հասարակարգում գործում է արտադրության անարխիայի օրենքը։ Նա կրկին հենվում է «հիմնական հոգեբանական օրենքի» վրա, որին, իբր, ենթարկված են նաև ձեռնարկատերերի գործողությունները, որոնց «խնայողության հակումը» մեծանում է եկամուտների աճին համապատասխան։

Ձեռնարկատերերի մոտ «ներդրումների հակումը» նվազում է, իսկ «իրացվելիության նախապատվությունը» մեծանում այն պատճառով, ասում է Քեյնսը, որ «կապիտալի ամենամեծ էֆեկտիվությունը» (այսինքն՝ շահույթի սպասվող նորման) ունի նվազեցման տենդենց, այն ժամանակ, երբ տոկոսի մեծությունը այդպիսի տենդենց չունի։ Հետևաբար, հայտարարում է Քեյնսը, կապիտալի «ամենամեծ էֆեկտիվությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է պակասեցնել ձեռնարկատիրոջ կողմից վճարվող տոկոսի մեծությունը։ Տոկոսի նորմայի կայունությունը Քեյնսը բացատրում է նույն «իրացվելիության նախապատվության» կատեգորիայով, մարդկանց նույն հոգեբանությամբ, որոնք ձգտում են իրենց եկամուտները պահպանել դրամական ձևով և այդ պատճառով էլ դրամական փոխատվության դեպքում գանձում են բարձր տոկոսներ։

Այսպիսով, ըստ Քեյնսի ստացվում է, որ հասարակության ամբողջ տնտեսական կյանքը շարժման մեջ են դնում մարդկանց հոգեբանությունը, նրանց հոգեբանական հակումները։ Եթե մարդիկ ունենային ավելի լավ հոգեբանություն, ապա բուրժուական հասարակությունը, կապիտալիստական էկոնոմիկան չէին կրի ոչ մի դժվարություն, եզրափակում է Քեյնսը։

Այժմ արդեն դժվար չէ բնութագրել Քեյնսի սոցիալական կրեդոն։ Նա փորձում է ապացուցել, որ հասարակական բոլոր ֆորմացիաներից առավել կատարելագործվածը և պրոգրեսիվը կապիտալիստական կարգն է, նա կարող է զարգանալ չունենալով դժվարություններ ու ցնցումներ, եթե հմտորեն ղեկավարվի կապիտալիզմի էկոնոմիկան. Նրա զարգացումը պետք է կարգավորել այնպես, որ վերացվի հասարակության մեջ գործող հոգեբանական օրենքների կործանարար ազդեցությունը։

Էկոնոմիկայի «հակաճգնաժամային կարգավորումը» իրականացնելու պատրվակով Քեյնսը կոչ է անում ամեն կերպ ավելացնել մոնոպոլիաներին տրվող արդյունաբերական պատվերների պետական ծախսումները, ընդլայնել ռազմական արդյունաբերությունը, խոշոր ֆիրմաներին բաց թողնել արտոնյալ վարկ, ճնշում գործել արհմիությունների վրա. մի խոսքով, որքան կարելի է պետական բյուջեի ավելի մեծ մասը տեղափոխել կապիտալիստների սեյֆերը։

Քեյնսի հակաճգնաժամային դեղատոմսերը լայնորեն օգտագործվել և օգտագործվում են բուրժուական պետությունների տնտեսական միջոցառումների պրակտիկայում։ Ընդգծելով այդ միջոցառումների ապարդյուն լինելը, Ուիլյամ Ֆոստերը գրել է. «Քեյնսի հակաճգնաժամային քաղաքականության ուղղությամբ առաջին գործնական քայլը կատարեց պրեզիդենտ Հուվերը,

տնտեսական մեծ ճգնաժամի (1929—1933 թթ.) սկզբին, երբ նա բազմաթիվ հիվանդ ու անանկ բանկերը, երկաթուղային ընկերությունները և արդյունաբերական կորպորացիաները նպաստավորելու և վերականգնելու նպատակով հիմնեց վերակառուցման ֆինանսական կորպորացիան և սկսեց նրան հատկացնել հարյուր միլիոնավոր դոլլարներ: Բայց ամբողջ սխեման անփառունակ կերպով փուլ եկավ. ինչ վերաբերում է արդյունաբերությանը, ապա նա շարունակում էր անկում ապրել, գործազուրկների բանակը աճում էր...»: Այնուհետև Ցոստերը գրում է, որ այն բանից հետո, երբ 1933 թվականին ԱՄՆ-ի պաշտոնական իշխանության գլուխ անցավ պրեզիդենտ Ռուզվելտը, «...արդյունաբերությունը խթանելու համար մտցվեց քեյնսյան մեքենայությունների մի այլ, ավելի մեծ դոզա»: Սակայն Քեյնսյան դեղատոմսով կառավարական ֆոնդից կատարված 40 միլիարդի ծախսը ևս չվերակենդանացրեց քայքայվող տնտեսական սիստեմը, այն մնաց անկման վիճակում, գործազրկությունը հասավ ավելի մեծ չափերի: «Ռուզվելտ—քեյնսյան միջոցառումները ապացուցեցին իրենց լրիվ սնանկությունը...», եզրակացնում է Ցոստերը: Արևմուտքում այժմ ուժգնորեն տարածվում են Քեյնսի «հակաճգնաժամային կարգավորման» տեսության նոր տարատեսակությունները, ինչպես, օրինակ, «բյուջետային ստաբիլիզատորի», «բազմակողմանի ստաբիլիզատորի» և այլ տեսություններ, որոնք Քեյնսի դեղատոմսի նման «արդարացնում են ռազմական արդյունաբերությունը, որպես էկոնոմիկան խթանող առավել էֆեկտիվ միջոցներից մեկը» (Ցոստեր):

Խոշոր կապիտալի գաղափարախոս և մոնոպոլիաների շահերի պաշտպան Քեյնսը պրոպագանդում էր պատերազմ, հանդես էր գալիս էկոնոմիկան ռազմականացնելու օգտին, արդարացնում իմպերիալիստական պատերազմները:

Քեյնսը բացահայտորեն խոսում է այն մասին, որ իր առաջարկած «հակաճգնաժամային» կարգավորման միջոցները ոչ մի չափով չեն սահմանափակում կապիտալիստների դասակարգի շահերը, չեն դիպչում մասնավոր սեփականության «սուրբ» իրավունքներին: Քեյնսի համար հիմնականը արտադրության գործիքների և միջոցների սեփականության վերացումը չէ, այլ դրանց տերերին փոխհատուցում տալը, և եթե նույնիսկ պահանջվի «հանրայնացման որոշ միջոցառումներ», ապա նա կողմնակից է, որ դրանք իրականացվեն աստիճանաբար, ամենևին չդիպչելով կապիտալիստական հասարակության հիմքերին:

Հենց այստեղ, այս սկզբունքային հարցում կապիտալիստական մոնոպոլիաների բացահայտ ջատագով՝ Ջոն Մ. Քեյնսի շահերը սերտորեն միահյուսվում են ժամանակակից ռեֆորմիստների շահերի հետ, որոնք փորձում են իրենց ներկայացնել որպես բանվոր դասակարգի շահերի արտահայտիչներ: Այն, որ ռեֆորմիստները նույնպես չեն ձգտում վերացնել մասնավոր սեփականությունը և հանդես են գալիս աստիճանաբար սոցիալիզմի մեջ կապիտալիզմի ներաճելու օգտին, նրանց հնարավորություն է տալիս իրենց իդեոլոգիական զինանոցը հարստացնել լորդ Քեյնսի տնտեսական ուսմունքի հիմնական սկզբունքներով և դրանք հարմարեցնել իրենց սեփական կարիքներին:

Ժամանակակից ռեֆորմիզմի նույնիսկ որոշ նշանավոր ներկայացուցիչներ չեն թաքցնում իրենց մտերկությունը Քեյնսին: Քեյնսականությունը գրեթե բացահայտ կերպով ընդունում են անգլիական լեյբորիզմի շատ գործիչներ և ֆաբիանականների լիդերները, որոնց միջավայրից դուրս են եկել աջ սոցիա-



լիստական աղանդի անգլիական պրոֆեսիոնալ բանվորական շարժման շատ ղեկավարներ:

Քեյնսականությանն են հարում լեյբորիզմի այնպիսի աչքի ընկնող գործիչներ, ինչպիսիք են՝ Հերբերտ Մորրիսոնը, Դուգլաս Ջեյը, Տյուսոնը, Էտլին և ուրիշներ: Նրանք բոլորն էլ պնդում են, թե իրենց սոցիալիզմի ժամանակ կապիտալիստական սեփականությունը չի վերացվի, այլ ազգայնացման կենթարկվեն տնտեսության միայն այնպիսի ճյուղերը, որոնք ինքնին ունեն համազգային նշանակություն, ինչպես, օրինակ, քաղաքացիական ավիացիան, փոստը, ջրամատակարարման սիստեմը և գազի արդյունաբերությունը, էլեկտրաէներգետիկ տնտեսությունը և մի շարք այլ ճյուղեր: Դուգլաս Ջեյը «քեյնսյան սոցիալիզմի», թերևս, առավել բացահայտ քարոզիչներից մեկն է: Իր «Սոցիալիզմի գործը» գրքում Ջեյը գրում է, որ բանվորների աշխատավարձի բարձրացումը անցանկալի երևույթ է, որովհետև այն առաջ է բերում գործազրկության աճում: Ջեյը և նրա նման սոցիալիստները լիովին համամիտ են աշխատավարձի վերաբերյալ Քեյնսի հակաբանվորական տեսությանը:

Մարքսիստական գրքերից քննադատելով «քեյնսյան սոցիալիզմի» տեսության էությունը, Ջոն Իտոնը գրում է, որ այդ տեսությամբ «...ենթադրում է պահպանել կապիտալիզմի արտադրական հարաբերությունները: «Սոցիալիզմի» նկատմամբ նրա հեղինակների հավակնությունները բացառապես հենվում են այն բանի վրա, որ նրանք մտադիր են սոցիալական կարիքների համար օգտագործել արտադրության կապիտալիստական պայմաններում ստացվող և պետության կողմից բացհանվող հավելյալ արժեքի որոշ մասը»:

Անգլիական լեյբորիստները շատ հաճախ քեյնսականությունը հրամցնում են որպես մի տեսություն, որը համապատասխանում է բանվոր դասակարգի շահերին: Նրանք ասում են, թե լրիվ զբաղվածության քեյնսյան տեսությունը սոցիալիստները կարող են ընդունել արդեն այն պատճառով, որ նա ցույց է տալիս մասսայական գործազրկությունը վերացնելու ուղիներն ու միջոցները: Իսկ այն մասին, որ Քեյնսի դեղատոմսերը սուտ դուրս եկան և բացի խոշոր մոնոպոլիաներից ոչ մեկին օգուտ չբերեցին, լեյբորիստները ջանում են չխոսել: Մասսայական գործազրկությունը և աշխատավոր մասսաների աղքատությունը վերացնելու ուրիշ ուղի ժամանակակից ռեֆորմիզմը չի ընդունում: Նա դեմ է ռևոլյուցիոն պայքարին, նա գովաբանում է բուրժուական պետության, «վերդասակարգային» պետության «բարեգործական» միսիան:

Ժամանակակից ռեֆորմիզմը Քեյնսից փոխ է առել նաև նրա տեսությունը բուրժուական պետության վերաբերյալ: Քեյնսականությունը բուրժուական հասարակությունը դիտում է որպես մի սիստեմ, որտեղ չկա ո՛չ դասակարգային պայքար, ո՛չ մոնոպոլիստական կապիտալ:

Ռեֆորմիստները պրոպագանդում են ռեակցիոն այն առասպելը, որ ժամանակակից կապիտալիստական հասարակությունը, Կ. Մարքսի քննադատած հասարակության համեմատությամբ, մեծ փոփոխություններ է կրել: Ռեֆորմիստները հայտարարում են, որ այժմ արդեն կապիտալիստական հասարակության մեջ հակադիր դասակարգերը խիստ կերպով չեն բաժանվում, որ, իբր, ներկայումս բուրժուական երկրներում տեղի է ունենում դասակարգային տարբերությունների վերացման պրոցես: Ուստի, եզրակացնում են ռեֆորմիստները, դասակարգային պայքարը, պրոլետարիատի դիկտատուրան, Մարքսի ռևոլյուցիոն ուսմունքն ավելորդ են: «Կապիտալիզմը փոխվել է, իսկ

Մարքսը հնացել է» — սա ամենամոդայական լոզունգն է, որի շուրջը համախմբվում են մարքսիզմի բացահայտ թշնամիները և ամեն գույնի ռեֆորմիստներ։

Անգլիական ռեֆորմիստ Ստրեչին իր «Ժամանակակից կապիտալիզմը» գրքում ուղղակի գրում է, որ այսօրվա պայմաններում «...անհրաժեշտություն է առաջացել արմատապես վերանայելու Մարքսի տնտեսական և քաղաքական կարևորագույն մարգարեությունները, որոնք հիմնվում են այն ենթադրության վրա, թե կապիտալիստական հասարակության մեջ աշխատավորների կենսամակարդակը չի կարող բարձրանալ, որ այն պետք է անկում ապրի»։

Բուրժուական ամբողջ պաշտոնական, ինչպես նաև աջ սոցիալիստական մամուլը փորձում է կապիտալիստական երկրների աշխատավորներին ներշնչել այն միտքը, որ նրանք ապրում են մշտապես աճող նյութական բարեկեցության պայմաններում։ Մինչդեռ, կապիտալի երկրներում բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության կյանքը տարեցտարի ո՛չ թե բարելավվում, այլ ընդհակառակը, վատանում է։ Այսպես, օրինակ, ԱՄՆ-ում միայն պաշտոնապես գրանցված գործազուրկների թիվը 1957 թվականի առաջին կեսի 3 միլիոն մարդուց 1958 թվականի առաջին կիսամյակին հասավ մինչև 5,5 միլիոնի։ 1959 թվականի սկզբին ԱՄՆ-ում գործազուրկների թիվը նորից 5 միլիոնից ավելի էր։ 1959 թվականի սկզբին գործազուրկների թիվն Անգլիայում 600 հազարից ավելի էր, Բելգիայում՝ 300 հազարից, Իտալիայում՝ 1,5 միլիոնից ավելի։ Դրա հետ միասին մոնոպոլիստները շարունակում են պակասեցնել բանվորների աշխատավարձը։ Այսպես, օրինակ, 1958 թվականի առաջին կեսին, 1957 թվականի համեմատությամբ, շաբաթական աշխատավարձը ԱՄՆ-ում պակասեց. հաստոցաշինական արդյունաբերության մեջ՝ 10,6 դոլլարով, բիտում պարունակող ածուխ արդյունահանող ձեռնարկություններում՝ 12,5 դոլլարով և այլն։

Այդ նույն ժամանակամիջոցում գները 2,5 տոկոսով բարձրացան։ Կապիտալիստական երկրներում գործազրկության և աշխատավոր մասսաների աղքատության աճը համոզիչ կերպով հաստատում են Մարքսի գիտական կանխատեսման ճշմարտացիությունը «...արդյունաբերական ռեզերվային բանակի հարաբերական մեծությունն աճում է հարստության ուժերի աճման հետ։ Բայց որքան ավելի մեծ է այդ ռեզերվային բանակը բանվորական ակտիվ բանակի համեմատությամբ, այնքան ավելի մեծ է մշտական գերբնակչությունը, որի աղքատությունը հակառակ հարաբերական է նրա աշխատանքի տառապանքներին։ Վերջապես, որքան ավելի մեծ են բանվոր դասակարգի աղքատ խավերը և արդյունաբերական ռեզերվային բանակը, այնքան ավելի մեծ է պաշտոնական պաուպերիզմը։ Դա կապիտալիստական կուտակման բացարձակ, ընդհանրական օրենքն է» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 675)։

Հակառակ Մարքսի, հակառակ ռեալ փաստերի բուրժուական գիտնականները և ռեֆորմիստական «տեսաբանները» պնդում են, թե իբր կապիտալիստական հարստության աճման հետ միասին հարստանում են նաև աշխատավոր լայն մասսաները։ Այս երերուն հիմքի վրա կառուցվում են մարքսիզմի ժամանակակից քննադատների կոնցեպցիաները։ Կապիտալի երկրներում բանվոր դասակարգի բացարձակ և հարաբերական աղքատացման փաստը ժխտում էր Քեյնսը, ժխտում են ժամանակակից քեյնսականները և նրանց «սոցիալիստական» ձայնակիցները։ Բավական է նշել, որ Ավստրիայի



սոցիալիստական պարտիայի ամբողջ նոր ծրագիրը հիմնվում է կապիտալիզմի
պայմաններում պրոլետարիատի աղքատացման վերաբերյալ մարքսիստա-
կան դրույթի ժխտման վրա։ Բենեդիկտ Կաուցկու և ավստրիական սոցիա-
լիստների մյուս լիդերների քարոզած «դեմոկրատական սոցիալիզմի» աջ սո-
ցիալիստական տեսությունը խարսխվում է այն թեզի վրա, որ ժամանակա-
կից հասարակությունը զարգանում է Մարքսի կանխատեսումներին հակա-
ռակ։ Կրկնվում են ժամանակակից բուրժուական հասարակության մեջ դա-
սակարգերի և դասակարգային պայքարի չքացման մասին այն նույն դրույթ-
ները, որ պրոպագանդում են անգլիական և մյուս բոլոր ռեֆորմիստները,
ինչպես նաև մոնոպոլիաների բացահայտ պաշտպանները՝ քեյնսականները։
Բենեդիկտ Կաուցկին և նրա կոլեգաները հայտարարում են, որ բուրժուա-
կան պետությունը, օգտագործելով իր «վերդասակարգային դիրքը», պետք է
բարելավի, կատարելագործի կապիտալիզմը, վերջ տա գործազրկությանը,
իրականացնի «հակացիկլային» (այսինքն՝ հակաճգնաժամային.— Բ. Մ.)
միջոցառումների ծրագիր, ըստ որում խթանելով մասնավոր կապիտալ ներ-
դրումները, սահմանի ազգային եկամտի արդարացի բաշխում։

«Դեմոկրատական սոցիալիզմի» սխեմը ավստրիական ռեֆորմիստները
գնտում են որպես տնտեսության մի ինչ-որ կազմակերպում, որը կոչված է
ապահովելու բոլոր ապրանքների արդարացի բաշխումը և պլանավորման օգ-
նությամբ հաղթահարելու կապիտալիստական էկոնոմիկայի զարգացման մեջ
եղած դժվարությունները։ Եվ ավստրիական ծրագրի հեղինակների կարծիքով
այդ ամենը կարող է հնարավոր լինել ձեռնարկատիրական ազատ գործու-
նեության համար ամենալայն ոլորտներ հատկացնելու դեպքում, այսինքն՝
մասնավոր սեփականության և կապիտալիստական արտադրաեղանակի պահ-
պանման դեպքում։

Իրենց տնտեսական տեսությունների և տնտեսական քաղաքականության
մեջ քեյնսյան դրույթների վրա են հենվում նաև Գերմանիայի սոցիալ-դեմո-
կրատական պարտիայի ռեֆորմիստները։ Արևմտագերմանական աջ սոցիա-
լիստներից շատերը ո՛չ միայն իրենք են դավանում Քեյնսի կեղծ ուսմունքը,
այլև այն քարոզում են բանվորների շրջանում։ Այսպես, օրինակ, ռեֆորմիստ
Կարլ Պոտմանը բարձրացնում է Քեյնսի ծառայությունները և նրան բնութա-
գրում որպես «ազատ ձեռնարկատերերի տիրապետության» դեմ մարտնչողի։

Քեյնսականների նման նրանք պնդում են, որ կապիտալ ներդրումների
պետական կարգավորման ճանապարհով կարելի է վերացնել գործազրկու-
թյունը։ Արևմտագերմանական, ինչպես նաև ավստրիական ռեֆորմիստները
իրենց ծրագրերում պաշտպանում են քեյնսյան այն թեզը, որ ժամանակակից
«վերդասակարգային» պետությունը մասնավոր կապիտալին պետք է ցույց
տա ֆինանսական օգնություն, որպեսզի կապիտալիստները շահագրգռվեն
ընդլայնելու արտադրությունը։ Իսկ դա, իր հերթին, իբր, կապահովի կոն-
յունկտուրայի բարձր մակարդակ և կվերացնի գործազրկությունը։

Քեյնսը շատ երկրպագուներ ունի նաև Ֆրանսիայի աջ սոցիալիստական
շրջաններում։ Բավական է նշել, որ ֆրանսիական ռեֆորմիզմի նշանավոր
տեսաբաններից մեկը՝ Ժյուլ Մոկը, նույնպես ապավինում է կապիտալիզմի
էկոնոմիկայի «բարեկարգման» վերաբերյալ քեյնսյան դեղատոմսերին։ Ժա-
մանակակից կապիտալիզմի հրատապ պրոբլեմներին նվիրված իր «Հա-
մադրումներ» գրքում Մոկը փորձում է հիմնավորել այն թեզը, որ բուրժուա-

կան հասարակության տնտեսական զարգացման ներկա պայմաններում «...տնտեսական հավասարակշռությունը կարող է ապահովվել միայն ներդրումների ընդլայնման դեպքում»։ Տվյալ դեպքում Ժյուլ Մոկը կանգնում է Քեյնսի դիրքերում, որը կապիտալիզմի բոլոր դժվարությունների հաղթահարման ելքը համարում էր ներդրումների աճումը։ Իրոք կապիտալիզմի պայմաններում կապիտալ ներդրումների աճումը և ապրանքների արտադրության ավելացումը է՛լ ավելի է սրում շուկաների ծանր պրոբլեմը, ստեղծում է չիրացված արտադրանքի հսկայական պաշարներ և, վերջին հաշվով, հանգեցնում նոր, է՛լ ավելի խոր տնտեսական ցնցումների։

Ժամանակակից ռեֆորմիստների տնտեսական տեսությունների հարազատությունը Քեյնսի ռեակցիոն, պետական-մոնոպոլիստական կապիտալի շահերը պաշտպանող ուսմունքի հետ հանդիսանում է արդի աջ սոցիալիստական գաղափարախոսության հակաբանվորական, բացահայտ օպորտունիստական էության դրսևորում։

Ժամանակակից ռեֆորմիզմի գաղափարախոսությունը կարելի է բնութագրել Վ. Ի. Լենինի խոսքերով, որը բնորոշելով «Լլոյդ-ջորջիզմի» էությունը, գրել է, որ դա շողոքորթության, ստի, խաբեության, ձեռնածության սիստեմ է. մոդայական և ժողովրդական բառիկներով, բանվորներին ամեն տեսակ ռեֆորմների և աջ ու ձախ ամեն տեսակ բարիքներ անելու խոստումներով խաբելու սիստեմ, որի նպատակն է բանվորներին ստիպել հրաժարվել բուրժուազիային տապալելու համար ռևոլյուցիոն պայքարից (տե՛ս Երկեր, հ. 23, էջ 147)։

---

# ՄԱՍՍԱՆԵՐԻ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ՆՈՐ ՇԱՐԺՈՒՄԸ

Ս. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների կոչման համար շարժումը հանդիսանում է սոցիալիստական մրցության այն նոր բարձրագույն ձևը, որը թելադրել է կյանքը և որն առավելագույն չափով համապատասխանում է մեր երկրի զարգացման արդի ժամանակաշրջանին։ Այդ շարժման նախաձեռնողները եղան Մոսկվա—Ռյազան երկաթուղու, Մոսկվա—Սորտիրովոչնայա դեպոյի կոմունիստ և կոմերիտական բանվորները, այն նույն դեպոյի, որտեղ 1919 թ. ծնունդ առան նշանավոր կոմունիստական շաբաթօրյակները, որին մասնակցեց ինքը՝ մեր պարտիայի և Սովետական պետության ստեղծող հանճարեղ Լենինը։

Մենք կհասնենք կոմունիստական աշխատանքի հաղթանակին, մարգարեաբար ասաց Վլադիմիր Իլյիչը և տեղի ունեցած առաջին կոմունիստական շաբաթօրյակն անվանեց «Մեծ նախաձեռնություն»։

Քառասուներկու տարի է անցել առաջին կոմունիստական շաբաթօրյակից, նրանով է սկսվել մեր երկրի աշխատավորական լայն մասսաների ստեղծագործության պատմությունը։ Նրա հիմնական էջերից են՝ կոմունիստական շաբաթօրյակները, հարվածայինների, ստախանովականների շարժումը և ՍՄԿՊ XXI համագումարի նախօրյակին ծնունդ առած և այժմ մեծ թափով ծավալվող կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների կոչման համար շարժումը։

Ի տարբերություն 1930 թվականների հարվածայինների շարժման, 1960 թվականի հարվածայինները պարտավորվում են աշխատել, սովորել ու ապրել կոմունիստաբար։ Նրանք աշխատանքի նոր, ավելի բարձր ձևեր են կիրառում, ապրելակերպի նոր նորմեր են մշակում։ Այդ մրցությունն ընդգրկում է ոչ միայն մարդկանց աշխատանքային գործունեությունը, այլև նրանց կյանքի բոլոր կողմերը։ Այդ շարժման մասնակիցները բարձր պարտավորություններ են ստանձնում ոչ թե անձնական բարեկեցության, այլ կոմունիստական շինարարության ընդհանուր գործին գաղափարապես նվիրված լինելու շնորհիվ։ Նրանց համար անխախտ կանոն է՝ քո գիտելիքները, քո հմտությունը հաղորդիր աշխատանքիդ ընկերոջը, ժամանակին օգնության հասիր ետ մնացողին ընդհանուր վերելքի հասնելու համար։

Նրանք ավելի անհանդուրժողականությամբ են վերաբերվում մարդկանց գիտակցության մեջ եղած անցյալի մնացուկներին, կոմունիստական համակեցության կանոնները խախտողներին և մեր առօրյայից դուրս են շպրտում այն ամենը, ինչ իր դարն ապրել է, ինչ քարացել է։

Ընկերության և կոլեկտիվիզմի հոգին տասնապատկում է այդ շարժման ուժը, որի մասնակիցները պատրաստ են օգնության ձեռք մեկնելու թերացողներին, ընկերների հետ բաժանելու ուրախությունն ու վիշտը: Մրցության մասնակիցները իրենց մեջ մշակում են այն գծերը և այն սովորությունները, որոնք հարկավոր են ապագայի մարդուն:

1960 թվականի մայիսի 27-ը նշանավոր օր դարձավ նոր հասարակության կերտման պատմության մեջ: Այդ օրը մեր Հայրենիքի տարբեր մասերից ավելի քան 1500 հոգի հավաքվել էին Մոսկվայում՝ խորհրդակցության: Այդ խորհրդակցությունն ամփոփեց կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների կոչման համար ծավալված մրցության առաջին արդյունքները, ընդհանրացրեց կուտակված փորձը և նշեց կոմունիստական աշխատանքի համար շարժման ծավալման ուղիները: Ընկ. Ն. Ս. Խրուշչովը բարձր գնահատական տվեց կոմունիստական աշխատանքի և հարվածայինների շարժմանը, նրա մասնակիցներին անվանեց ապագայի պիոներներ: Ընկ. Ն. Ս. Խրուշչովը միաժամանակ ընդգծեց, որ մի բրիգադա, մի գործարան, կոլտնտեսություն, սովխոզ կամ մի շրջան չեն կարող առանձին-առանձին հասնել կոմունիզմին: Միայն համաժողովրդական պայքարի լայն ճակատով կնվաճենք կոմունիզմի բարձունքը:

Այդ տեսակետից մեծ նշանակություն ունի Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Վալենտինա Գագանովայի հայրենասիրական նախաձեռնությունը, որը լայն տարածում գտավ նաև մեր ռեսպուբլիկայում: Արտադրության հարյուրավոր առաջավորներ ընդհանուր շահը վեր դասելով իրենց անձնական շահից, տեղափոխվել են ետ մնացող տեղամասերը և իրենց էներգիան ու ունակությունները ի սպաս դրել նրանց առաջավորներին հասցնելու համար:

Ռեսպուբլիկայում ավելի քան 1500 բրիգադաներ, արտադրական տեղամասեր, հերթափոխություններ և ցեխեր, որոնցում ընդգրկված են մոտ 22 հազար մարդ, պայքարում են կոմունիստական աշխատանքի կոչման համար: Այդ կոլեկտիվներից 250-ը արդեն արժանացել են այդ բարձր կոչմանը, մոտ 10 հազար բանվորներ պայքարում են կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման համար, որոնցից 2000-ին շնորհվել է այդ պատվավոր կոչումը: Թվենք դրանցից մի քանիսին:

Ահա Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, Քաջարանի անվանի հանքափոր Աշոտ Մելքոնյանը: Նա իր բնավորության գեղեցիկ գծերով, համեստությամբ, աշխատասիրությամբ, ընկերների նկատմամբ կարեկից և ուշադիր վերաբերմունքով վայելում է ոչ միայն իր բրիգադայի, այլև հանքի ողջ աշխատավորության սերն ու հարգանքը: Այդպիսին են և նրա բրիգադայի անդամները, որոնց արդեն մեկ տարուց ավել է, ինչ տրված է կոմունիստական աշխատանքի հարվածայինների կոչում: Առաջավոր այդ կոլեկտիվի բոլոր 14 անդամները ոչ միայն տիրապետում են լեռնային բարդ գործին, այլև բազմաթիվ նորություններ են մտցնում աշխատանքում, նպաստում են աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, ձեռք բերում նոր մասնագիտություններ:

Անցյալ տարի նրանք պատվով կենսագործեցին ստանձնած պարտավորությունները և պետական առաջադրանքը կատարեցին 120 տոկոսով: Ընթացիկ տարվա առաջին 4 ամսվա առաջադրանքը բրիգադան կատարել է 116



տոկոսով, պլանից դուրս տվել է 1100 տոննա հանքաքար և աշխատանքի արտադրողականությունը 5,4 տոկոսի փոխարեն բարձրացրել է 20 տոկոսով: Աշխատանքի որակի բարձրացման ու արտադրական միջոցների մաքսիմալ օգտագործման հաշվին երիտասարդ հանքագործները անցած 4 ամսվա ընթացքում տվել են 45.000 ռուբլու տնտեսում:

Վերցնենք մեր մյուս հերոսին՝ Երևանի Կիրովի անվան գործարանի ապարատավարների բրիգադավար Սերյոժա Ամիրխանյանին: Նրա բրիգադան առաջիններից մեկն է, որ արձագանքեց մոսկվացիների հայրենասիրական նախաձեռնությանը, մտավ մրցության մեջ և միշտ կատարում է վերցրած պարտավորությունները: Բրիգադան անցած ամիսների պլանը կատարել է մոտ 107 տոկոսով, տալով 17 տոննա հումքի տնտեսում: Բրիգադայում արմատավորվել է խնայողության խստագույն ռեժիմ և թողարկվում է բարձրորակ արտադրանք: Սերյոժա Ամիրխանյանի մասին հարգանքով են խոսում Կիրովի անվան կոմբինատի բազմահազարանոց կոլեկտիվում: Նա կոմունիստաբար աշխատելու և ապրելու լավագույն օրինակ է տալիս:

Նուրբ բրդյա գործվածքեղենի և մահուդի կոմբինատի մանարան ցեխի այն բրիգադան, որին ղեկավարում էր Սիրուշ Ասլանյանը, կոմբինատի լավագույն բրիգադան էր, որն իր առաջադրանքները կատարում էր 112—115 տոկոսով: Սակայն ցեխում կային նաև ետ մնացող բրիգադաներ: Ընկ. Ս. Ասլանյանը ցանկություն հայտնեց տեղափոխվել ետ մնացող այն բրիգադան, որը հաճախ թերակատարում էր առաջադրանքները և ուներ ամենացածր ցուցանիշները, չնայած նրան, որ նրա աշխատավարձը մոտ 150 ռուբլով պակասում էր: Տեղափոխվելով այդ բրիգադան, նա աշխատանքի առաջավոր մեթոդների ներդրման միջոցով հասավ նրան, որ առաջին ամսում բրիգադան իր առաջադրանքը կատարեց 103 տոկոսով, երկրորդ ամսում՝ 106 տոկոսով, իսկ այժմ կատարում է 114—116 տոկոսով: Ընկ. Ասլանյանի աշխատանքը ստացավ բարձր գնահատական, նա պարգևատրվեց «Աշխատանքի գերազանցության համար» մեդալով:

Էլեկտրատեխնիկական գործարանի մամլման ցեխի՝ Մագդա Տոնոյանի ղեկավարած մամլողների բրիգադան պարտիայի XXI համագումարի նախօրյակին մտավ կոմունիստական աշխատանքի կոչման համար մրցության մեջ: Բրիգադայի յուրաքանչյուր անդամի համար սկսվեց աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման, փոտելիքների հարստացման և պրպտումների նոր շրջան: Ընկ. Տոնոյանի առաջարկությամբ կատարելագործվեց մամլման պրոցեսը, որի շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ մոտ 20 տոկոսով, և բարելավվեց արտադրանքի որակը: Բրիգադայի բոլոր անդամները ընդգրկվեցին քաղուսուցման ցանցում և տեխնիկական ուսուցման խմբակներում: Նրանք բոլորն էլ դրուժիննիկներ են: Բրիգադան, բարձր ցուցանիշներով կատարելով ստանձնած պարտավորությունները, 1959 թվականի հոկտեմբերին արժանացավ կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման: Արդյունքները գոհացուցիչ էին: Թվում էր, թե կարելի էր դրանով բավարարվել, բայց դա չբավարարեց կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչմանն արժանացած բրիգադային ու նրա ղեկավար ընկ. Տոնոյանին, որովհետև նույն ցեխում, նրանց կողքին աշխատող 3 մամլողներ ետ էին մնում:

Բրիգադայի անդամները լավ գիտեին, որ ետ մնացող ընկերներին իրենց բրիգադան տեղափոխելով, բրիգադայի ցուցանիշները և աշխատավարձը կիջնի։ Չնայած դրան, նրանք դիմեցին ցեխի ղեկավարությանը և խնդրեցին այդ 3 ընկերներին տեղափոխել իրենց բրիգադան։ Այդպես էլ արվեց. փոխադարձ օգնության շնորհիվ նրանք սկսեցին աշխատել այնպես, ինչպես իրենք էին աշխատում։ Բրիգադայի նոր անդամների աշխատավարձը նախկինի համեմատությամբ ավելացավ մոտ 30 տոկոսով։

Ընկ. Տոնոյանը շատերին է սովորեցրել մամլողի մասնագիտությունը։ Նրա նախկին աշակերտուհի Ամալյա Մինասյանի ղեկավարած բրիգադան նույնպես արժանացել է կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման, իսկ Վանիկ Սեդրակյանի և Ռիմա Հարությունյանի ղեկավարած բրիգադաները պայքարում են այդ կոչման համար։ Վերջերս ընկ. Տոնոյանի ղեկավարած բրիգադան որոշեց աշխատել առանց տեխնիկական վերահսկողության բաժնի հսկիչի, որի շնորհիվ ոչ միայն չիջավ, այլ բարձրացավ արտադրանքի որակը։ Բրիգադայի այդ նախաձեռնությունը լայն արձագանք է գտել էլեկտրատեխնիկական գործարանում։ Կոմունիստական աշխատանքի բրիգադայի բրիգադավար ընկ. Մ. Տոնոյանը պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Ռեսպուբլիկայի շինարարներից կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար առաջինը պայքարի մեջ մտավ Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի «Քաղշինակշին» տրեստի երրորդ վարչության այն բրիգադան, որը ղեկավարում է ընկ. Միշա Մովսիսյանը։ Երբ բրիգադավարը առաջարկեց այդ բարձր կոչման համար մտնել մրցության մեջ, բրիգադայի անդամ Ա. Մարությանը նրան առարկեց, ասելով, որ չպետք է շտապել, որովհետև աշխատանքի կազմակերպման վիճակը լավ չէ, հաճախ լինում են պարապուրդներ։ Բայց բրիգադայի մյուս բոլոր անդամները չհամաձայնվեցին նրա հետ և որոշեցին մտնել մրցության մեջ ու պայքարել այդ բարձր կոչմանն արժանանալու համար։ Այդպես էլ արվեց։ Դա տվեց հիանալի արդյունք, վերացան պարապուրդները, մոտ 20 տոկոսով բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։

Կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչմանն արժանացած 14 հոգուց բաղկացած այս բրիգադան իր պլանները այժմ կատարում է 130—140 տոկոսով։

Կոտայքի շրջանի Քյուլիջայի կաթնաանասնապահական սովխոզի բրիգադան, որին ղեկավարում է ընկ. Մամիկոն Բարսեղյանը, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողներից առաջինը արժանացավ կոմունիստական աշխատանքի բարձր կոչմանը։ Այս բրիգադան կովերին լավ խնամելու շնորհիվ կաթի ստացման պլանը 1959 թ. կատարեց 110 տոկոսով, 100 կովից պլանավորված 82-ի դիմաց ստացավ 98 հորթ։ Ընկ. Բարսեղյանի առաջարկությամբ մեքենայացվել են մի շարք աշխատատար պրոցեսներ։ Բրիգադան իր աշխատանքներում լայն կերպով կիրառում է ռոկանոնները, արմատավորում է լավագույն անասնաբույծների առաջավոր փորձը։ Բրիգադայի անդամները սովորում են զոոխմբակում։ Սովխոզի 1960 թ. պլանով նախատեսված է մեկ ֆուրաժային կովից ստանալ 2600 լիտր կաթ։ Ընկ. Բարսեղյանի բրիգադան պարտավորվել է ստանալ 3100 լիտր կամ 20 տոկոսով ավելի։ Բրիգադան այժմ հաջողությամբ կատարում է իր այդ պարտավորությունը։ Ընկ.



Բարսեղյանը վերջերս պարգևատրվեց «Աշխատանքային արիության համար» մեդալով։

Հոկտեմբերյանի շրջանի Սովետական գյուղի կոլտնտեսության օղակավարուհի Ժենյա Պողոսյանի օղակը անցյալ տարի 5 հեկտար եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 1150 ցենտներ կանաչ մասսա և 62 ցենտներ հատիկ։ Ընկ. Պողոսյանի օղակը կոմպլեկտավորված է միջնակարգ կրթություն ունեցող երիտասարդներից, որոնք սովորում են շրջանային գյուղական երիտասարդական ակումբում և գյուղատնտեսական հեռակա ինստիտուտում։ Պայքարելով «Հարուստ հեկտարի» համար, օղակը պարտավորվել է յուրաքանչյուր հեկտարից ստանալ 1200 ցենտներ կանաչ մասսա և 65 ցենտներ հատիկ։

Այսպիսի շատ օրինակներ կարելի է բերել նաև մյուս շրջաններից։

Ներկայումս կոմունիստական աշխատանքի համար մասսաների շարժումը թևակոխել է նոր փուլ։ Այժմ արդեն կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների կոչման մրցության մեջ են մտնում ձեռնարկությունների և կառույցների ամբողջ կոլեկտիվներ։ Կիրովի անվան գործարանի 1—5—6, Կիրովականի քիմիական կոմբինատի № 1 ցեխերի, Ախթալայի հանքերի հարստացուցիչ ֆաբրիկայի և մի շարք այլ կոլեկտիվներ համառ աշխատանքի շնորհիվ արժանացել են կոմունիստական աշխատանքի բարձր կոչման։

Կոմունիստական աշխատանքի կոչման արժանացած Ախթալայի հանքերի հարստացուցիչ ֆաբրիկայի կոլեկտիվը լուրջ հաջողություններ է ձեռք բերել պետական պլանների կատարման, առաջավոր տեխնիկայի արմատավորման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, հանքաքարի մեջ եղած մետաղների կորզման և այլ ցուցանիշների գծով։ Ֆաբրիկայի աշխատողների կեսը ռացիոնալիզատորներ են։ Այս կոլեկտիվից 20 բանվորներ ձեռք են բերել 3—4 մասնագիտություն, իսկ 30-ը՝ արդեն տիրապետում են 2 մասնագիտության։ Երկար ժամանակ է, որ ֆաբրիկայի կոլեկտիվում իսպառ վերացել են այնպիսի երևույթներ, ինչպիսիք են աշխատանքային կարգապահության, հասարակական համակեցության կանոնների խախտումները։

Ռեսպուբլիկայի ձեռնարկություններից Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը առաջինը մտավ կոմունիստական աշխատանքի ձեռնարկության պատվավոր կոչման համար մրցության մեջ։ Կանացի կոլեկտիվի հետ միասին, կիրովցիները քայլում են առաջավորների շարքում։

Սակայն չպետք է արբենանք մեր նվաճումներով։ Դրանք կոմունիստական աշխատանքի նախնական քայլերն են միայն։ Պետք է հասնենք նրան, որպեսզի բոլոր կոլեկտիվները ընդգրկվեն այդ շարժման մեջ։

Արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների շարժման մասնակիցների ուշադրությունը բևեռել այն բանի վրա, որպեսզի նրանք իրենց փառավոր գործերի վառ օրինակներով համակեն բոլոր աշխատավորներին։ Մենք պետք է հասնենք նրան, որպեսզի մրցության մասնակիցներն առանց բացառության նոր աշխատանքի վեհ օրինակներ տան։ Կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների շարժման լայն ծավալումը խոշոր խթան կհանդիսանա ետ մնացող արտադրական ձեռնարկությունները

սովխոզները, կոլտնտեսությունները, կառույցները առաջավորներին հասցնելու համար։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարին տված զեկուցման մեջ ընկեր Խրուշչովը նշեց. կոմունիստական հասարակարգի անցման համար ոչ միայն անհրաժեշտ է զարգացած նյութա-տեխնիկական բազա, այլև հասարակության բոլոր քաղաքացիների գիտակցականության բարձր մակարդակ։ Որքան բարձր է միլիոնավոր զանգվածների գիտակցությունը, այնքան հաջողությամբ կկատարվեն կոմունիստական շինարարության պլանները։ Բոլորի համար պարզ է, որ գիտության, տեխնիկայի զարգացման, տեխնիկական առաջադիմության ներկա մակարդակը հրամայական պահանջ է դրել, որպեսզի աշխատանքի մարդիկ ունենան անհրաժեշտ հանրակրթական և տեխնիկական պատրաստականություն։ Ահա թե ինչու կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների շարժման մասնակիցները քաջ գիտակցում են, որ առանց իրենց հանրակրթական և տեխնիկական գիտելիքների մակարդակի բարձրացման հնարավոր չէ արդյունավետ աշխատել։ Պատահական չէ, որ նրանք իրենց գիտելիքների հարստացման ուղղությամբ վերցնում են կոնկրետ պարտավորություններ։

Կուլտուրայի համալսարանները, երիտասարդ ռացիոնալիզատորների ինստիտուտները, առաջավոր փորձի տեխնիկական առաջընթացի դպրոցները, արտադրության նորարարների ինստիտուտը, որոնք մի շարք քաղաքներում և ձեռնարկություններում կազմակերպվել և գործում են կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարողների նախաձեռնությամբ, ցույց են տալիս նրանց շահագրգռվածությունն իրենց հանրակրթական և տեխնիկական գիտելիքների բարձրացման հարցում։ Շարժմանը մասնակից տասնյակ հարյուրավոր բանվորներ, ծառայողներ, կոլտնտեսականներ սովորում են երեկոյան հանրակրթական դպրոցներում, հեռակայում են բարձրագույն ուսումնական հաստատություններում և տեխնիկումներում։ Գնալով նրանց թիվը մեծանում է։ Այդ կապակցությամբ էլ մեր հասարակական-տնտեսական կազմակերպությունների առջև հրամայական խնդիր է դրվում — բոլոր միջոցներով օգնել օրըստօրե ծավալվող կոմունիստական աշխատանքի շարժման մասնակիցներին։

Անհրաժեշտ է, որպեսզի պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ակտիվ մասնակցությամբ արտադրական ձեռնարկություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում մշակվեն և կենսագործվեն արտադրության մեջ աշխատող մարդկանց պրոֆեսիոնալ տեխնիկական կրթությունը կազմակերպելու, նրանց տեխնիկական որակավորումը բարձրացնելու միջոցառումներ։ Այդ տեսակետից մեծ գործ ունեն անելու արտադրությունում, բարձրագույն ուսումնական և գիտա-հետազոտական ինստիտուտներում աշխատող ինժեներները, մեր տեխնիկական ինտելիգենցիան։

Խոշոր աշխատանք պետք է տարվի հատկապես արտադրության մեջ աշխատող մարդկանց, մանավանդ երիտասարդության հանրակրթական ուսուցման գործը կազմակերպելու և երեկոյան ու հերթային հանրակրթական դպրոցների վիճակը բարելավելու ուղղությամբ։ Ռեսպուբլիկայի Լուսավորության մինիստրությունը պետք է ավելի կոնկրետ զբաղվի այդ հարցերով, որովհետև այդ դպրոցների դերը կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվա-



ծայինների շարժման ծավալման կապակցությամբ ավելի է բարձրանում և վճռական նշանակություն ստանում։

Պրոֆմիութենական կազմակերպությունները, Լուսավորության մինիստրությունը տնտեսական կազմակերպությունների հետ միասին պետք է հոգ տանեն, որպեսզի խոշոր արտադրական ձեռնարկությունների, սովխոզների, կոլտնտեսությունների բազայի վրա ստեղծվեն հանրակրթական դպրոցներ, նրանց տրամադրելով բոլոր անհրաժեշտ պայմանները աշխատավորության հանրակրթական ուսուցումը կազմակերպելու համար։

Պետք է հասնել այն բանին, որպեսզի արտադրության մեջ աշխատող և հանրակրթական դպրոցներում, տեխնիկումներում, հեռակա միջնակարգ ու բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորող մարդիկ անարգել կերպով օգտվեն իրենց արտոնություններից։

Կոմունիստական աշխատանքի շարժման մասնակիցները իրենց առջև խնդիր են դրել բարձրացնել իրենց կուլտուրական մակարդակը ու մտահորիզոնը, ավելի մոտ կանգնել արվեստի տարբեր ճյուղերին, կազմակերպել իրենց և իրենց ընտանիքի անդամների ուրախ և կուլտուրական հանգիստը։ Նրանցից տասնյակ հարյուրավոր մարդիկ հաճախում են կուլտուրայի համալսարանները, ակտիվ կերպով մասնակցում են գեղարվեստական ինքնագործունեության խմբակների աշխատանքներին։ Վերջերս Երևան քաղաքի արվեստի աշխատողների տանը կից կազմակերպված երկամյա կուլտուրայի համալսարանը, որտեղ սովորում էին 200 բանվոր-երիտասարդներ, տվեց իր շրջանավարտները, որոնք լուրջ գիտելիքներ ստացան թատրոնի, երաժշտության, նկարչության վերաբերյալ։ Ավարտողները մեծ գոհունակությամբ են խոսում համալսարանի մասին։

Կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների կոչմանն արժանանալու համար ծավալված մրցությունը նոր հարցեր է դնում կուլտուրական ֆրոնտի աշխատողների առջև։ Արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ կիրառել միջոցառումներ, որպեսզի կոմունիստական աշխատանքի մասնակիցները կուլտուրական իրենց մակարդակով նույնպես լինեն առաջավորների շարքում։

Արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները դեռ բավարար չափով չեն ուսումնասիրում, ընդհանրացնում և տարածում կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարող բրիգադաների և հարվածայինների առաջավոր փորձը։ Փորձի տարածման նպատակով քիչ են կազմակերպվում սեմինար խորհրդակցություններ, հավաքներ։ Այդ է պատճառը, որ բազմաթիվ արտադրական ձեռնարկություններում, սովխոզներում, կառույցներում թույլ է տարածված և աննշան քանակությամբ մարդիկ են ընդգրկված այդ շարժման մեջ։ Հատկապես թույլ է ծավալված այդ շարժումը շինարարական կազմակերպություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում։

Որոշ ընկերներ կարծում են, որ կոմունիստական աշխատանքի շարժումը վերաբերում է միայն արտադրության մարդկանց։ Դա ճիշտ չէ։ Սովորել, աշխատել և ապրել կոմունիստաբար լոզունգի նշանաբանով կարող են և պետք է գործեն մեր բոլոր կոլեկտիվները։

Կոմունիստական աշխատանքի բրիգադայի կամ հարվածայինի կոչում շնորհելը մեծ իրադարձություն է յուրաքանչյուր մարդու և կոլեկտիվի կյան-

քում։ Պետք է ձգտել այն բանին, որ դա լինի խնջական տուն ոչ միայն նրանց համար, որոնք արժանանում են այդ պատվին, այլև նրանց աշխատանքային ընկերների համար։

Ճիշտ են վարվում այն արհմիութենական կոմիտեները, որոնք կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչում ստացած ընկերներին և կոլեկտիվներին միաժամանակ տալիս են պատվոգրեր, նրանց անունները գրվում են պատվոգրքերում, պատվոտախտակներում։

Պետք է բարելավել այդ շարժման ղեկավարությունը և որոշ հստակություն մտցնել այդ գործում։ Ոմանք կարծում են, թե կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարողները հենց սկզբից պետք է լինեն անթերի մարդիկ։ Դա սխալ է։ Առաջավորների առավելությունն էլ այն է, որ կարողանում են իրենց հետ տանել ու դաստիարակել նաև հետ մնացողներին։

Կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարող բանվորը, բրիգադան, ցեխը, հերթափոխությունը, կոլեկտիվը պետք է աշխատի ընդհանուր պայմաններում և իր աշխատանքով օրինակ ցույց տա մյուսներին։ Կոմունիստական աշխատանքը բացասում է արտոնություններ և ավելորդ պճնանքներ։

Մեծ է սկզբնական պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների դերն այդ շարժման ծավալման գործում։ Մեծ անելիքներ ունեն նաև մեր մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը։ Խիստ անհրաժեշտ է, որպեսզի մամուլի էջերում ավելի հաճախակի նյութեր հրապարակվեն առաջավոր հարվածայինների, բրիգադաների, ցեխերի, հերթափոխությունների և կոլեկտիվների աշխատանքի փորձի մասին։

Կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների կոչման համար մրցության ծավալման կարևոր նախապայմանը տնտեսական կազմակերպությունների կողմից այդ շարժման մասնակիցների աշխատանքի համար անհրաժեշտ պայմանների ստեղծումն է։ Քիչ չեն դեպքերը, երբ կոլեկտիվը, ցեխը, բրիգադան, բանվորները լավ պարտավորություններ են վերցրել, պատրաստ են դրանք կատարելու, բայց նյութա-տեխնիկական ոչ համաչափ մատակարարման պատճառով նրանք պարապուրդներ են տալիս։ Պահանջված չափով հոգ չի տարվում մրցողների աշխատանքային, կոմունալ-կենցաղային պայմանների բարելավման և աշխատանքի անվտանգության ապահովման նկատմամբ։ Ծավալված այս համաժողովրդական շարժման շահերը հրամայողաբար պահանջում են ամենակարճ ժամանակամիջոցում վերջ տալ այդ վերաբերմունքին։

Շուտով մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը տոնելու է Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 40-ամյակը։ Դա պատմական խոշոր նշանակություն ունեցող իրադարձություն է հայ ժողովրդի կյանքում։ Ամենուրեք տիրում է աշխատանքային և քաղաքական բարձր խանդավառություն։ Արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների համաժողովրդական շարժումը, մոբիլիզացնել աշխատավորության ուժերը այդ փառավոր տոնը մեծամեծ հաջողություններով դիմավորելու համար։

---

**ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒԼԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ԱՌԹԻՎ**

# ՆՈՐ ՈՒԺՈՎ, ՆՈՐ ԵՌԱՆԴՈՎ

Կենսագործելով ՍՄԿՊ XXI համագումարի և Կենտկոմի 1959 թ. հունիսյան պլենումի որոշումները, Երևանի Ստալինյան շրջանի աշխատավորները լուրջ հաջողություններ են ձեռք բերել արդյունաբերության և տրանսպորտի մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման, յոթնամյակի առաջին տարվա և երկրորդ տարվա անցած վեց ամսվա առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու գործում։

Շրջանի արդյունաբերության աշխատողները ընթացիկ տարվա վեց ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարեցին 102,9 տոկոսով և պլանից դուրս երկրին տվեցին 54 միլիոն ռուբլու արտադրանք։ Անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ շրջանում արդյունաբերական արտադրանքի ծավալը աճեց ավելի քան 16 տոկոսով. աշխատանքի արտադրողականությունը, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, բարձրացավ մոտ 10 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքի՝ պլանից ավելի իջեցումից 4 ամսում ստացվող խնայողությունը կազմեց մոտ 11 միլիոն ռուբլի։

Տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ պարտիայի Կենտկոմի առաջադրած խնդիրները և սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունները կատարելու ուղղությամբ աշխատանքի դրական օրինակ են ցույց տալիս Ս. Մ. Կիրովի անվան գործարանի դիրեկցիան ու պարտիական կազմակերպությունը։ Նրանք կոլեկտիվի ողջ ուշադրությունն ուղղել են մեր պարտիայի XXI համագումարի, Կենտրոնական Կոմիտեի պլենումների որոշումների անշեղ կենսագործման և մրցությամբ վերցրած պարտավորությունների կատարման գործին։ Համագումարից հետո անցած մեկ և կես տարում գործարանում զգալի աշխատանք է կատարվել արտադրության ավտոմատացման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման և արտադրանքի նոր տեսակների յուրացման ուղղությամբ։

1—7 ցեխում տեղադրվել է ավելի հզոր, առանց խառնիչի ավտոմատ կարգավորվող ացետիլենի գեներատորը, որն իր չափերով հավասար լինելով հին գեներատորներին, ունի կրկնակի արտադրողականություն։ 30—30ա ցեխում կատարելագործվել է քլորոպրենի պոլիմերացման պրոցեսի ավտոմատ ղեկավարումը. ցեխի կոլեկտիվը մտնելով սոցիալիստական մրցության մեջ, պարտավորվել է թողարկել քլորոպրենի անընդհատ պոլիմերացման գիծը։ 2—5 ցեխում ավարտված է բոլոր ագրեգատների վերափոխումը և արդեն 4-րդ ամիսն է, ինչ գործարանի կաթսայատունը և կրի ցեխը անցել են

եղբայրական Ադրբեջանից ստացվող բնական գազի օգտագործմանը, որը հնարավորություն է տալիս օրական տնտեսելու մոտ 400 տոննա վառելանյութ։ Զգալի աշխատանքներ են կատարված նաև մնացած ցեխերում։

Գործարանում լայնորեն ծավալված է կոմունիստական աշխատանքի բրիգադայի, հերթափոխի, ցեխի և հարվածայինի կոչմանը արժանանալու համար պայքարողների շարժումը, որի նախաձեռնողներն ու ոգեշնչողներն են ցեխային սկզբնական պարտիական կազմակերպություններն ու արտադրության մեջ աշխատող բազմաթիվ կոմունիստները։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի պատվավոր կոչմանն են արժանացել 30—30ա ցեխի կոմունիստ Ս. Ամիրխանյանի ղեկավարած ապարատավարների բրիգադան, կոմունիստ Վ. Ազարյանի ղեկավարած ցեխը և շատ այլ հերթափոխություններ ու բրիգադաներ։

Գործարանում լավ հիմքերի վրա է դրված բանվորների ու ինժեներատեխնիկական աշխատողների հանրակրթական և կուլտուր-տեխնիկական մակարդակի, նրանց ստեղծագործական նախաձեռնության բարձրացման գործը. տարեցտարի ավելանում է ռացիոնալիզատորների և նորարարների թիվը։ Վերջին մեկ տարում գործարանի բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների կողմից արված 1354 առաջարկությունից արտադրության մեջ ներդրվել են 1020-ը, որոնցից ստացվող խնայողությունը տարեկան կազմում է մոտ 9 միլիոն ռուբլի։ Գործարանի կոլեկտիվը բոլոր հիմնական ցուցանիշներով ժամկետից շուտ կատարեց 1959 թվականի պլանները. կոլեկտիվը հաջողությամբ աշխատում է նաև ընթացիկ տարում։ 1960 թվականի անցած հինգ ամսվա ընթացքում գործարանում արտադրական պլանը կատարված է 108,8 տոկոսով. զգալի չափով գերակատարված են նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանները։ Գործարանի կոլեկտիվը ներկայումս թողարկում է միայն բարձր տեսակի արտադրանք։ Անցած հինգ ամսում գործարանում խնայվել է 350 տոննա հիմնական հումք, մոտ 2,5 միլիոն կիլովատ ժամ էլեկտրաէներգիա և շատ այլ օժանդակ նյութեր։ Գործարանի պարտիական կազմակերպության, դիրեկցիայի և ամբողջ կոլեկտիվի եռանդուն ու հետևողական աշխատանքի շնորհիվ արդեն երրորդ տարին է, ինչ գործարանն իր ձեռքում է պահում Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշը։ Համառ և հետևողական աշխատանքով ձեռք բերած արդյունքները գործարանի կոլեկտիվին հնարավորություն տվին մրցության մեջ մտնելու՝ կոմունիստական աշխատանքի ձեռնարկության պատվավոր կոչմանը արժանանալու համար։

Արտադրության ընդարձակման և տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ նշանակալից աշխատանք է կատարվել Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում։ Գործարանի կոլեկտիվի և գործարանին կից գիտա-հետազոտական ինստիտուտի ֆիլիալի ինժեներա-տեխնիկական աշխատողների միացյալ ուժերով 1959 թվականին գործարանում յուրացվեց 14 նոր տիպի տրանսֆորմատորների, գեներատորների, շարժական էլեկտրակայանների և այլ տիպի էլեկտրական մեքենաների արտադրությունը և սկսվեց դրանց մասսայական թողարկումը։ Յոթնամյակի երկրորդ տարում գործարանի կոլեկտիվը մտնելով սոցիալիստական մրցության մեջ, պարտավորվել է յուրացնել 20 նոր տիպի էլեկտրական մեքենաների արտադրությունը, այդ թվում



առաջին և երկրորդ գաբարիտի տրանսֆորմատորներ ալյումինե փաթեթներով, որի շնորհիվ գործարանը մեկ տարում կխնայի մոտ 500 տոննա պղնձյա թանկարժեք լարեր։ Վերջին մեկ և կես տարում զգալի աշխատանք է կատարվել նաև տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման և արտադրության կոնվեյերացման ուղղությամբ. գործարանում այժմ գործող կոնվեյերների երկարությունը հասնում է մոտ 2700 մետրի։ Գործարանի պարտիական կազմակերպության և դիրեկցիայի իրականացրած միջոցառումների շնորհիվ նկատելիորեն բարելավվել է աշխատանքի կազմակերպումը։ Բարձրացել է ցեխերի պետերի, վարպետների և կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի պատասխանատվությունը սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունների կատարման համար։ Այս բոլորի շնորհիվ ընթացիկ տարվա առաջին եռամսյակում ձեռք բերած բարձր ցուցանիշների համար գործարանի կոլեկտիվն արժանացավ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի ու ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշին և առաջին մրցանակի։

Նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրման, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման ուղղությամբ զգալի աշխատանք է կատարվել պոլիվինիլացետատ գործարանում։ Գործարանի մի խումբ ինժեներա-տեխնիկական աշխատողների և արտադրության նորարարների առաջարկությամբ, մեր Միության մեջ առաջին անգամ, 1959 թվականին կազմակերպվեց յուղաթթվի արտադրությունը, որը օգտագործվում է պլաստմասսային հատուկ դետալներ և իրեր ստանալու համար, որոնց կիրառումը ժողովրդական տնտեսության մեջ ունի բացառիկ կարևոր նշանակություն։ Գործարանում յուրացվեց նաև վինիֆլեքս լաքի արտադրությունը, որն օգտագործվում է էլեկտրաարդյունաբերության մեջ որպես մեկուսիչ և հնարավորություն է տալիս խնայելու մեծ քանակությամբ զանազան մեկուսիչ նյութեր, զգալի չափով կրճատում է էլեկտրական մեքենաների գաբարիտներն ու նրանց կշիռը։ Արտադրության նոր տեսակների թողարկման հետ միասին զգալի չափով ավելացել է գործող ցեխերի հզորությունը, վինիլացետատինը՝ 50, պոլիվինիլբուտիրալինը՝ 35, կաթսայական հզորությունը 60 տոկոսով և այլն։ Վերջին մեկ և կես տարում գործարանի կոլեկտիվը լուրջ աշխատանք է տարել նաև արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման ուղղությամբ։ 0—5 ցեխում մեքենայացվել են բուտաֆոլ թաղանթի փաթաթման և պոլովինիլբուտիրալի մանրացման պրոցեսները, քացախաթթվի և վինիլացետատի ցեխերում ստեղծվել են հատուկ կենտրոնական պուլտեր տեխնոլոգիական պրոցեսները ղեկավարելու համար։ Գործարանի պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունները ադմինիստրացիայի հետ միասին լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, ապահովեցին 1959 թվականի համար ստանձնած պարտավորությունների կատարումը։ Գործարանի կոլեկտիվը հաջողությամբ և որակական բարձր ցուցանիշներով կատարեց նաև ընթացիկ տարվա անցած հինգ ամսվա պլանները։ Գործարանի կոլեկտիվը և Քիմիայի գիտա-հետազոտական ինստիտուտի բոլոր աշխատողները ջերմ հայրենասիրությամբ պարտավորվել են առաջիկայում շահագործման հանձնել պոլիվինիլային սպիրտից արհեստական մետաքս ստանալու փորձնական ցեխը։

Արտադրության ընդարձակման, նոր տեխնիկայի ներդրման, տեխնոլո-

գիայի կատարելագործման և արտադրանքի նոր տեսակների թողարկման ուղղությամբ զգալի աշխատանք է կատարվել ավտոդողերի, հիդրոպոմպերի, կոմպրեսորների, էլեկտրասպարատների, սարքաշինական, ավտոպահեստամասերի, ռետինատեխնիկական իրերի գործարաններում, նուրբ բրդյա գործվածքեղենի ու մահուդի կոմբինատում, ծխախոտի ֆաբրիկայում և շրջանի շատ այլ ձեռնարկություններում։

Արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման և բարձր արտադրողական մեքենաների մշակման ուղղությամբ որոշակի աշխատանք են կատարել Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի Հաստոցաշինության և մեքենաշինության վարչության հատուկ կոնստրուկտորական տեխնիկական բյուրոյի և շրջանի մի շարք արդյունաբերական ձեռնարկություններին կից կոնստրուկտորական բյուրոների ու լաբորատորիաների կոլեկտիվները։

Չնայած ձեռք բերած որոշակի հաջողություններին, շրջանի արդյունաբերական ու տրանսպորտի մի շարք ձեռնարկություններում և շինարարական օբյեկտներում անբավարար աշխատանք է տարվում տեխնիկական պրոգրեսի վերաբերյալ ՍՄԿՊ XXI համագումարի և Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումների կենսագործման, պետական պլանների ու սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունների կատարման ուղղությամբ։

Տեխնիկական պրոգրեսի արագացման, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման գործում առանձնապես անբավարար աշխատանք է տարվում շրջանի սննդարդյունաբերության ձեռնարկությունների մեծ մասում։ Հրուշակեղեն-մակարոնի ֆաբրիկայում, պահածոների գործարանում և ձեթ-օճառ կոմբինատում դեռևս աշխատանքների զգալի մասը, հատկապես բարձման, բեռնաթափման և տեղափոխման բազմաթիվ աշխատատար պրոցեսներ կատարվում են ձեռքով։ Նշված ձեռնարկություններում մի շարք տեխնոլոգիական պրոցեսներ կատարվում են պրիմիտիվ եղանակով և արտադրական ցածր կուլտուրայով, որը բացասաբար է ազդում ինչպես թողարկվող արտադրանքի որակի, այնպես էլ աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։ Նոր տեխնիկայի ներդրման ուղղությամբ շրջանի ձեռնարկություններին միանգամայն անբավարար օգնություն է ցույց տալիս ժողտնտխորհի Սննդարդյունաբերության վարչությունը։

Դրությունն ավելի վատ է Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում։ Գործարանի դիրեկցիայի և պարտիական կազմակերպության վատ աշխատանքի հետևանքով մինչև վերջերս էլ արտադրվող հաստոցների առանձին տեսակներ չունեին հաստատված տեխնիկական պայմաններ և համապատասխան թույլտվություն մասսայական արտադրության համար, որի հետևանքով թողարկվող հաստոցները ցածրորակ են և Միության տարբեր շրջաններից ստացվում են բազմաթիվ բողոքներ։

Գործարանում անբավարար աշխատանք է տարվում նաև պետական պլանների և սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունների կատարման ուղղությամբ։ Ընթացիկ տարվա անցած հինգ ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարված է միայն 87,7 տոկոսով, չի կատարված նաև տեխնիկա-տնտեսական մնացած կարևոր ցուցանիշների պլանը։ Գործարանը աշխատում է անհամաչափ և անընդհատ խախտվում են աշխատանքների գրա-



ֆիկով նախատեսված ժամկետները, ռացիոնալ կերպով չեն օգտագործվում եղած սարքավորումներն ու մեխանիզմները։ Գործարանի նման վատ աշխատանքը հիմնականում բացատրվում է նրանով, որ այստեղ չափազանց ցածր հիմքերի վրա է դրված կազմակերպական աշխատանքը, գործարանի շատ աշխատողների մոտ բացակայում է պատասխանատվության զգացումը՝ իրենց հանձնարարված գործի նկատմամբ։ Գործարանի պարտիական բյուրոն և դիրեկցիան փաստորեն հաշտվել են ստեղծված դրության հետ։ Բնորոշ է, որ պարտիական կազմակերպության բյուրոյի անդամներից շատերը պետական պլանների կատարման գործում աշխատանքի լավ օրինակ չեն ծառայում մյուսների համար։ Անբավարար են աշխատում նաև ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտիական վերահսկողության հանձնաժողովները։

Շրջանի պարտիական կազմակերպության վերջին կոնֆերանսում խիստ քննադատության ենթարկվեց ժողտնտխորհի Թեթև արդյունաբերության վարչության ձեռնոցների ֆաբրիկայի վատ աշխատանքը։ Ֆաբրիկան շարունակում է վատ աշխատել նաև այս տարի. ընթացիկ տարվա հինգ ամսվա պլանը կատարված է 89 տոկոսով, չեն կատարված նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանները։ Ֆաբրիկայում անբավարար աշխատանք է տարվում տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման և արտադրանքի որակի բարելավման բնագավառում։ Այստեղ վատ է կազմակերպված նաև բանվորների տեխնիկական ուսուցման և ինժեներա-տեխնիկական աշխատողների որակավորման գործը։ Պարտիական կազմակերպությունը և դիրեկցիան ձևական մոտեցում են ցույց տալիս սոցիալիստական մրցության նկատմամբ։

Լուրջ թերություններ կան ամանեղենի ցինկապատման գործարանում։ Այստեղ դիրեկցիան և պարտիական կազմակերպությունը հետևողական աշխատանք չեն կատարում մշակված կազմակերպական-տեխնիկական միջոցառումները ժամանակին կենսագործելու համար։ Բավական է նշել, որ ընթացիկ տարվա առաջին և երկրորդ եռամսյակներին նախատեսված 37 միջոցառումներից կատարվել են միայն 12-ը։ Հսկողության բացակայության և անպատասխանատվության հետևանքով թույլ են տրվում արտադրական ու պետական կարգապահության խախտման դեպքեր, նույնիսկ հավելագրման փաստեր։ Գործարանի դիրեկցիան և պարտիական կազմակերպությունը չեն մոբիլիզացնում կոլեկտիվին պետական պլանների և մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման համար։

Արտադրության ավտոմատացման և աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ տարվող անբավարար աշխատանքի բազմաթիվ օրինակներ կարելի է բերել կաշվի գործարանից, Քաղաքային Սովետի Տեղական արդյունաբերության վարչության ռետինե կոշկի ֆաբրիկայից, քիմմաքրման, մանվածք արտելներից և այլ արդյունաբերական ձեռնարկություններից։

Նոր տեխնիկայի ներդրման, արտադրության ավտոմատացման և աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ լուրջ թերություններ կան նաև շրջանի տրանսպորտի ձեռնարկություններում։ Տրամվայ-տրոլեյբուսի վարչության վագոնավերանորոգման արհեստանոցում համապատասխան սարքավորումներ և մեխանիզմներ չունենալու պատճառով աշխատանքի շատ պրոցեսներ կատարվում են ձեռքով։ Այստեղ տեղադրված հաստոցների մեծ

մասը հնացել են և դրանք պետք է փոխարինվեն նորերով կամ մոդեռնացվեն։ Վարչության և պարտիական կազմակերպության անբավարար աշխատանքի հետևանքով չեն կատարվում ոչ միայն վերցրած պարտավորությունները, այլև պետական պլանները։ Վագոնավերանորոգման արհեստանոցն ընթացիկ տարվա հինգ ամսվա պլանը կատարել է 96,9 տոկոսով, իսկ տրոլեյբուսի ծառայությունը ուղևորների փոխադրման պլանը՝ 91,8 տոկոսով։ Վերանորոգման աշխատանքների ցածր որակի և երթևեկության ծառայությունների աշխատողների անպատասխանատվության հետևանքով մեծ չափով ավելացել է տրամվայ և տրոլեյբուսի մեքենաների ժամանակից շուտ գծից վերադառնալու դեպքերը։ Էլեկտրական ցանցը չկարգավորելու և էլեկտրաէներգիայի խնայողության համար անհրաժեշտ պայքար չկազմակերպելու հետեվանքով հինգ ամսում այստեղ 400 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի գերածախս է եղել։

Նոր տեխնիկայի ներդրման և աշխատատար պրոցեսների ավտոմատացման ու մեքենայացման ուղղությամբ դեռևս անբավարար աշխատանք է տարվում շրջանի ավտոտրանսպորտի տնտեսություններում, որտեղ վերանորոգման աշխատանքների մեծ մասը կատարվում է ձեռքով, առանց համապատասխան սարքավորումների ու մեխանիզմների։

Շրջանի արդյունաբերական ու տրանսպորտի ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների և տնտեսական ղեկավարների խնդիրն է՝ ավելի մոտիկից ու լրջորեն զբաղվել արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման հարցերով, ամեն կերպ պայմաններ ստեղծել տեխնիկական պրոգրեսի արագացման համար։

Մրցությամբ վերցրած պարտավորությունների կատարման ուղղությամբ դրությունը բարվոք չէ նաև շրջանի շինարարական կազմակերպություններում. առանձնապես դանդաղ է ընթանում շահագործման ենթակա մի շարք կարևոր օբյեկտների շինարարությունը։ Հայքիմարդշին տրեստի ղեկավարությունը պետք է այնպես անի, որ Կիրովի, ավտոդողերի, պոլիվինիլացետատ, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանների և մյուս ձեռնարկությունների նախատեսված օբյեկտները ժամկետից շուտ շահագործման հանձնվեն։ Շրջանի «Քաղբնակշին» տրեստը պետք է բոլոր միջոցները ձեռնարկի, որպեսզի ժամանակին ու բարձր որակով շահագործման հանձնվեն Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության ցուցահանդեսի պավիլիոնները, բնակելի շենքերը և շահագործման ենթակա մյուս օբյեկտները։ Իրենց աշխատանքներում որոշակի բեկում պետք է մտցնեն նաև № 8 հատուկ մոնտաժային և Կոմունշին տրեստները։

Դեռևս շրջանի առանձին արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներ և պարտիական կազմակերպություններ աշխատում են հին ձևով, մի կերպ կատարելով համախառն արտադրանքի պլանը, ուշադրություն չեն դարձնում նախատեսված ասորտիմենտի, թողարկվող արտադրանքի որակի և մնացած կարևոր տեխնիկա-տնտեսական ցուցանիշների կատարման վրա։ Այդ է պատճառը, որ շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները պլանավորված արտադրանքի 200 կարևոր տեսակներից 4 ամսվա ընթացքում չեն կատարել 59-ի պլանը, շրջանի 21 ձեռնարկություններ չեն կատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման, իսկ 18-ը՝ արտադրանքի ինքնարժեքի



իջեցման պլանները։ Այս տեսակետից չափազանց բնորոշ է Կաբելի գործարանի աշխատանքը։ Գործարանը ընթացիկ տարվա հինգ ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել է 103,5 տոկոսով, թերակատարելով տեխնիկա-տնտեսական մի շարք կարևոր ցուցանիշների պլանը։ Նախատեսված արտադրանքի 10 տեսակներից չի կատարվել 5-ի պլանը. չի կատարվել նաև արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանը, ցածր է թողարկվող արտադրանքի որակը, որի պատճառով վերջին մեկ և կես տարվա ընթացքում Միության բազմաթիվ գործարաններից և կազմակերպություններից ստացվել են 63 բողոք։ Աշխատանքի անբավարար կազմակերպման հետևանքով վատ են օգտագործվում եղած սարքավորումներն ու մեխանիզմները։ Գործարանի հիմնական ցեխերից մեկում՝ ձգման ցեխում, ընթացիկ տարվա 4 ամսում 114 հազար մեքենա-ժամ պարապուրդ է եղել, որից մոտ 21 հազար ժամը բանվորական տեղը վատ նախապատրաստելու և տեխնոլոգիական ռեժիմը չպահպանելու պատճառով առաջացած վթարների հետևանք է։

Շրջանի մի շարք ձեռնարկություններում դեռևս անբավարար պայքար է տարվում թողարկվող արտադրանքի որակի բարելավման ուղղությամբ։ Առանձնապես վատ է դրությունը կոշկի 3-րդ, Կույբիշևի անվան կահույքի, հրուշակեղեն-մակարոնի ֆաբրիկաներում, բրդյա գործվածքեղենի ու մահուդի կոմբինատում, սարքաշինական և շինարարական առարկաների գործարաններում։

Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների առաջավորների Համամիութենական խորհրդակցությունում ունեցած իր ելույթում նշեց. եթե մեզանում հաջողությամբ են լուծվում արտադրության քանակական աճի խնդիրները, և պլանները ոչ միայն կատարվում, այլև գերակատարվում են, ապա արդյունաբերության մի շարք ճյուղերում դեռ լուրջ բացեր կան որակի տեսակետից։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովի խոսքը վերաբերում է ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի որակական բոլոր ցուցանիշների բարելավմանը։ Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ամեն կերպ բարելավել արտադրության որակական ցուցանիշները, բարձր պահել յուրաքանչյուր ձեռնարկության մարկան։

Անհրաժեշտ է նշել, որ շրջանի ետ մնացող ձեռնարկություններին դեռևս անբավարար օգնություն և ղեկավարություն են ցույց տալիս Ժողտնտխորհի առանձին ճյուղային վարչությունները և գերատեսչությունները։ Այլ կերպ ինչո՞վ բացատրել, որ Մեքենաշինության և Հաստոցաշինության վարչության՝ շրջանում եղած 8 ձեռնարկությունների զգալի մասը դեռևս աշխատում է ոչ համաչափ։ Արդեն չորրորդ ամիսն է, ինչ Քաղսովետի Տեղական արդյունաբերության վարչության ռետինե կոշիկի և կարի մասսայական ֆաբրիկաների պլաններից հանվել է արտադրանքի առանձին տեսակների արտադրությունը, որոնք գումարային արտահայտությամբ յուրաքանչյուր ֆաբրիկայում կազմում են ավելի քան 10 միլիոն ռուբլի։ Դրանց փոխարեն մինչև հիմա չի իջեցված արտադրանքի նոր տեսակների արտադրության առաջադրանքը և չեն ճշտված նրանց պլանները։ Այդ է պատճառը, որ ռետինե կոշկի ֆաբրիկան հինգ ամսվա պլանը կատարեց 69,8, մայիս ամսվանը՝ 36,5 տոկոսով, իսկ կարի ֆաբրիկան հինգ ամսվա պլանը կատարեց 69,8, մայիս ամսվանը՝ 29,9 տոկոսով։

ժողտնտխորհը, նրա համապատասխան վարչությունները, քաղաքային Սովետի գործկոմը, Շինարարության մինիստրությունը և Հայարդխորհուրդը պետք է ուժեղացնեն գործնական օգնությունն ու ղեկավարությունը հետ մնացող ձեռնարկություններին և պայմաններ ստեղծեն յուրաքանչյուր ձեռնարկության կոլեկտիվի համար՝ պետական պլանները և մրցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու համար։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ գումարման 5-րդ սեսիայի և ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումները աշխատանքային և քաղաքական մեծ վերելք են առաջացրել մեր երկրի աշխատավորության մեջ, ավելի լայնորեն է ծավալվում սոցիալիստական մրցությունը արդյունաբերության ու տրանսպորտի ձեռնարկություններում, կառույցներում և գիտա-հետազոտական ինստիտուտներում, ամենուրեք վերցնում են նոր, լրացուցիչ պարտավորություններ Կենտկոմի պլենումի որոշումներն իրագործելու համար։ Աշխատանքային մեծ խանդավառություն է տիրում նաև Երևանի Ստալինյան շրջանի ձեռնարկություններում։ Պոլիվինիլացետատ գործարանի կոլեկտիվի կոչը լայն արձագանք է գտել շրջանի արդյունաբերական և տրանսպորտի ձեռնարկություններում, բազմաթիվ արտադրական կոլեկտիվներ կանգնել են աշխատանքային հերթափոխի՝ յուրաքանչյուր օր անպայման պլանից ավելի արտադրանք տալու համար։ Շրջանի պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ գլխավորել աշխատավորության ստեղծագործական նախաձեռնությունը, ապահովել պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ակտիվ մասնակցությունը այդ մեծ գործին և ամեն կերպ պայմաններ ստեղծել վերցրած պարտավորությունները ժամանակին ու պատվով կատարելու համար։

Մեր շրջանն արդեն երկրորդ տարին է, ինչ մրցում է 26 կոմիսարների անվան շրջանի հետ։ Մեր շրջանի աշխատավորությունը մրցության մեջ է մտել նաև եղբայրական Ուկրաինայի մայրաքաղաք Կիևի արդյունաբերական շրջաններից մեկի՝ Օկտյաբրսկի շրջանի աշխատավորության հետ և պարտավորվել յոթնամյակը ժամկետից շուտ կատարել։ Կասկածից վեր է, որ մեր շրջանի պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունները և բոլոր աշխատավորները պատվով կկատարեն մրցությամբ ստանձնած պարտավորությունները։

Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
ՀԿՊ Երևանի կազմակերպության
Ստալինյան շրջկոմի քարտուղար

---

# ԿԱԴՐԵՐԸ ԵՎ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ

Կոմունիստական հասարակարգում նյութական բարիքների առատությունը պահանջում է աշխատանքի արտադրողականության նոր, շատ ավելի բարձր աստիճան։

Սակայն աշխատանքի արտադրողականությունը պայմանավորվում է արտադրողական ուժերի մակարդակով, առաջին հերթին՝ նրա տեխնիկական զինվածության մակարդակով։ «Տվյալ պահին,— ասում է ընկ. Խրուշչովը ՍՄԿՊ XXI համագումարում տված զեկուցման մեջ,— մեր երկրի հիմնական գործնական խնդիրը կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումն է, սոցիալիստական արտադրողական ուժերի նոր, հզոր վերելքը»։

Տեխնիկական պրոգրեսը պայմանավորված է սոցիալիստական արտադրողական ուժերի տեխնիկական մակարդակի առավելագույն բարձր աստիճանով, որը պետք է համապատասխանի առաջավոր գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումներին։

Այժմ անսպառ հնարավորություններ են ստեղծվել տեխնիկական պրոգրեսի համար։ Սոցիալիզմի կառուցման տարիներին հսկայական չափով զարգացան մեր երկրի արտադրողական ուժերը. դրա վառ ապացույցն է աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացումը։ Արդյունաբերության մեջ աշխատող բանվորների աշխատանքի արտադրողականությունը 1958 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, աճել է մոտավորապես 10 անգամ և այդ աշխատանքային օրվա զգալի կրճատման պայմաններում։

Մասնավորապես վերջին տարիներում որակական լուրջ փոփոխության են ենթարկվել աշխատանքի միջոցները։ ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի Հունիսյան պլենումը նշեց, որ պարտիայի XX համագումարից հետո անցած ժամանակաշրջանում մեր երկրում մի նոր, խոշոր քայլ արվեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման և տեխնիկայի կատարելագործման ասպարեզում։ Այդ ժամանակամիջոցում ստեղծվեցին և սերիական արտադրությամբ յուրացվեցին ավելի քան 5 հազար նոր, ավելի կատարյալ մեքենաներ, մեխանիզմներ, ապարատներ ու սարքեր։ Բարձր արտադրողական հաստոցաշինությունն ու սարքաշինությունը, արտադրության կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման միջոցների ստեղծումը, արտադրության և շինարարության մեջ նոր, առաջադիմական տեխնոլոգիական պրոցեսների կիրառումը, ավտոմատ ցեխերի և գործարանների ստեղծումը, ժողովրդական

տնտեսության լայն մասշտաբներով էլեկտրիֆիկացման, էներգիայի նոր աղբյուրի, ատոմային էներգիայի օգտագործման ռեալ հնարավորությունը խոր որակական փոփոխության ենթարկեցին աշխատանքի միջոցները։

Նույն կարգի փոփոխության է ենթարկվել նաև աշխատանքի նյութը. ստեղծվել են սինթետիկ նյութեր, պլաստմասսայի շատ տեսակներ, նոր ձուլվածքներ և այլ արհեստական փոխարինիչներ։ Արտադրության ղեկավարության մեջ կիրառվում են ռադիոէլեկտրոնիկան, մաթեմատիկական հաշվիչ մեքենաները։

Խոշոր տեղաշարժ կա գյուղատնտեսության մեքենայացման բնագավառում։

Սակայն այս բոլորը դեռևս չեն բավարարում կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական բազա ստեղծելու պահանջները։ Կոմունիստական հասարակարգի հզոր նյութա-տեխնիկական բազայի համար, ինչպես նշեց Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿԿ XXI համագումարում, պահանջվում է առավելապես զարգացած ժամանակակից ինդուստրիա, ժողովրդական ամբողջ տընտեսության լրիվ էլեկտրիֆիկացիա, արտադրության բոլոր պրոցեսների կոմպլեքսային մեքենայացում և ավտոմատացում, էներգիայի նոր աղբյուրների, երկրի բնական բազմահարուստ ռեսուրսների, նյութերի նոր տեսակների բազմակողմանի օգտագործում, այլ խոսքով՝ ծավալուն գիտա-տեխնիկական պրոգրես ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։

Ժողովրդական տնտեսության արտադրողական ուժերի որակական փոփոխությունները չեն կարող կատարյալ լինել, եթե նրանք ընդգրկում են արտադրողական ուժերի միայն իրային էլեմենտներ՝ աշխատանքի միջոցները և աշխատանքի նյութը։

Սոցիալիստական արտադրողական ուժերի փոփոխությունը լիակատար կարող է լինել այն դեպքում, երբ այն ընդգրկում է նաև արտադրողական ամենաակտիվ էլեմենտը՝ բանվորական ուժը։ Արտադրական միջոցների փոփոխությունը լայն հնարավորություն է ստեղծում բանվորական ուժի որակական փոփոխության, նրա առաջընթացի համար։ Արտադրական միջոցների փոփոխությունը արդյունք է բանվորների, գիտնականների, ինժեներների, կոնստրուկտորների մտահղացումների, նրանց մտավոր և ֆիզիկական անխոնջ աշխատանքի։ Տեխնիկական պրոգրեսը անխզելիորեն կապված է աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի հետ։

Կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական բազայի կառուցմամբ կբարձրանա և աշխատավորների կուլտուր-տեխնիկական զարգացման մակարդակը։ Տեխնիկական պրոգրեսն արտադրության մեջ՝ մեծապես կախված է արտադրության մարդկանց կուլտուր-տեխնիկական մակարդակից։

Այսպիսով, հանրային արտադրությամբ զբաղվող լայն մասսաների տեխնիկական-կուլտուրական բարձր մակարդակը տեխնիկական պրոգրեսի անհրաժեշտ պայմանն է։ Սակայն հանրային արտադրությամբ զբաղվող մարդկանց տարբեր խմբերի տեխնիկական և կուլտուրական մակարդակը տարբեր է, հետևաբար տարբեր պետք է լինեն նաև այդ նպատակով կիրառվող միջոցները։

Հայտնի է, որ գիտական, գիտա-հետազոտական նախագծային հիմնարկները համալրվում են գերազանցապես երիտասարդ, աշխատանքի ավելի քիչ



փորձ ունեցող կադրերով։ Սակայն արտադրություն մտնող նոր կադրերի զգալի մասի գիտելիքները մեծ մասամբ անբավարար են. նրանք լավ ծանոթ չեն արտադրության գործնական պահանջներին։ Այդ, ըստ էության, բարձրագույն դպրոցների թերությունն է։ Այժմ, բարձրագույն դպրոցների վերակառուցումից հետո, անհրաժեշտ է ավելի ամրապնդել դրանց կապը կյանքի հետ, բարելավել մասնագետների գործնական և գիտա-տեխնիկական պատրաստումը, նրանց դաստիարակել որպես կոմունիզմի ակտիվ կառուցողներ։ Այդ վերակառուցումը կպահանջի երկար ժամանակ և մեծ աշխատանք։

1959—1965 թվականներին ՍՍՌՄ բարձրագույն ուսումնական հաստատությունները կտան 2 միլիոն 300 հազար մասնագետ, որոնց տեսական-տեխնիկական պատրաստականությունն ավելի բարձր կլինի։ 1965 թվականին բարձրագույն կրթության տեր մասնագետների ընդհանուր թիվը կկազմի ավելի քան 4,5 միլիոն մարդ։ Գիտության և տեխնիկայի առաջընթացի համար խիստ կարևոր նշանակություն ունի կադրերի, առաջին հերթին՝ գիտա-հետազոտական բնագավառում աշխատողների հետ տարվող գիտական աշխատանքը։

Գիտության և արտադրության կապը ո՛չ միայն նպաստում է արտադրական պրոցեսների կատարելագործմանը, այլև գիտության և արտադրության կադրերի որակավորմանը, լրացնում մեկի գործնական, մյուսի տեսական գիտելիքների պակասը։ Այդպիսի օգտակար աշխատանքի փորձ էր Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Քիմիական ինստիտուտի և ԿԱՆԱԶ-ի կոլեկտիվի համագործակցությունը։ Գործարանի համար կարևոր հարց էր էլեկտրոլիզորների անընդհատ սնումն ապահովելը. անհրաժեշտ էր խորապես ուսումնասիրել այդ հարցը՝ արտադրության մեքենայացման և ավտոմատացման նպատակով։ Այդ ուղղությամբ հետազոտություն և հաշվարկներ կատարվեցին Հայաստանի Գիտությունների ակադեմիայի Քիմիայի ինստիտուտում՝ Ա. Մ. Գասպարյանի գլխավորությամբ. գործարանում էլեկտրոլիզորների անընդհատ սնուցումը փորձարկվեց կիսագործարանային եղանակով և այժմ այն ներդրվում է արտադրության մեջ։ Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի Քիմիայի ինստիտուտը մշակել էր Հայաստանի նեֆելինային սիենիտներից կավահող ստանալու սխեմա. այդ սխեման ստուգելու համար գործարանում կառուցվեց փորձնական ցեխ։ Տարիներ տևող կիսագործարանային ստուգումը ճշտեց ինստիտուտի առաջարկած սխեման, լրացրեց այն։ Այդ համատեղ աշխատանքը խոշոր չափով բարձրացրեց թե՛ ինստիտուտի, թե՛ գործարանի կադրերի տեխնիկական զինվածության մակարդակը։ Ինստիտուտի երիտասարդ կադրերը ավելի խորամուխ եղան արտադրության գործնական աշխատանքներում և բազմաթիվ առաջարկություններով օգնեցին ավելի հաջող լուծելու մի շարք խնդիրներ։ Այդպիսի առաջարկություններով հանդես եկան նաև գործարանի աշխատողները։ Նման օրինակներ կարելի է բերել գործարանի և Ալյումինի ու մագնիումի համամիութենական ինստիտուտի, Հայէլեկտրագործարանին կից էլեկտրաարդյունաբերության գիտա-հետազոտական ինստիտուտի ֆիլիալի և այլ ինստիտուտների համատեղ աշխատանքից։

Ինչպես հայտնի է, կադրերն աճում են գործնական աշխատանքներում, առաջին հերթին՝ գիտա-փորձնական, փորձնական և էքսպերիմենտալ ցեխերում, կոնստրուկտորային բյուրոներում, լաբորատորիաներում։

Այստեղ գիտությունը ձուլվում է արտադրությանը, արտադրությունը վերակառուցվում է գիտության հիման վրա, իսկ գիտության և արտադրության աշխատողները զինվում են անհրաժեշտ տեսական և գործնական նորանոր գիտելիքներով. տեսությունը չի կտրվում պրակտիկայից, պրակտիկան էլ չի սահմանափակվում, չի քարանում։ Այստեղ նոր մտահղացումները վերածվում են ռեալ արտադրական միջոցների։ Կոնստրուկտորի, տեխնոլոգի, հետազոտողի մտահղացումը նոր հաստոցի, նոր նյութի, նոր տեխնոլոգիայի մասին գործի է վերածվում փորձնական, էքսպերիմենտալ ցեխերում, տեղամասերում, լաբորատորիաներում, ստուգվում, խստապահանջ բանվորական կոլեկտիվի կողմից խոտանվում է սխալը, դեն նետվում ավելորդը, անշահավետը։ Ե՛վ կոնստրուկտորը, և՛ ինժեները, և՛ բանվորը փոխադարձ սերտ կապերի մեջ են լինում արտադրության պրոցեսում, փոխազդում իրար վրա, կատարելագործվում և կատարելագործում։ Արտադրողն ինքն է մասնակցում արտադրության միջոցների ստեղծմանը, և հետևաբար, լիովին տիրապետում է դրանց։

Այսպիսի համագործակցությունը կադրերի տեսական, տեխնիկական մակարդակը բարձրացնելու ամենալավ միջոցն է։ Այդ պատճառով էլ ՍՄԿԿ Կենտկոմի 1959 թվականի Հունիսյան պլենումի որոշումների մեջ հատուկ տեղ է տրված գործարանային լաբորատորիաներին, կոնստրուկտորական բյուրոներին, փորձնական ցեխերին ու տեղամասերին։ Չնայած դրան, պետք է նշել, որ առայժմ մեզ մոտ անբավարար ուշադրություն է հատկացվում այդ հարցերին։ Հասկանալի է, որ գիտության և արտադրության կապը շատ կարևոր է, սակայն բավական չէ կադրերի կուլտուր-տեխնիկական մակարդակը բարձրացնելու համար։

Արտադրությունն ունի իր ընթացիկ հարցերը, որոնց լուծումը շատ ժամանակ է խլում։ Արտադրության ղեկավարները պետք է պայմաններ ստեղծեն կադրերի ինքնազարգացման համար և հետևեն այդ գործին։ Արտադրական, գիտական գործուղումներ միության և արտասահմանյան գիտական կենտրոնները, առաջավոր արտադրական ձեռնարկությունները, արտադրական և գիտական կադրերի համատեղ տեսական, տեխնիկական կոնֆերանսները, օտար լեզուների ուսուցման խմբակների կազմակերպումը, արտադրության նվաճումների ցուցահանդեսների, տեսական, տեխնիկական նորությունների մասին ինֆորմացիա, սեմինար, ռեֆերատներ կազմակերպելը օգնում են տվյալ գործին։

Այս գործում կարևոր դեր ունեն տեխնիկական գրադարանները, որոնք մեզ մոտ մեծ մասամբ վերածվել են գրապահոցների։ Դա բոլորովին էլ չի համապատասխանում ներկա էտապի պահանջներին։ Տեխնիկական գրադարանները պետք է դառնան գիտական ինֆորմացիայի կազմակերպման կենտրոններ։ Տվյալ ձեռնարկության տեխնիկական նվաճումները, տեխնիկական նորությունները, արտադրության ռացիոնալ մեթոդները, առաջավորների փորձի ամփոփումն ու փոխանակումը, արտադրության տվյալ ճյուղին վերաբերող արժեքավոր հոդվածների, նոր գրքերի, ամսագրերի, բյուլետենների քննարկումը, դիսպուտների կազմակերպումը պետք է դառնան տեխնիկական գրադարանների պրակտիկան։ Այս բոլորն ավելի լայն մասշտաբով պետք է կազմակերպել տեխնիկայի տներում։ Տեխնիկայի տները պետք է լինեն տեխ-



նիկական նորությունների ցուցադրողը, դրանց ակտիվ պրոպագանդողն ու տարածողը։

Չնայած այն բանին, որ գնալով արտադրական կոլեկտիվները համալրվում են ավելի գրագետ և կուլտուրական մարդկանցով, սակայն ավելի կենսական է դառնում որակյալ կադրերի պատրաստման խնդիրը, որովհետև արտադրության տեխնիկական պրոգրեսը առաջ է ընկնում բանվորական համալրող ուժի պատրաստման պրոցեսից։ Արտադրության մեջ կադրերի պատրաստման և վերաորակավորման գործի դրվածքը դեռևս չի համապատասխանում նոր պահանջներին։ ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումի որոշման մեջ նշված է, որ «Պարտիայի նշած տեխնիկական առաջադիմության պլանների իրագործման համար անհրաժեշտ է ավելի բարձրացնել բանվորների, առանձնապես երիտասարդ բանվորների տեխնիկական ուսուցման մակարդակը»։ Ժամանակակից արտադրության մեքենայացումը, ավելի բարդ մեքենաներով ու մեխանիզմներով համալրվելը յուրաքանչյուր աշխատողից պահանջում է ընդհանուր և մասնագիտական բազմակողմանի գիտելիքներ։ Ուստի այժմ բանվորների արտադրական ուսուցումը չի կարող սահմանափակվել տեխմինիմումի ծրագրով։

Նոր տեխնիկային լիովին տիրապետելու, նրանից առավելագույնը ստանալու համար անհրաժեշտ է հասկանալ ո՛չ միայն երևույթները, այլև դրանց ֆիզիկական, քիմիական, մեխանիկական պատճառները, որովհետև առանց այդ պատճառներն իմանալու, հնարավոր չէ արտադրությունը վերափոխել, վերակառուցել, իսկ առանց դրա հնարավոր չէ մասսայական, համարձակ տեխնիկական պրոգրես։ Հետևաբար, անհրաժեշտ է վերակառուցել կադրերի պատրաստման դրվածքը, ինչպես և վերափոխել, խոր ու բազմակողմանի գիտելիքներով հարստացնել գոյություն ունեցող ծրագրերը, տեխնոլոգիական հրահանգները, զանազան ձեռնարկները և դասագրքերը։ Հասկանալի է, որ այս պայմաններում պետք է փոխվեն նաև բանվորական կարգ շնորհելու պահանջները։ Անհատական կցման եղանակը նվազ կարևոր է դառնում, իսկ խմբակային-բրիգադային, հերթափոխային եղանակը՝ լավ պատրաստված մասնագետների ղեկավարությամբ, դառնում է ավելի արդյունավետ ձև։

Եթե սոցիալիստական սիստեմը ազատ է կապիտալիստական սիստեմին հատուկ հակասություններից, որոնք խիստ կասեցնում են տեխնիկական պրոգրեսը, ապա դա չի նշանակում թե մեզ մոտ այդ գործում չկան լուրջ դժվարություններ, խոչընդոտներ, արգելակներ։ Այդպիսիք են առանձին օղակներում նկատվող հետամնացությունը, բյուրոկրատիզմի երևույթները, դանդաղկոտությունն ու հնամոլությունը, անգործնականությունը և նորն զգալու անկարողությունը։ Անհրաժեշտ է անզիջում, կրքոտ պայքար մղել դեռևս գոյություն ունեցող այդ երևույթների դեմ։ Այդ պայքարում խիստ կարևոր են պարտիական-կազմակերպական աշխատանքի դիպուկությունն ու թափը, արտադրության կազմակերպման և ղեկավարման խոր իմացությունն ու օպերատիվությունը, կադրերի ճիշտ ընտրությունը և նրանց անընդմեջ աշխատանքով ապահովելը։

Այդ նպատակով արտադրության վարչական, պարտիական, պրոֆմիութենական ղեկավարների հետ որոշ աշխատանք տարվում է, սակայն նույնը չի կարելի ասել արտադրության տեխնիկական ղեկավարության հետ տարվող

աշխատանքի մասին: Ավելին, նույնիսկ ժողտնտխորհի, նրա ճյուղային վարչությունների տեխնիկական խորհրդակցություններում լավագույն դեպքում մասնակցում են գլխավոր ինժեներները միայն: Հնարավո՞ր է արդյոք էլեկտրաէներգիայի տնտեսման խիստ կարևոր պետական առաջադրանքը հաջողությամբ կատարել առանց ձեռնարկությունների գլխավոր էներգետիկների և ընդհանրապես էներգետիկների մասնակցության, կամ գունավոր մետաղների տնտեսումը ապահովել առանց տեխնոլոգների, մեխանիկների ակտիվ մասնակցության, առանց նրանց հետ խորհրդակցելու, նրանց առաջարկությունները լսելու: Դա մասսաներին ունկնդրելու, մասսաներից սովորելու այն պրակտիկան է, որի բազմաթիվ օրինակներ է տալիս մեր պարտիայի ղեկավարությունը, հատկապես վերջին տարիներին: Չէ՞ որ ՍՄԿՊ ԿԿ-ի Հունիսյան և Հուլիսյան պլենումները ուղղակի ցուցում տվեցին հենվել ինժեներա-տեխնիկական կադրերի, արտադրության առաջավորների վրա: Դժբախտաբար, ժողտնտխորհը, կամ նրա ճյուղային վարչությունները չեն փորձում այդպես վարվել, խորհրդակցել գոնե առաջատար ցեխերի պետերի, տեխնոլոգների հետ:

Արտադրական կոլեկտիվի աշխատանքը ճիշտ, նպատակահարմար և արդյունավետ կազմակերպելու համար հարկավոր է լայն աշխատանք կազմակերպել ո՛չ միայն ցեխերի, այլև հերթափոխի պետերի, վարպետների, ենթավարպետների, բրիգադավարների հետ: Առաջավոր ձեռնարկությունների հաջողության գաղտնիքը, ինչպես ցույց է տալիս փորձը, կայանում է հենց այդ տեղամասերի, անմիջական արտադրական այդ օղակների ռիթմիկ, կարգավորված աշխատանքում:

Կազմակերպչական աշխատանքը ստորին օղակներում ունի այն անվիճելի առավելությունը, որ այն ընդգրկում է արտադրության անմիջական մասնակիցներին: Արտադրության ոլորտներումն են հղանում և գործի վերածվում սովետական մարդկանց աշխատանքային նախաձեռնությունները. իսկ առանց կազմակերպչական աշխատանքի, սոցիալիստական մրցության, կոմունիստական աշխատանքի մեթոդների համար տարվող պայքարը չէր կարող արագ աճել, տիրապետել մասսաներին, վերածվել համաժողովրդական շարժման:

ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի Հունիսյան պլենումից անցել է մեկ տարի: Սովետական մարդիկ խոշոր աշխատանք են կատարել պլենումի որոշումները գործի վերածելու համար: Շատ դժվարություններ են հաղթահարված տեխնիկական պրոգրեսի ճանապարհին, բայց տեխնիկական պրոգրեսը անընդհատ է և անվերջ: Ամեն մի սահմանագիծը սկիզբն է նոր առաջընթացի, ամեն մի առաջընթաց լի է դժվարություններով, որոնք հաղթահարելու համար անհրաժեշտ է, որ տեխնիկական պրոգրեսի հարցը միշտ էլ գտնվի մեր ուշադրության կենտրոնում:

Հ. ԴՈՎԼԱԹՅԱՆ
Երևանի ալյումինի գործարանի դիրեկտոր

---

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

ՍՄԿՊ ԿԿ-ի 1959 թ. Հունիսյան պլենումը նշեց արդյունաբերության հետագա տեխնիկական պրոգրեսի ուղիները, հիմք ընդունելով արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, հնացած սարքավորման փոխարինումն ու մոդեռնացումը, բարձր արտադրողականության պրոգրեսիվ տեխնոլոգիայի արմատավորումը: Այդ խնդիրների լուծման գործում մեծ դեր է հատկացվում մեքենաշինությանը: 1958—1960 թթ. Հայաստանի մեքենաշինության և հաստոցաշինության ձեռնարկություններում զգալի աշխատանք է տարվել նոր տեխնիկայի արմատավորման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, նոր կատարյալ մեքենաների ստեղծման ուղղությամբ:

Ֆրեզերային հաստոցների լիսեռիկների տիպի դետալների մշակման համար Հայկ. ՍՍՌ ժողտնտխորհի Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության Հատուկ կոնստրուկտորա-տեխնոլոգիական բյուրոն (ՀԿՏԲ) նախագծել է АБ—113 մասնագիտացված խառատային ավտոմատը: Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանի համար նախագծվել է խառատային կիսաավտոմատ՝ կցաշուրթերի և ատամնանիվների տիպի դետալների մշակման համար: Երկու հաստոցների նախագծերն էլ հանձնվել են Ֆելիքս Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանին՝ պատրաստելու համար: Այդ հաստոցները կարող են հաջողությամբ լայն կիրառում գտնել նաև մյուս հաստոցաշինական գործարաններում և հատկապես Երևանի ավտոպահեստամասերի գործարանում:

Մեր կոնստրուկտորներն աշխատում են շառավղային գայլիկոնիչ հաստոցների ընտանիքի (գամայի) ստեղծման վրա, հիմք ընդունելով արդեն նախագծված և Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանում պատրաստված 252 մոդելի հաստոցը:

Մշակվում է նաև էքսցենտրիկ մամլիչների տեխնիկական առաջադրանքը. դրանք նախատեսված են դարբնոցա-մամլիչային սարքավորման գործարանում թողարկելու համար:

Անցյալ տարի արմատավորվել են տասը հոսքային գծեր մեքենաների ու հաստոցների դետալները մշակելու համար: Լենինականի հեծանվի գործարանում արմատավորվել է հեծանիվների հավաքման կոնվեյեր, իսկ Ֆելիքս Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում՝ հավաքման քայլող կոնվեյեր խառատային հաստոցների հավաքման համար: Արմատավորվել են մեքենայացված կոնվեյերային գծեր Երևանի մեխանիկական գործարանի և

հիդրոհաղորդակ գործարանի ձուլման ցեխերում կաղապարման և կաղապարաձողերի խառնուրդներ պատրաստելու և բաշխելու համար։ 1960 թ. սկզբում Երևանի ավտոպահեստամասերի գործարանում արմատավորվել է նախապատրաստուկների ինդուկցիոն տաքացման տեղակայումը՝ բարձր հաճախականության հոսանքների կիրառմամբ։ Այդ միջոցառումը բարելավում է կռվածքների որակը, խիստ բարձրացնում դարբնոցա-մամլիչային ցեխի արտադրողականությունը։

1959 թվականին ներտաշիչ հաստոցների գործարանը յուրացրել է 2614 մոդելի հորիզոնական-ներտաշիչ հաստոցի արտադրությունը և 1960 թ. սկսել դրա սերիական թողարկումը։ Ընթացիկ տարվա II եռամսյակում գործարանը յուրացրել է երկրորդ 2A 614 մոդելի հորիզոնական-ներտաշիչ հաստոցը։

Նշված մոդելների հորիզոնական-ներտաշիչ հաստոցները նորագույն մոդելի հաստոցներ են, ժամանակակից տեխնիկայի մակարդակով։ Հին մոդելի հաստոցի վրա եղած 15 բռնակների փոխարեն ներկայիս ներտաշիչ հաստոցների գործարանում թողարկվող հաստոցները սարքավորված են միայն 2 բռնակներով, որոնց միջոցով տեղի է ունենում հաստոցի բոլոր հանգույցների շարժումը և մասերի տեղափոխումը, այդ թվում իլի մատուցումը։ Հաստոցը ամբողջովին էլեկտրիֆիկացված է և մասամբ էլեկտրոնային կառավարում ունի։

1959 թ. ռեսպուբլիկայի մի շարք գործարաններում թողարկվում էին հին մոդելի մեքենաներ ու հաստոցներ։ 1950 թ. սկսած Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանում թողարկվում էր 2135 մոդելի ուղղաձիգ-գայլիկոնիչ հաստոց, որն ուներ ցածր տեխնիկական ցուցանիշներ։ Մեր մյուս դարբնոցա-մամլիչային սարքավորման գործարանում թողարկվում էին հին նմուշի հինգ տոննանոց մամլիչներ, որոնք չափազանց ցածր արտադրողականություն ունեին։

Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանում հին մոդելի ուղղաձիգ-գայլիկոնիչ հաստոցը փոխարինվել է 252 մոդելի ժամանակակից շառավղային գայլիկոնիչ հաստոցով, իլի մինչև 1500 պտ/րոպեով։

Երևանի ավտոպահեստամասերի գործարանին կից նախատեսվում է կառուցել դարբնոցա-մամլիչային ցեխ՝ տարեկան 30 հազ. տոննա կարողությամբ։ Այստեղ, բեռնատար և մարդատար ավտոմոբիլների համար արտադրվող բոլոր պահեստամասերը մշակվելու են ճնշման տակ, այսինքն՝ տաք դրոշմման միջոցով։

Լուսավանի գործիքաշինական գործարանին, ինչպես նաև հղկիչ հաստոցների գործարանին կից կառուցվող ձուլման ցեխերը կհագեցվեն հատուկ սարքավորումով ճնշման տակ ձուլվածք և ձուլվող մոդելներ թողարկելու համար։ Այդ մեթոդներով ստացված իրերը ունեն բարձր ճշգրտություն և հետագա մեխանիկական մշակում չեն պահանջում։ Կեղևային (թաղանթային) կաղապարներում ձուլելու մեթոդի արմատավորումը կբարձրացնի արտադրության ընդհանուր կուլտուրան, կկրճատի խոտանը, խիստ կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը ձուլման արտադրության բոլոր պրոցեսներում։

Ցելիքս Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում 1Б61 և



1Л61 հաստոցների դետալների արտադրությունը փոխադրվել է հոսքի գծերը, արմատավորվել են բարձր արտադրողականության 23 ագրեգատային և մասնագիտացված հաստոց։ Այդ հնարավորություն է տվել 2,3 անգամ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և 650 ժամով իջեցնելու յուրաքանչյուր հաստոցի պատրաստման աշխատատարությունը։ Արտադրության մեջ արմատավորվել է բարձր արտադրողականության հարմարանք՝ 78 անուն պնևմատիկ և հիդրոսեղմակներով, որոնց շնորհիվ ձեռքի աշխատանքը խիստ կրճատվել է։ Հաստոցների գրեթե բոլոր չուգունե դետալները փոխադրվել են մեքենայական կաղապարման։ Կոմպլեքսային մեքենայացումն ու նոր տեխնոլոգիական պրոցեսները 6990 ռուբլով իջեցրել են մեկ հաստոցի ինքնարժեքը։

Երևանի ավտոպահեստամասերի գործարանում տեղադրվել են հոսքային գծեր «ԶԻԼ—150» և «Մոսկվիչ» ավտոմոբիլների դետալների մշակման համար։ Կիրառվում է դետալների մակերևութային կոփումը բարձր հաճախականության հոսանքների միջոցով, որի շնորհիվ 4 անգամ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը և խիստ բարելավվել արտադրանքի որակը։ Կազմակերպվել է ավտոմոբիլների դետալների հոսքային ցիանացումը, որի միջոցով տարեկան տնտեսվում է 270 հազար ռուբլի։

Երևանի կոմպրեսորների գործարանի ձուլման ցեխում իրագործվել է կաղապարման ու կաղապարաձողերի խառնուրդների մեքենայական պատրաստումը և նրանց մատուցումը էլևատորի միջոցով դեպի հարթակը։ Այդ միջոցառման օգնությամբ 12%-ով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։ Արմատավորվել է նույնպես ձուլվածքի կոտրուքանետ ավազաշիթային մաքրումը, որը բարելավել է դետալների որակը և թեթևացրել բանվորների ֆիզիկական աշխատանքը։

Ձեռքի օպերացիաները կրճատելու համար, բացի ագրեգատային և մասնագիտացված հաստոցներից, մեքենաշինական գործարաններում արմատավորվելու է չփվող լծորդված մակերևույթների փոխադարձ հղկումը՝ ձեռքով քերելու փոխարեն։ Այդ միջոցառումը 40%-ով կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը և կվերացնի ֆիզիկական ծանր աշխատանքը։

Երևանի կոմպրեսորների գործարանում լայն կիրառում են ստացել չեզոք միջավայրում ֆլյուսի տակ կատարվող ավտոմատիկ եռակցման տեղակայումները, որոնք խիստ բարելավել են եռակցման կարանների որակը։ Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության գծով նոր արտադրանքի թողարկումն ապահովելու նպատակով հարդարանքի պատրաստման վրա ամեն տարի ծախսվում է 12—15 միլիոն ռ.։ Բայց ամեն մի հատուկ հարմարանք դառնում է անպետք և վերածվում ջարդվածքի, հենց որ գործարանն անցնում է նոր մեքենայի կամ հաստոցի թողարկման։

Նոր մեքենաների կամ հաստոցների արտադրության նախապատրաստման ժամանակաշրջանը կրճատելու, հարմարանքների պատրաստման վրա կատարվող ծախսումները պակասեցնելու նպատակով ընթացիկ տարում Երևանի գործիքաշինական գործարանը նախապատրաստել է ունիվերսալ-հավաքովի հարմարանքների արտադրությունը և անցնում է նրանց թողարկմանը։ Գործի էությունը կայանում է նրանում, որ հաստոցների վրա անհրաժեշտ հարմարանքները, ինչպես նաև վերահսկիչ գործիքները հավաքվում են մի քանի ժամվա ընթացքում ստանդարտ (նորմալացված) դետալներից։ Երբ այս

կամ այն հարմարանքի անհրաժեշտությունը վերանում է, այն քանդվում է, իսկ նրա դետալները այնուհետև կիրառվում են նոր մեքենաների արտադրության համար։ Ունիվերսալ-հավաքովի հարմարանքների դետալները կարող են ծառայել երկար տարիներ, մինչև մաշվելը։

1959 թ. նոր տեխնիկայի պլանի համաձայն Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության գծով նախատեսվել էին 64 միջոցառում աշխատատար պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման և նոր, կարևորագույն մեքենաների թողարկման համար։

Ամենից ավելի էֆեկտիվ էին հետևյալ միջոցառումները։

Երևանի ավտոպահեստամասերի գործարանում արմատավորվել է դրոշմվող նախապատրաստուկների ինդուկցիոն տաքացումը բարձր հաճախականության հոսանքների միջոցով։ Դա զգալիորեն բարելավել է աշխատանքի պայմանները և բարձրացրել արտադրողականությունը, ինչպես նաև պակասեցրել խոտանի և այրուքի պատճառով առաջացող մետաղի կորուստները։ Այդ միջոցառման տնտեսական օգուտը կազմում է տարեկան 582 հազար ռուբլի։

Երևանի գործիքաշինական գործարանում պատրաստվում է մետաղյա իրերի գործարանի համար թողարկվող մեխերի դրոշմավորման և փաթեթավորման ավտոմատիկ գիծ։ Այդ գծի արմատավորումը հնարավորություն կտա ազատել լրացուցիչ արտադրական տարածություններ և ավելացնել թողարկվող արտադրանքի քանակությունը։

Փականքների գործարանի համար Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության ՀԿՏԲ-ն նախագծել է, իսկ Երևանի գործիքաշինական գործարանը պատրաստելու է դաշնամուրի օղերի պատրաստման ու հավաքման ավտոմատիկ գիծ։ Այդ գծի արմատավորումից հետո կազատվեն արտադրական տարածությունները, կավելանա թողարկվող արտադրանքի քանակը և կբարելավվի նրա որակը։

Երևանի հիդրոպոմպերի գործարանը մշակել է E-1$^1/_2$KM-6 և E2KM-6 տիպի նոր միաբլոկ պոմպի կոնստրուկցիան սովորական 1$^1/_2$K-6 և 2K-6 տիպի փոխարեն։ Նա արդեն թողարկել է այդ պոմպերի փորձնական պարտիան։ Դրա հետևանքով վերացել է կցորդիչի պատրաստման անհրաժեշտությունը, իսկ պոմպի քաշն ու արտաքին չափերը պակասել են 25—30%-ով։ Այդ միջոցառման արմատավորման տնտեսական օգուտը կազմում է 900 հազար ռուբլի։

Ընթացիկ տարվա 5 ամսում, սահմանված պլանի համաձայն, դարբնոցա-մամլիչային սարքավորման գործարանը յուրացրել է 25 տոննա ճիգով թեքվող միականգնակ էքսցենտրիկ մամլիչի արտադրությունը։

Երևանի հիդրոհաղորդակ գործարանը յուրացրել է 1KP—20 և 1KPM—20 տիպի հիդրավլիկ բեռնաթափման ապահովիչ կափույրների արտադրությունը։ Մեխանիկական գործարանը արմատավորել է գունավոր մետաղներից պատրաստված արմատուրայի դետալների հեղուկային դրոշմումը ձուլման փոխարեն, որը տվել է գունավոր մետաղների զգալի տնտեսում։ Այդ նույն գործարանում պատրաստվում է հալման ինդուկցիոն վառարան գունավոր մետաղների համար։

Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության մի շարք գործա-



րաններ յուրացրել և սկսել են մեքենաների ու հաստոցների նորագույն մոդելների սերիական թողարկումը։

Երևանի կոմպրեսորների գործարանը ձեռնարկել է ВУ—$^6/_8$ կոմպրեսորների թողարկմանը, որոնց կարողությունը երկու անգամ ավելի մեծ է ВУ—$^3/_8$ կոմպրեսորներից, ինչպես նաև սկսել է օդային պաղեցումով ВУ—$^3/_8$ կոմպրեսորների արտադրությունը։ Ֆրեզերային հաստոցների գործարանը սկսել է 675 մոդելի լայն-ունիվերսալ ֆրեզերային հաստոցների թողարկումը։ Հիդրոհաղորդակ գործարանը յուրացրել է հիդրավլիկ պանելների և կափույրների 6 տեսակ՝ մետաղահատ հաստոցների, մամլիչների և այլ մեքենաների ավտոմատիկ կառավարման կարիքների համար։

Ընթացիկ տարվա երկրորդ եռամսյակում դարբնոցա-մամլիչային սարքավորման գործարանում, բացի 6,3 տոննանոց մամլիչից թողարկվել են 45 նոր մամլիչ՝ 25 տոննա ճիգով։ Այդ մամլիչն ունի պնևմատիկ ֆրիկցիոն կցորդիչ, որը հնարավոր է դարձնում անաղմուկ, սահուն միացումը, բացառվում է կցորդիչների հաճախակի կոտրումը և մեծանում է մամլիչի ծառայության ժամկետը։

Երևանի հաստոցանորմալ գործարանում կազմակերպվել է ամրակման և հաստոցային նորմալների կենտրոնացված արտադրությունը զանազան տիպի պարուրակահատ նստավորման ավտոմատներով։ Դա շատ անգամ էժան է նստում և լավորակ նորմալներ են ստացվում, քան պատրաստման անհատական եղանակի դեպքում։

Հղկիչ հաստոցների գործարանը արդեն լրիվ յուրացրել և սկսել է 312M մոդելի, 200—500 մմ մշակման տրամագծով կլոր հղկիչ հաստոցների մասսայական արտադրությունը։ Այդ հաստոցները լայնորեն կկիրառվեն մեքենաշինության մեջ դետալների մաքրամշակման համար։

Հաստոցաշինական գործարաններում զգալի աշխատանք է տարվել որակյալ ինժեներա-տեխնիկական աշխատողների ու բանվորների նախապատրաստման համար։ Արտադրության մոտ 300 աշխատողներ ծանոթացել են մետաղահատ հաստոցների արտադրության տեխնոլոգիային Մոսկվայի, Լենինգրադի, Խարկովի և մյուս քաղաքների առաջավոր ձեռնարկություններում։

Մեծ խնդիրներ են դրված Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի առաջ, որի կոլեկտիվը յուրացրել և ձեռնամուխ է եղել C—155 գայլիկոնիչ սեղանի հաստոցների և C—130 պարուրակահատ հաստոցների սերիական թողարկմանը։ Ներկայումս գործարանը նախապատրաստում է C—193 խառատային ճշգրիտ հաստոցի արտադրությունը և այն կսկսի թողարկել այս տարվա III եռամսյակից։

Ռեսպուբլիկայում բացակայում է կռելի չուգունից պատրաստվող դետալների արտադրությունը։ Մինչև այս տարի Երևանի մեխանիկական գործարանը ձուլում և մշակում էր մի քանի տասնյակ տոննա կռելի չուգուն։ Նկատի ունենալով կցաշուրթային արմատուրայի արտադրության պլանի խիստ մեծացումը, նշված գործարանում մոնտաժվում են ձուլման կոնվեյեր և բարձր արտադրողականության էլեկտրավառարաններ չուգունի մարմանդաեռի համար։ Դա կապահովի ավելի քան 3 հազ. տոննա կռելի չուգունի արտադրությունը։

Չնայած արտադրական տարածությունների շատ նեղ պայմաններին, մեծ եռանդով է աշխատում Կիրովականի մեքենաշինական գործարանի կոլեկտիվը, որը պետական հանձնաժողովին հանձնելու համար նախապատրաս-

տել է 250 լիտր տարողությամբ կերակրի եփման գազային բարդ կաթսայի առաջին նմուշը։

Ներկայումս Մեքենաշինության և հաստոցաշինության վարչությանը կից կազմակերպված ՀԿՏԲ-ն մշակում է հաստոցների-ավտոմատների նոր մոդելներ։

Զգալի նվաճում է ծրագրային կառավարում ունեցող հաստոցի ստեղծումը, որի մշակմանը, բացի ՀԿՏԲ-ի մասնագետներից, մասնակից կդարձվեն նաև Մաթեմատիկական մեքենաների ինստիտուտի աշխատողները։

ՀԿՏԲ-ի կոնստրուկտորները օգնություն են ցույց տալիս նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերին։ Ավարտվել է ծխախոտաշարման մեքենայի նախագիծը՝ գյուտարար Ջատիկյանի առաջարկությամբ։ Ի տարբերություն գոյություն ունեցող կոնստրուկցիաների, նոր մեքենան կատարում է ծխախոտի տերևների մեքենայացված մատուցումը։ Գյուղատնտեսության մեջ նրա կիրառումը խիստ կթեթևացնի ծխախոտի տերևի շարման ձեռքի աշխատատար պրոցեսը և 3—5 անգամ կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը։ Մեքենան պատրաստվելու է Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում։

Մեր ռեսպուբլիկայի կոշկագործները կստանան նոր մեքենա՝ ներբանին սոսինձ քսելու ավտոմատ, որի կիրառումից հետո բանվորների ձեռքի աշխատանքը կմեքենայացվի, իսկ արտադրողականությունը խիստ կբարձրանա։

Յոթնամյա պլանով նախատեսվում է 1965 թ. թողարկել 7 անգամ ավելի հաստոցներ, քան 1958 թ.։ Բացի սովորական հաստոցներից թողարկվելու են մի քանի հատուկ ու մասնագիտացված հաստոցներ։ Դրված կարևոր խնդրի լուծման գործում ՀԿՏԲ-ին օգնելու համար հասունացած պետք է համարել Մեքենաշինության և հաստոցաշինության վարչությանը կից գիտահետազոտական ինստիտուտի կազմակերպումը, ինչպես նաև հաստոցաշինական գործարաններում գոյություն ունեցող կոնստրուկտորա-տեխնոլոգիական բաժինների ընդարձակումը և նրանց կոմպլեկտավորումը որակյալ մասնագետներով։

Մեծ պահանջներ են ներկայացվում մեր տեխնիկական ուսումնական հաստատություններին՝ բարձր որակյալ ինժեներա-տեխնիկական կադրեր նախապատրաստելու համար։ Յոթնամյակում միայն Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության գծով կպահանջվեն լրացուցիչ մոտ 1000 ինժեներներ, տեխնոլոգներ ու կոնստրուկտորներ։

Այժմ գործարանների բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողներն ու ծառայողները սոցիալիստական մրցություն են ծավալել ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումներն անշեղորեն կենսագործելու, արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու և նոր տեխնիկան ու առաջավոր տեխնոլոգիան արմատավորելու համար։

Վ. ԽՈՒԲԼԱՐՅԱՆ

Հայկ. ՍՍՌ Ժողտնտխորհի Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության գլխավոր ինժեներ

---



# ԱՌԱՋԱՎՈՐ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ

## Զ. ՍՈՒԼԹԱՆՈՎ

Կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությունը քաղաքական ու տնտեսական խոշոր խնդիրներ է լուծում։ Այն կոլտնտեսականներին և գյուղական աշխատավոր ինտելիգենցիային կապում է պարտիայի ղեկավար օրգանների հետ։

Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը լիակատար պատասխանատվություն է կրում պարտիայի ու կառավարության՝ գյուղատնտեսությանը վերաբերող դիրեկտիվների հաջող իրականացման, իր ղեկավարած կոլտնտեսության քաղաքական ու տնտեսական վիճակի համար։

Կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը գյուղում ուժեղացնելու միջոցով կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությունը ձգտում է ապահովել պլանային առաջադրանքների կատարումը, բարձրացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը մասսայական-քաղաքական լայն աշխատանք է ծավալում գյուղում, պայքարում է կոլտնտեսային արտադրության ամեն մի աշխատավորի կոմունիստական գիտակցականության, քաղաքական ու աշխատանքային ակտիվության բարձրացման համար, սոցիալիստական մրցություն է ծավալում կոլտնտեսականների մեջ, տարածում գյուղատնտեսական արտադրության նոր ու առաջավոր փորձը։ Պարտիական կազմակերպությունը սիստեմատիկաբար հոգ է տանում պարտիայի շարքերի որակական բարելավման ու կազմակերպական ամրապնդման համար, բոլոր հնարավոր միջոցները ձեռք է առնում կոմունիստների քաղաքական գիտելիքները բարձրացնելու, նրանց մարքսիզմ-լենինիզմի ռևոլյուցիոն թեորիայով զինելու համար, կազմակերպության բոլոր անդամներին դաստիարակում է պարտիական սկզբունքայնության և աշխատանքում եղած թերությունների նկատմամբ անհաշտության ոգով։

Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը ունի վարչության գործունեությանը հսկելու իրավունք, հետևում է, որ ճշտությամբ պահպանվի ներկոլտնտեսային դեմոկրատիան ու գյուղատնտեսական արտելի Կանոնադրությունը և ապահովում է հանրային բարիքի անձեռնմխելիությունը։

Բազմաթիվ պարտիական կազմակերպությունների հարուստ փորձը ցույց է տալիս, որ գործերի վիճակը շատ ավելի լավ է այն կոլտնտեսություններում, որտեղ պարտիական-կազմակերպական ու պարտիական-քաղաքական աշխա-

տանքը դրված է պատշաճ բարձրության վրա և պարտիական կազմակերպությունը հմտորեն է կատարում իր պարտականությունը։

Ահա, օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատ գյուղի Սերգո Օրջոնիկիձեի անվան կոլտնտեսությունը. այն առաջավոր է ո՛չ միայն շրջանում, այլև մեր ամբողջ ռեսպուբլիկայում։ Այդ կոլտնտեսությունն զբաղվում է բամբակագործությամբ, այգեգործությամբ, պտղաբուծությամբ, անասնաբուծությամբ։ Կոլտնտեսությունն ամրապնդվել է ինչպես կազմակերպական, այնպես էլ տնտեսական տեսակետից։ Աճել է նրա նյութա-տեխնիկական բազան։ Բավական է ասել, որ կոլտնտեսությունն ունի տարբեր մարկաների 16 տրակտոր, 13 ավտոմեքենա, 4 կոմբայն, ամեն տարի գերակատարում է դրամական եկամտի և անբաժանելի ֆոնդի հատկացումների պլանները։ 1959 թվականին կոլտնտեսության անբաժանելի ֆոնդը կազմում էր 10.588 հազ. ռուբլի. 1957 թվականի համեմատությամբ այն աճել է 1.832 հազար ռուբլով։ Վերջին տարիներս կոլտնտեսությունը արտադրական ամբողջ աշխատանքը և կուլտուր կենցաղային միջոցառումները կատարում է գլխավորապես իր սեփական միջոցներով, առանց պետական ֆինանսական մարմինների օգնության։

Կոլտնտեսությունն իրեն ապահովել է բոլոր անհրաժեշտ արտադրական օբյեկտներով՝ տիպային անասնապահական շենքերով, պահեստային շենքերով, լայն աշխատանք է ծավալել կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության ուղղությամբ, պլանավորվել է գյուղի բարեկարգման գործը։ Կառուցվել ու կահավորվել են՝ վարչության շենքը, 625-տեղանոց դահլիճով ակումբը, միջնակարգ դպրոցի, ստացիոնար ու սեզոնային մանկապարտեզների, մանկամսուրների շենքերը, կառուցվում են՝ կաթի խոհանոց, բաղնիք, ասֆալտապատվում է 5 կիլոմետր երկարությամբ ճանապարհ, էլեկտրիֆիկացված են բոլոր տները, արտադրական ու կուլտուր-կենցաղային օբյեկտները և այլն։

Ո՞րն է Բամբակաշատի կոլտնտեսության արտադրական հաջողության և կազմակերպական-տնտեսական ամրապնդման գաղտնիքը։ Այն, որ կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը լավ է ղեկավարում կոլտնտեսային արտադրությունը, խելացի ու կոնկրետ կերպով է զբաղվում գյուղատնտեսության բոլոր հարցերով. ամենից առաջ հոգ է տանում, որ կոլտնտեսության ղեկավարությունը միշտ վստահելի ու հմուտ ձեռքերում լինի։

Կոլտնտեսության վարչության նախագահ Խ. Ստեփանյանը և պարտիական կազմակերպության քարտուղար Ս. Ալեքսանյանը կոլտնտեսություն են եկել 1955 թվականին, Հայաստանի ԿՊ Կենտկոմին կից պարտիական եռամյա դպրոցն ավարտելուց հետո։ Հինգ տարուց ավելի է, ինչ նրանք ձեռք-ձեռքի տված գլխավորում են տնտեսությունը։ Գյուղսովետի գործկոմի նախագահ Պ. Գրիգորյանը կյանքի մեծ փորձ ունեցող մարդ է։

Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը մեծ նշանակություն է տալիս նաև բրիգադների, ֆերմաների վարիչների և կոլտնտեսության մյուս ղեկավար կադրերի ընտրությանը, տեղաբաշխմանը և դաստիարակությանը։ Ամենագլխավորն այն է, որ արտադրական բոլոր օբյեկտները ղեկավարում են այնպիսի մարդիկ, որոնք հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության բարձր զգացում ունեն և միշտ սրտանց հոգ են տանում հանրային տնտեսության մասին, որպես կոլտնտեսային արտադրության իսկական հրամանատարներ։ Սոցիալիստական աշխատանքի հերոս, ՍՄԿՊ անդամ Ռ. Մա-



նուկյանը 1938 թվականից աշխատում է որպես բրիգադավար. 1959 թվականին նրա բրիգադան ամենաբարձր բերքն ստացավ. ՍՄԿՊ անդամ Ն. Ենգիբարյանի բրիգադան 1959 թվականին հեկտարից 126 ցենտներ խաղող ստացավ և այլն։

Կարելի է ասել, որ այս պարտիական կազմակերպության բոլոր անդամները (50 հոգի) ակտիվորեն մասնակցում են աշխատանքներին։ Նրանցից 40-ը անմիջականորեն կապված են կոլտնտեսային արտադրության հետ։ ՍՄԿՊ անդամ, շարքային կոլտնտեսականներ Հ. Սահակյանը, Պ. Կնյազյանը, Վ. Պետրոսյանը, Ա. Սիմոնյանը, Ա. Սարգսյանը 1959 թվականին 368—521 աշխօր են վաստակել։ Կոլտնտեսության բոլոր աշխատունակ մարդկանց մոտ 20 տոկոսը կոմերիտականներ են։ Կոմերիտականների մեծ մասը արտադրության առաջավորներ են։

Կոլտնտեսության պարտիական կազմակերպության աշխատանքի նշանաբանն է՝ «Արտադրել ավելի շատ և ավելի էժան»։ Ողջ կազմակերպությունը և ամեն մի կոմունիստ առանձին-առանձին, ջանք չեն խնայում իրենց պարտավորությունները ժամկետից շուտ և որակով կատարելու համար. լայնորեն օգտագործվում են ներպարտիական աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները, կատարվում է ինչպես ռեսպուբլիկայի, այնպես էլ երկրի առաջավոր կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունների փորձի փոխանակում։ Շատ բան է կախված նաև պարտիական աշխատանքի պլանավորումից։ Պարտիական բյուրոն կատարում է պարտիական հանձնարարությունների, կոմունիստների քննադատական դիտողությունների խիստ հաշվառում և հետևում դրանց կատարմանը։

Այստեղ, սովորաբար, ինչպես բյուրոյի նիստերը, այնպես էլ կոմունիստների ընդհանուր ժողովները նախապատրաստվում են խնամքով և մեծ մասամբ անց են կացվում կազմակերպական բարձր մակարդակով։ Պարտիական ժողովներ նախապատրաստելիս պարտկազմակերպության բյուրոն խնամքով որոշում է օրակարգը, ընդ որում աշխատում է ընտրել ամենահրատապ, կոմունիստներին հուզող հարցեր. հարցերը նախապատրաստելուն մասնակցում են բյուրոյի անդամները, ակտիվիստները և անհրաժեշտության դեպքում՝ գյուղատնտեսության մասնագետներ, բժիշկներ, ուսուցիչներ և ուրիշներ։ Օրինակ, գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման հարցը, որը օրվա հրատապ հարց է, մշտապես գտնվում է կոլտնտեսության պարտիական կազմակերպության ու վարչության ուշադրության կենտրոնում։ Կոլտնտեսության ղեկավարությունը պարզ ու որոշ պատկերացնում է, որ այդ հարցը կարելի է լուծել միայն աշխատանքի ճիշտ կազմակերպման ու վարձատրման միջոցով, աշխատանքի կարգապահության ու աշխատանքի արտադրողականության, բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու անասնաբուծության մթերատվության բարձրացման և արտադրական ծախսերի կրճատման միջոցով։ Դեռ անցյալ տարի պարտիական կազմակերպության ձեռք առած միջոցները տվին իրենց դրական արդյունքը։ Թեպետ կոլտնտեսության արտադրած հիմնական գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը դեռ բարձր է, բայց զգալիորեն ցածր է շրջանային միջին ցուցանիշներից։ Այսպես, օրինակ, անցյալ տարի բամբակի հումքի մեկ ցենտների ինքնարժեքը այստեղ 14 տոկոսով ցածր էր շրջանի կոլտնտեսությունների միջինից, բան-

ջարեղենի ինքնարժեքը ցածր էր 28, կաթինը՝ 10, մսինը՝ ավելի քան 50, ձվինը՝ 14 տոկոսով և այլն։

Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը հետևում է, որ արտադրության մեջ ներդրվի գյուղատնտեսության առաջավոր փորձը և ապահովվի ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումը։ Նախատեսված է ընթացիկ տարում մսի արտադրությունը ավելացնել ավելի քան 56, կաթինը՝ 33 տոկոսով, ձվինը՝ ավելի քան վեց անգամ։ Նախատեսվում է նաև ավելացնել բամբակի հումքի, խաղողի, բանջարեղենի և գյուղատնտեսական այլ մթերքների արտադրությունը։

Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը դեռ ընթացիկ տարվա սկզբից ձեռնամուխ եղավ ստանձնած պարտավորությունների կատարմանը։ Մշակված է միջոցառումների կոնկրետ պլան, որոնց մի մասն արդեն իրականացվում է։ Ուսումնասիրվում և մասսայականացվում է առաջավոր կոլտնտեսությունների, կթվորների, խաղողագործների, մեխանիզատորների և կոլտնտեսային արտադրության այլ առաջավորների աշխատանքի փորձը։

Էջմիածնի շրջանի Աղավնատուն գյուղի կոլտնտեսության թռչնաբուծների, Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության խոզաբույծների առաջավոր փորձը արդեն դարձել է կոլտնտեսության սեփականությունը։ Առաջավորների օրինակով անհրաժեշտ պայմաններ են ստեղծվել թռչնաբուծության ու խոզաբուծության զարգացման համար։ Անցյալ տարվա նույն ժամանակի համեմատությամբ կոլտնտեսությունում խոզերի գլխաքանակն ավելացել է 33 տոկոսով, իսկ ձվի արտադրությունը՝ ավելի քան 12 անգամ։ Տարածվում է կոլտնտեսության առաջավոր կթվորուհիներ Ս. Գրիգորյանի, Պ. Վարդանյանի, Զ. Սլոյանի աշխատանքի փորձը. նրանք անցյալ տարի յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել են 2800-ից 3200 կիլոգրամ կաթ։

Պարտիական կազմակերպության ագիտ-կոլեկտիվը գործում է մշտապես։ Նա իր ամբողջ աշխատանքը կապում է կոլտնտեսության գործունեության հետ։ Հատկապես աչքի են ընկնում ագիտատորներ՝ Ա. Կիրակոսյանը, Տ. Ավետիսյանը, Ս. Մկրտչյանը և ուրիշներ։ Ագիտատորների հետ պարբերաբար աշխատանք է կատարվում, նրանց ուշադրությունն ուղղվում է գլխավոր հարցերի և հրատապ խնդիրների լուծման վրա։

Ամփոփվել է պարտիական կազմակերպության այս տարվա առաջին եռամսյակի աշխատանքը։ Անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ կոլտնտեսությունում կաթի արտադրությունը բարձրացել է ավելի քան 13, մսինը՝ 60 տոկոսով, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 149-ով, այդ թվում կովերինը՝ 47 գլխով, կամ աճել է 33 տոկոսով։ Նախնական ցուցանիշները վկայում են, որ կոլտնտեսության պարտկազմակերպությունը հաջողությամբ ապահովում է 1960 թվականի համար ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումը։

Պարտիական կազմակերպությունը միաժամանակ հոգ է տանում աշխատավորների կոմունիստական դաստիարակության, ինչպես և բնակչության կուլտուր-կենցաղային պահանջների բավարարման մասին։ Սիստեմատիկաբար դասախոսություններ ու զեկուցումներ են կարդացվում քաղաքական ու գիտա-մասսայական թեմաներով։ Գործում է ստացիոնար կինո-թատրոնը։ Գյուղում կան ավելի քան 50 հեռուստացույց, 200 ռադիոընդունիչ։ Պարբերաբար գործում է դրամատիկական խմբակը, որի մեջ ընդգրկված են ավելի քան



25 պատանիներ ու աղջիկներ և նույնիսկ հասակավոր կոլտնտեսականներ։

Պարտիական կազմակերպությունում լուրջ ուշադրություն է հատկացվում կոմունիստների գաղափարական դաստիարակությանը։ Կոմունիստների մի մասը մարքսիզմ-լենինիզմի ռևոլյուցիոն թեորիան ուսումնասիրում է ինքնուրույն, իսկ մի մասն էլ խմբակներում։

Կոլտնտեսային երիտասարդությունը մեծ հետաքրքրություն է ցուցաբերում դեպի սպորտային խաղերը։ Պարբերաբար գործում են ֆուտբոլի, բասկետբոլի, վոլեյբոլի ու թենիսի թիմերը, բոնցքամարտիկներից երեքը՝ տրակտորիստներ Ս. Սահակյանը, Ս. Խաչատրյանը և շարքային կոլտնտեսական Մ. Մամիկոնյանը ռեսպուբլիկայի չեմպիոններ են։ Հաճախ կոլտնտեսային ակումբում շախմատի և շաշկիի մրցություններ են տեղի ունենում։

Պարտիական կազմակերպությունն իր տեսադաշտից դուրս չի թողնում նաև գյուղսովետի գործունեությունը։ Գյուղսովետը բարեխղճորեն հետևում է բնակչության կուլտուրական ու բժշկական սպասարկմանը, գյուղի ու բնակելի կետերի սանիտարական վիճակին ու բարեկարգմանը, սոցիալիստական օրինականության պահպանմանը և այլն։ Հենց դրա համար էլ 1959 թվականին գյուղսովետների ռեսպուբլիկական սոցիալիստական մրցության մեջ նա հաղթող դուրս եկավ և արժանացավ առաջին կարգի մրցանակի և Հայաստանի Մինիստրների Սովետի ու ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշին։

Գյուղում կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը հմտորեն կազմակերպելը բարձրացնում է տնտեսության պարտիական ղեկավարության մակարդակը, ամրապնդում է սկզբնական պարտիական կազմակերպությունը և բարձրացնում նրա մարտունակությունը։

# ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՌԱՍՆԱՄՅԱԿԸ

## ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

# ՋԵՐՄ, ՄՐՏԱԿԻՑ ՄԱՐԴԸ



Վոլգա... Ինչե՜ր-ինչե՜ր չեն տեղի ունեցել այս գետի ափերին և ի՜նչ դեպքերի ասես ականատես չեն եղել նրա ջրերը, որ մերթ հուզվում են, մերթ հանդարտվում, մերթ մթագնում են, մերթ դառնում վճիտ ու պարզ:

Հենց Վոլգայի գետաբերանին էլ կանգնած է Աստրախանը: Մեծ չէր այն ժամանակ այս քաղաքը, բայց հինավուրց էր: Այստեղից նավեր են դուրս եկել դեպի հեռուները, նավեր են եկել այստեղ, բերել մարդկանց, ու քաղաքը նրանց առել է իր գիրկը:

Ամեն առավոտ վաղ քաղաքն արթնանում էր աղմուկով և նրա եռուզեռը երկար ժամանակ չէր դադարում, մինչև չէր իջնում երեկոն: Իսկ երբ երեկո էր դառնում, քաղաքը լռում էր միանգամից: Դատարկվում էին բանուկ փողոցները, մութը գնալով խտանում էր, շրջապատում ամեն ինչ թաղվում էր խավարի մեջ, հատկապես ձմռանը, երբ սկսվում էին փետրվարյան ցուրտ, երկարատև գիշերները: Շատ տներում լույս չէր վառվում, և մութ պատուհանները նմանվում էին կույր աչքերի: Միայն հեռվում հատ ու կենտ լույսեր էին կայծկլտում և ապա հանգչում: Լսվում էին նաև կրակոցի ձայներ: Հանգչում էին վերջին աղոտ լույսերը, և քաղաքը ընկղմվում էր խոր խավարի մեջ:

Նեղ ու խուլ փողոցի ծայրում կանգնած էր երկհարկանի մի շենք, որի լույսը վառվում էր դեռ վաղ երեկոյից սկսած ու չէր հանգչում ամբողջ գիշեր: Փոքրիկ մի շենք էր դա, երկհարկանի մի շենք, որի պատերը աղյուսից էին, կտուրը՝ կարմիր թիթեղից: Այսպիսի շենքեր շատ կային առևտրական այս քաղաքում, բայց այս տունը թանկ էր, հարապատ նավերի նորոգման գործարանի բանվորների, ձկնորսների, նավաստիների, բեռնակիրների համար: Ինչ-որ բան նրանց կապում էր այդ շենքի հետ, որի լույսը չէր հանգչում, վառվում էր փարոսի նման և մութ ծով դուրս եկած նավերին ցանկալի ափ հասցընում: Նրանք, այդ շարքային մարդիկ գիտեին, որ այդ ուշ ժամերին առօրյա հոգսերից հետո նստած աշխատում է իրենց բարեկամը, այն մարդը, որ հենց այսօր առավոտյան սեղմեց բեռնակիր Իվան Զուգունովի ձեռքը, որը միտինգում կրակոտ ճառ ասաց:

— Հը՞, ինչպե՞ս եք, Իվան Սերգեյիչ,— հարցրեց նա բեռնակիր բանվորին, կկոցելով աչքերը, բարի ժպիտը խաղացնելով դեմքին:

— Լավ եմ, Սերգեյ Միրոնովիչ, վատ չենք հիմա, արդեն հուփ ենք տալիս...

— Այ, դա լավ է, ուրիշ ի՞նչ կա,— շարունակում է խոսքը առաջ տանել Սերգեյ Միրոնովիչը:

— Ուրի՞շ, է, ի՞նչ ասեմ, դուք բոլորովին չեք քնում, դա մեկ, բանվորներիս շատ է անհանգստացնում:

— Իսկ որտեղի՞ց գիտես Իվան,— ծիծաղելով վրա է բերում Կիրովը:

— Որտեղի՞ց, լույսի՜ց:

— Ի՞նչ լույս:



— Ձեր սենյակի լույսը. ողջ գիշեր վառվում է:

— Ոչինչ, Իվան, սիրելիս, շուտով կհանգստանանք, թող մի Աստրախանը լրիվ մաքրվի կոնտրռևոլյուցիոներներից:

Բայց Կիրովը միայն Իվան Զուգունովի հետ չէր այդպես մտերմիկ զրուցում, ձեռքն այդպես ջերմորեն սեղմում... հապա մյուսնե՞րը. նրանք շատ են, հարյուրներ են, հազարներ:

Եվ ահա այսօր էլ, Կիրովը նստած իր փոքրիկ հնամաշ սեղանի մոտ, ինչ-որ բան էր գրում: Այդ օրերին ավելի քան լարված էր նա: Ուժասպառ եղած զինվորների հանգիստը կազմակերպելու, նրանց ֆիզիկական և բարոյական ուժերը վերականգնելու հոգսերը շատ էին զբաղեցնում նրան: Կիրովը երկար աշխատանքից հետո ինչ-որ ծանրություն է զգում կոպերին: Ցած է դնում գրիչը: Ուղղվում է տեղում, լայն ափով շոյում է ճակատը ու կարծես մի բան հիշելով կնճռոտում դեմքը: Կարծես թե մռայլություն է իջնում նրա՝ առանց այն էլ հոգնած, բայց խելացի աչքերին... Եվ ահա, նա հիշում է, թե ինչպիսի մարտիկներ զոհվեցին XI բանակից չվերթի ժամանակ, երբ նրանք Հյուսիսային Կովկասից Աստրախան էին գալիս. նրանք հարյուրներ էին: Բանակի ամենամարտունակ զինվորներից շատերին հնձել էր տիֆը:

Երկար ժամանակ գլուխն ափերի մեջ առած, տարվել էր իր հուշերով: Դա նրան կարող էր տանել ավելի հեռուն, բայց այսօր հարկավոր էր վերականգնել կորցրած ուժերը, ստեղծել նոր, հզոր մի բանակ՝ Հյուսիսային Կովկասը մաքրելու դենիկինցիներից: Բայց միայն դրանով չէր կարող սահմանափակվել հեռուները տեսնող, գալիք օրերի շունչն զգացող մարդը, որը պետք է ինչ գնով էլ լինի ռևոլյուցիոն կարգ ու կանոն հաստատեր քաղաքում, Աստրախանը դարձներ մի ամուր հենակետ և թույլ չտար, որ Կոլչակն ու Դենիկինը միավորեն իրենց սև ուժերը: Իսկ կա՞պը Անդրկովկասի հետ, բաքվեցիների՞ հետ, այս ամենը հարկավոր է կազմակերպել ու ղեկավարել:

Վառարանում ճարճատում էր փայտը: Կրակի ջերմությունն այնպես դուրեկան է լուսադեմին, մանավանդ, երբ մարդ հոգնած է լինում: Կիրովը վեր կենալով աթոռից՝ մի քանի քայլ արեց փոքրիկ սենյակում, կարծես չափելով նրա լայնքն ու երկայնքը, մոտեցավ տաք վառարանին և ինքն էլ չզգաց, թե ինչպես ձեռքերը պարզվեցին դեպի վառարանը: Եվ ապա նորից ինչ-որ մի բան հիշելով, մոտեցավ սեղանին: Սկսեց գրել: Լռության մեջ լսվում է միայն գրչածայրի աղմուկը ու մեկ էլ վառվող թաց փայտի խշշոցը: Գրում է Կիրովը: «...Քանի դեռ Աստրախանի երկրամասում կա թեկուզ և մեկ կոմունիստ, Վոլգա գետի գետաբերանը եղել է և կլինի սովետական»:

Վերջակետ դնելով՝ նա դանդաղ բարձրանում է տեղից, մոտենում վառարանի մոտ դրված փոքրիկ թախտին և հենց այդպես էլ՝ հագուստով, թեք ընկնում հանգստանալու: Նա չէր ուզում քնել: Նորից ինչ-որ մտքեր եկան խուժեցին նրա գլուխը: Հիշեց շատ դեպքեր իր կյանքից: Հիշեց Պետյային, որի հետ ինքը առաջին թռուցիկը գրեց: Ահա նա գնում է ուսանող Կոնոնովի դագաղի հետևից և կարդում «Իբրև սպանված ընկերոջ պսակ» թռուցիկը, իր սեփական ձեռքով գրված թռուցիկը, որ Լենինը տպագրեց «Վպերյոդ» թերթում, սգո շրջանակի մեջ:

Զինված ցույցեր... Տոմսկ, ընկերներ: Սոցիալ-դեմոկրատական կոմիտեի որոշումը, լիբերալների բանկետի խափանումը, ցույց, նորից ցույց, ահա կոզակի թրի հարվածից պատռված իր վերարկուն... Այո՜, շատ բան կար հիշելու... Դրսում ինչ-որ ոտնաձայն լսվեց: Մարդիկ արդեն արթնացել են: Քայլողը շտաբի պահակապետն էր, որ առավոտ վաղ ստուգումներից էր վերադառնում: Կիրովը ուզեց կանչել նրան, խաժաչ այդ երիտասարդին, հարցուփործ անել Սավկային, կամ ինչպես ինքն էր ասում Սավին, խոսել, բայց աչքերն արդեն փակվում էին:

Նա քնեց:

***

Երբ ես գրում եմ այս տողերը մեր ամենասիրելի Կիրովի մասին, շարունակ իմ աչքի առջև է մի թանկագին նկար, հավվագյուտ ու հարազատ: Կիրովը Բաքվի նավթագործ բանվորների հետ է: Ահա նա կանգնած է ժելոնկայի մոտ, դա մի դույլ է, որ թոկով իջեցվում է նավթի հորը և նավթ հանվում: Ի՜նչ տաժանակիր աշխատանք... Եվ ահա Կիրովի գորովալից աչքերը նորից կկոցվում են. ճիշտ է, նա ժպտում է, բայց այդ ժպիտի մեջ ինչ-որ հոգս կա, խիստ մտահոգող մի բան՝ ինչո՞վ կարելի է փոխարինել ժելոնկան՝ ստրկական աշխատանքի այդ առարկան, որ վաղուց արդեն իր դարն ապրել է:

— Սերգեյ Միրոնովիչ, վերցրե՛ք հեռախոսափողը,— բացելով Ադրբեջանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմի քարտուղարի առանձնասենյակի դուռը՝ ասում է քարտուղարուհին:

Նինա. այդպես էր նրա անունը, որին այնպես լավ ճանաչում էր Կիրովը: Դեռ այն ժամանակ, երբ Նինան XI բանակի հեռախոսավարուհիներից էր, շատ հաճախ էր հանդիպում Կիրովին՝ Ռազմա-ռևոլյուցիոն խորհրդի նախագահին: Ժպտում էր Նինան, և նրա ժպիտը երկար ժամանակ մնում էր մարդու հիշողության մեջ. հապա նրա այտերի փոսիկնե՞րը, նրա երգեցիկ ձա՜յնը: Քանի՜, քանի՜ անգամ նույն ժպիտով ու նույն երգեցիկ ձայնով նա դիմել է Կիրովին:

— Ընկեր Օրջոնիկիձեն ձեզ է խնդրում, վերցրեք հեռախոսափողը:

Այսօր էլ ահա նորից նույն ձայնը, նորից Նինան ասում է.

— Ընկե՛ր Կիրով, վերցրե՛ք հեռախոսափողը:

Զանգահարում են Բիբի Հեյբաթից: Նա լսում է լարված, և կարծես նրա դեմքի վրա կնճիռներ են առաջանում:

— Ո՛չ,— կտրուկ պատասխանում է նա,— պետք է շարունակել աշխատանքը, պետք է լցնել խորշը, ոչ մի հապաղում: Ովքե՞ր: Ոչինչ: Ես անձամբ կանգնեմ:

Նա վայրույթով կախում է հեռախոսափողը: Տեսնո՞ւմ ես, չեն հավատում մեր ուժերին, ո՛չ, ինչ գնով ուզում է լինի պետք է վերականգնել նավթահանքերը, նորերը փորել, պետք է համոզել թերահավատներին, որ սխալվում են, մենք կարճ ժամանակում կունենանք նավթային հզոր բազա:

Վերցնելով կեպկան, նա արագ դուրս եկավ առանձնասենյակից: Քիչ հետո նա արդեն Բիբի Հեյբաթումն էր:

Քամի բարձրացավ. Կասպիականի ջրերն սկսեցին ալեկոծվել, շոգը, որ սկսվել էր վաղ առավոտից, մեղմացավ, փոշին, որ բերում էր քամին, խառնվում էր ծովափնյա ավազներին:

Ծովախորշի հենց մուտքի մոտ նրան հանդիպեց նավթագործ Յուսուֆը:

— Յուսո՞ւֆ,— ձեռքը դեպի նա երկարելով՝ բարձրաձայն ասաց Կիրովը,— այդ ինչպե՞ս եղավ, որ նորից հանդիպեցինք, լավ է:

Յուսուֆը ժպտում է. նրա սև աչքերը ածուխների պես վառվում էին բների մեջ:

— Իսկ որտե՞ղ է Խաչատուրը,— հարցնում է Կիրովը:

— Նավթաթորների մոտ:

Հավաքվեցին ուրիշ բանվորներ էլ: Նրանցից շատերը զարմանքով էին նայում Կիրովին և Յուսուֆին: Այդ որտեղի՞ց է իրենց աշխատանքային ընկերը ճանաչում նրան, Բաքվի կոմունիստների ղեկավարին: Նրանք ի՛նչ իմանային, որ և՛ Յուսուֆը, և՛ Խաչատուրը եղել են XI բանակի նախկին շարքային զինվորներ, որոնց լավ էր ճանաչում Սերգեյ Միրոնովիչը, որոնց հետ եկավ օգնելու Ադրբեջանում սովետական կարգերի հաստատմանը:

— Կգա՛ս, անպայմա՛ն կգաս, զանգահարիր Նինային, դու նրան ճանաչում ես, Խաչատուրին էլ քեզ հետ բեր,— ասաց Կիրովը և թողնելով Յուսուֆին՝ ինքը ուղղվեց լիցք կատարող բանվորների կողմը:

Աշխատանքի ընդմիջման ժամանակ տեղի ունեցավ սրտագին զրույց: Կիրովը, որ ոչ մի ջանք չէր խնայում վերականգնելու նավթային արդյունաբերությունը, բացատրում էր բանվորներին, որ ժելոնկան պետք է փոխարինվի նոր օդամղիչով, դանդաղընթաց կարկերի հորատումը, որ մենք ժառանգել ենք կապիտալիստներից, պետք է իր տեղը զիջի պտուտակային հորատմանը:

— Այդ ինչպե՞ս, ընկեր Կիրով, մեր պայմաններում պտուտակային հորատումը անհնար է: Գործիքները չեն դիմանա, մեր հողային շերտերը այլ հատկություններ ունեն:

Այդպես էին ասում նրանք, ովքեր կարծում էին, թե ժելոնկայի դուրս մղումով կարող են իրենք զրկվել աշխատանքից: Կիրովը բացատրում էր, հասկացնում, թե որքան տեխնիկան առաջադիմի, այնքան հեշտ կլինի բանվորի աշխատանքը, որ տեխնիկայի նորամուծությունը հսկայական նշանակություն և շահավետություն կունենա իրենց իսկ բանվորների համար:

Զուր չանցան Սերգեյ Միրոնովիչի ջանքերը: 1922 թվականի գարնանը Կիրովի անմիջական ղեկավարությամբ ու նրա մշակած պլանով շարք մտան սովետական առաջին նավթահանքերը: Բանվորների պահանջով հանքերից մեկը կոչվեց Կիրովի անունով:

Եվ այսպես, անցնում էին տարիները: Փոթորիկներ տեսած քաղաքը աշխատանքային եռուզեռ էր ապրում: Մեկը մյուսի հետևից բարձրանում էին նավթի աշտարակները: Կասպիական ափին աշտարակների անտառն էր: Ծովի ջրերը կարծես սարսուռով էին նայում այդ աշտարակներին, զգալով, որ կգա մի օր, այդ աշտարակները ծովը կխուժեն, և ծովը կդառնա նավթագործների մի նոր քաղաք, մի նոր Բաքու:

***

Այդ օրը սովորականից ավելի հանգիստ էր Սերգեյ Միրոնովիչը: Սպասում էր մեկին, իսկ նա ուշանում էր:

Տասնմեկերորդ բանակը, որն արդեն ազատագրել էր Հյուսիսային Կովկասը և Ադրբեջանը, կանգնել էր Հայաստանի և Վրաստանի սահմանագլխին օր-օրի սպասում էր հրամանի:

Մայիս էր: Գարուն: Ամենուր կանաչ: Ջրերը հորդել էին: Պարզ երկինքը երբեմն մթագնում էր իր դեմքը: Սև ամպերը անձրև էին գուժում: Հետո անձրև էր գալիս, մաքրվում էր օդը, կանաչն ավելի էր բույր քաշում: Մայիսյան այդ օրերը երկար ժամանակ կմնան Ղազախ—Դիլիջան շրջանի ապստամբների ներկայացուցիչների հիշողության մեջ, որոնք եկել էին XI բանակի շտաբը: Նրանց ընդունել էր բանակի քաղբաժնի պետ Հովսեփ Լալյանը:

— Հարկավոր է ընկեր Կիրովի մոտ լինել,— ասում էր նա ոգևորված,— նա անպայման կօգնի Ձեզ:

Եվ նրանք գնացին:



Սերգեյ Միրոնովիչը ընդունեց ընկերներին, երկար զրուցեց նրանց հետ:

«...Ղազախի հայկական լեռնային մասում,— կարդում է Կիրովը,— դաշնակցական իշխանությունը տապալված է, ու հաստատվել է Սովետական իշխանություն... Այժմ դիմում ենք Կարմիր Բանակին և խնդրում ուղարկել մեզ նյութական օգնություն, ռազմական օգնություն... Խնդրում ենք XI բանակի շտաբին, որ Իջևանում ռևկոմի տրամադրության տակ դնի մասնագետ զինվորականներ՝ ղեկավարելու Ղազախի ապստամբությունը»:

— Ապրե՛ն հայ ընկերները,— դիմումը կարդալուց հետո ասաց Կիրովը,— ընկեր Լալյան, լավ հայրենակիցներ ունեք:

Եվ ահա Կիրովի դաստիարակած XI բանակի մարտիկները եկան օգնելու հայ ապստամբներին: Բանակի հետ միասին Հայաստան եկան ռևոլյուցիոն գործիչները: Երբ արդեն կարմիր հեծյալներն անցել էին Հայաստանի սահմանը, ստացվեց ընկեր Կիրովի նամակը:

«Թանկագի՛ն ընկերներ, XI բանակի խիզախ մարտիկներ. դուք գնում եք օգնելու հայ բանվորին և գյուղացուն, իմացեք հաստատ, որ նրանք մեր եղբայրներն են, և մենք պետք է նրանց ձեռք մեկնենք. դե՛, ուրեմն, կեցցե՛ն մեր բարեկամները»:

Այդ նամակը տպագրվել էր «Կարմիր զինվոր» թերթում, որը ստեղծվել էր հենց Կիրովի ցուցումով, և որի խմբագիրն էր Հովսեփ Լալյանը՝ բանակի քաղբաժնի պետը:

Հայաստանում հաստատվեցին սովետական կարգեր: Այդ ցնծալի օրը XI բանակի հրամանատարությունն ընկեր Կիրովի առաջարկությամբ հետևյալ հեռագիրն ուղարկեց Հայաստանի ռևկոմին. «Ռուսաստանի բանվորական և գյուղացիական Կարմիր Բանակը հպարտությամբ և պրոլետարական բերկրանքի զգացումով ողջունում է Հայաստանի աշխատավոր ժողովրդին դաշնակցական կառավարության դեմ տարած նրա հաղթանակը... Թող ապրի, աճի և ամրանա Սովետական Հայաստանի իշխանությունը...»:

XI բանակի շատ ղեկավարներ, ինչպես Օրջոնիկիձեն, Միկոյանը, իրենց հուշերում պատմում են այն մասին, թե Կիրովն ինչպիսի ջերմությամբ էր խոսում հայ ռազմիկների և Հայաստանի մասին: Իր նամակներից մեկում նա գրում է.

— Սերգեյ Կոնստանտինովիչ, իմ ողջույնները հղիր Հովսեփ Լալյանին և Անահիտ Լալայանին: Ի՛նչ ընկերներ էին նրանք, է՛խ սատանան տանի, այդպիսիների հետ կարելի է անգամ դժոխք գնալ, դու հիմա Հայաստանում ես, գրիր, ինչպե՞ս են իրենց զգում հայ գյուղացիները, քայքայված են, օգնել է հարկավոր:

1925 թվական... Դեկտեմբեր: Պարտիայի XIV համագումար: Տրոցկիստներն ու զինովևականները գրոհում էին պարտիայի, նրա Կենտկոմի դեմ: Համագումարը փոթորկվում է: Ահա ամբիոն է բարձրանում Կիրովը: Զգում ես, որ նա վրդովված է, հուզված: Ձեռքը պարզելով առաջ՝ սկսում է խոսել կրակոտ: Քանի՛, քանի՛ անգամ նա խոսել է այսպես, քանի՛, քանի՛ անգամ նա մերկացրել է նրանց, ովքեր հանդես են եկել լենինյան գծի դեմ: Համագումարը լարված ուշադրությամբ լսում էր Կիրովին. որքա՜ն ծանոթ ու որքա՜ն հարազատ է այդ ձայնը:

— Մենք աճում ենք,— ասում է Կիրովը,— մենք ամրապնդվում ենք, մենք կառուցում ենք սոցիալիզմ, մենք այն կկառուցենք և դրա հետ մեկտեղ հաջող վախճանի կհասցնենք նաև համաշխարհային պրոլետարական ռևոլյուցիան:

Համագումարից հետո Կիրովը կանգնեց Լենինգրադի բոլշևիկների գլուխ: Լենինգրադցիները սիրեցին նրան և նրա այն խոսքերը, որ Լենինգրադ քաղաքն ու Լենինգրադի արդյունաբերությունը երկրի ինդուստրացման գործում պետք է խաղան, մոտավորապես, հենց նույն այն դերը, որպիսին խաղացել են Լենինգրադի պրոլետարները մեր մեծ ռևոլյուցիայի բոլոր էտապներում:

Ե՞րբ էր արդյոք ժամանակ գտնում Կիրովը, որ կարողանում էր ամեն օր լինել մե՛կ մետաղագործական գործարանում, մե՛կ «Բոլշևիկում», մե՛կ Կարլ Մարքսի անվան գործարանում: Նա ամեն օր գրեթե լինում էր «Կրասնի պուտիլովեցում»՝ առավոտ կանուխ կամ ուշ երեկոյան, շրջապատված ինժեներներով և բանվորներով, որոնց հետ մեկտեղ տրակտորային ցեխում ուշիուշով աչքի էր անցկացնում նոր արտադրանքի ամեն մի մասնիկը, պտուտակը:

Կիրով... Դժվարին և ինչպիսի՛ պատասխանատու գործերի հետ ասես չի կապված նրա անունը: Ո՛ր մեկը հիշես, թվարկես: Ահա 1930 թվականը: Կիրովը Թբիլիսիում է: Նա նորից հանդիպում է իր հին բարեկամներին, եկել է հատուկ հանձնարարությամբ: Նրան հավատում են բոլորը: Ահա նա մերկացնում է Լոմինաձեի երկերեսանիությունը:

Կիրով... Նրան սիրել են և՛ հայերը, և՛ ադրբեջանցիները, և՛ ռուսները, վրացիներն ու ուզբեկները, Դաղստանի լեռնցիները, այնտեղ, ուր եղել է Կիրովը, թողել է իր սիրտը, իր բարի գործն ու անունը: Նա անհուն հավատ ուներ դեպի մեր գործի վերջնական հաղթանակը. ի՛նչ լավ է ասել.

— Որքա՜ն գեղեցիկ է կյանքը, միշտ ապրել ես ուզում...

Նա հիմա էլ մեր սրտումն է, մեր հոգում:

Վ. ԱՐԱՄՈՒՆԻ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՀՐՈՎ ԺԱՌՈՒԳԱԾ



Թիֆլիս, լայնալանջ, թավ այտմորուքով Ղազարոս Աղայանը ստանալով ծրարը, անհամբերությամբ բացեց այն, կարդաց: Ժպիտ խաղաց դեմքին. դպրոցի ուսուցչական և աշակերտական կոլեկտիվները հրավիրում են նրան հանդիպում ունենալու իրենց հետ. իհարկե, ուրախալի է: Մի անգամ էլ կարդաց, նայեց տեսչի ստորագրությանը: Վերջում գրված էր. «Նոր Նախիջևան. 1895 ամի...»:

Ու գնաց Ղազարոս Աղայանը... Փոստակառքը առաջ էր ընթանում Կովկասյան լեռնաշղթայի ծերպերով, և Էլբրուսից ու Կազբեկից եկած հովերը խաղում էին նրա թավ մորուքի հետ: Ղազարոս Աղայանը երկրորդ շաբաթվա վերջին արդեն մոտենում էր Նոր Նախիջևանին. մոտենում, իսկ սիրտը տրոփում էր...

Բայց... այս ի՞նչ է, ահա, դեռ դպրոց չհասած, աշակերտական հոծ խմբեր են դուրս եկել նրան դիմավորելու: Ահա մի աշակերտ, հազիվ ինը տարեկան, սկզբից մինչև վերջ արտասանում է «Տորք Անգեղ»-ը:

Շոյում է Աղայանը աշակերտի գլուխը, գովեստի խոսքեր ասում, մայրենի լեզուն այդքան լավ իմանալու համար ճակատը համբուրում, արցունքոտվում հուզմունքից ու կերկերուն ձայնով հարցնում.

— Անունդ ի՞նչ է, տղա՛ս:

— Ալեքսանդր,—հնչում են երեխայի շուրթերը:

— Ալեքսանդր, Ալեքսանդր... ապրես, լավ ես արտասանում, շարունակիր այդպես սովորել, լա:l մարդ կդառնաս...

...Լավ մարդ կդառնաս...

Մեծ գրողի այս խոսքե՞րն էին նրան մղողը, թե՞ ներքին հակումները: Թերևս երկուսն էլ: Այդ պատանին անհոգությամբ կլանում էր Խաչատուր Աբովյանի, Նալբանդյանի, Ռաֆայել Պատկանյանի, Րաֆֆու ստեղծագործությունները: Հիմա էլ մնում է նույն դպրոցի գրադարան-ընթերցարանի վարիչի վաթսունհինգ տարի առաջվա գրառումը՝ «Այդ պատանյակը չափազանց ընթերցասեր է»:

Վրա է հասնում 1896-ը: Արևմտյան Հայաստանում վերսկսվում են հայ աշխատավորների կոտորածները: Լուրերը թափանցում են հայկական սեմինարիայի պատերից ներս ու Ալեքսանդրին ևս ստիպում ծանոթանալու հայ ժողովրդի ազատագրական պայքարի էջերին: Նա խորապես համակվում է մեր ժողովրդի ազատագրության գաղափարներով:

Իսկ երբ տասնութ տարեկան էր, նրան արդեն տեսնում ենք Մոսկվայի Արևելյան լեզուների ինստիտուտում՝ Լազարյան ճեմարանում: Նա մասնակցում է այստեղ գործող մարքսիստական խմբակին, ընդգրկվում ռևոլյուցիոն շարժումների մեջ, անցնում ռևոլյուցիոն պայքարի հրաբորբ դպրոց...

Կյանքի տասնիններորդ գարնանը նա գրել է. «Գտնվում եմ նյութական սուղ դրության մեջ. չեմ կարողանում հայթայթել նույնիսկ օրական անունդս և ուսումնական պիտույքներս»: Այդ նույն գարնանն էլ նա կարդում է Մարքսին, Էնգելսին, Լենինին, Պլեխանովին, գրում է «Կարլ Մարքսի արժեքի թեորիան» ռեֆերատը, որ մի լուրջ ուսումնասիրություն է: Նույն գարնանն էլ ընդունվում է ՌՍԴԲՊ շարքերը, շարունակում ռևոլյուցիոն գործունեությունը:



Բոլորում էր Ալեքսանդր Մյասնիկյանի քսան տարին... Դա 1906 թվականի աշնանային մռայլ օրերից մեկն էր: Ընկերները եկել էին շնորհավորելու նրա ծննդյան տարեդարձը: Ճիշտն ասած, ուզում էին մի քիչ ուրախանալ, ուզում էին մի պահ մոռանալ ստոլիպինյան ռեակցիայի մղձավանջը... Երբ նոր էին սկսել իրենց ուրախության հանդեսը, այդ փոքրիկ սենյակի դուռը բացվեց և «այցի» եկան ժանդարմները: Խափանվեց ամեն ինչ: Խուզարկություն: Աշունն ավելի մռայլվեց: Ալեքսանդրը բանտ նետվեց...

Սակայն բանտից դուրս եկավ հոգով ավելի կայտառ և ամրացած: Նա մերթ Բաքվում էր, մերթ Թբիլիսիում, ռևոլյուցիայի մրրիկի ալիքը նրան նետում էր ամենուր. մասսաների հետ էր նա, կազմակերպում էր նրանց ռևոլյուցիոն շարժումը: «Կլանված եմ գործերով, հոգսերով, ապագայի հեռանկարներով», գրում է մի նամակում:

Ընդհատակյա աշխատանք նավթագործ բանվորների շրջանում, սերտ հարաբերությունների մեջ է մտնում Ստեփան Շահումյանի հետ, ընդգրկվում նրա գլխավորած «Բանվորական տան» մեջ: Նրա «Ութժամյա բանվորական օրվա մասին» դասախոսությունը, ըստ ժամանակակիցների վկայության, օգնի դեր խաղաց գաղջ օդը մաքրելու գործում:

Զգալով նման դասախոսությունների մեծ ազդեցությունը՝ դաշնակները փորձում են արգելակել բոլշևիկների գործունեությունը: Այնինչ մասսաները հակված էին նրանց ունկնդրելու: Չէ՞ որ նրանց խոսքերը նորաբաց ծաղկունքի նման էին բուրում: Դաշնակների կազմակերպած հարձակումները չկարողացան ընկճել ոչ նրան, ոչ էլ նրա գաղափարակիցներին: Դեռ ավելին: Խոտորնակին խոտորնակ էր պետք: Այդ հարձակումները վեր էին ածվում դաշնակներին որպես բանվորների, ժողովրդի թշնամիների դիմակազերծ անելու ցույցերի:

— Ազգային խաբեբանե՛ր,— շպրտում է նրանց հասցեին դասախոս Ալեքսանդր Մյասնիկյանը և արժանանում բանվորների որոտընդոստ ծափահարությանը:

Դաշնակցական մամուլը քստմնելի էր, սկզբից մինչև վերջ լի բարբաջանքներով, զազրախոսությամբ: «Այդ թերթերն ուղղակի չի կարելի կարդալ: Այնտե՛ղ ուղղակի խուլիգանություն է տիրում» խոսքերը հնչեցին երիտասարդ Ալեքսանդրի շուրթերից, որոնք թնդացին ահեղ ռումբի պես և շատ բանվոր-ընթերցողների ետ վանեցին այդ թերթուկներից:

Արդեն այր էր թիկնեղ ու պարթևահասակ, երբ առաջին կարգի դիպլոմով ավարտեց Մոսկվայի համալսարանը և փինվորական պարտադիր ծառայության կանչվեց: Այնտեղ ևս սուզվեց ընդհատակյա ռևոլյուցիոն գործունեության մեջ: Այդ 1911 թվականին էր:

Պրապորշչիկի կոչումով նա կորացրվեց բանակից: Բայց մնաց Մոսկվայում և սկսեց կատարել տեղական բոլշևիկյան կոմիտեի առաջադրանքները: Այդպես, մինչև 1914 թվականի գարունը:

Այդ տարիներին էր, որ երիտասարդ մարքսիստը ռևոլյուցիոն լայն գործունեության հետ առաջ է տանում նաև գրական գործունեությունը: Իր ծննդից քսան տարի առաջ մահացած Միքայել Նալբանդյանի մասին դեռևս մի լուրջ, արժեքավոր ուսումնասիրություն չկար հրապարակի վրա: Իսկ ինքը պատանեկան թոթովանքներն սկսել է՝ արտասանելով նրա «Ազատն աստված»-ը: Թեպետ գլխին «որոտ», «կայծակ» են «փայլատակել», բայց նա ընթացել է այն ճանապարհով, որն ընտրել էր մեծ ռևոլյուցիոն-դեմոկրատը: Դեռ ավելին, նրա այդ ուղին ռևոլյուցիոն նոր մրրիկներով, ռևոլյուցիոն նոր ջահերով է լուսավորվել, ջնջել մշուշն ու մեգը, թողել հստակն ու ջինջը:

Մեր առջև է 1910 թվականին Մոսկվայում հրատարակված նրա «Միքայել Նալբանդյան» գիրքը, որը հագեցված է գրականագիտական համոզիչ, խոր վերլուծություններով: Երիտասարդ մարքսիստի այս աշխատությունը ցրեց քառասունչորս տարի առաջ մահացած Նալբանդյանի շուրջ տարածված մշուշը և երևաց մեծ ռևոլյուցիոն դեմոկրատն իր պայծառ դիմանկարով, որը վեր էր խոյացել՝ խորտակելու «կղերականության, խավարամտության... օբսկուրանտների կիսախարխուլ ամրոցները» («Միքայել Նալբանդյան», էջ 7):

Հրապարակի վրա էր Վլադիմիր Իլյիչի «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում» հանրահայտ աշխատությունը, որի կապակցությամբ ստեղծվեցին կողմ և դեմ երկու բանակ: Հնչեց դեռ երեսունը չբոլորած Ալեքսանդրի խոսքը, որը մի ուժեղ պաշտպանական էր Լենինյան թեորիայի՝ ընդդեմ հակամարքսիստական հոսանքների: Ելնելով Իլյիչի դրույթներից, նա քննադատում է նարոդնիկների տնտեսագիտական հայացքները, այն նարոդնիկների, «որոնք մտածում էին համայնական նավակներով սոցիալիզմի խաղաղ ափը հասնել»: «Գիտականորեն խարխուլ է ձեր տնտեսագիտական միտքը»,— շպրտում է նա նարոդնիկների երեսին:

***

1914 թվական. պատերազմ: Լինելով պահեստի պրապորշչիկ, նա զորակոչվում է և նշանակվում Դրոգոբիչ քաղաքում կայանած 121-րդ գնդի ենթասպաներ պատրաստող վարժական զումարտակի պետ: «Հաստատակամ, համեստ, լավ

պատրաստված կազմակերպիչ լինելով, նա Դրոգոբիչի գնդում ստեղծում է բոլշևիկյան խմբակ»:

Ունենալով ռազմական խոր գիտելիքներ, իր կյանքի երեսուներորդ տարում նա գրեց. «Համեմատական հայացք ռուսական, գերմանական և ավստրիական դաշտային ծառայության կանոնագրքերի մասին» թեզիսները, որոնց մեջ դրսևորվեց նրա ռազմագիտական լայն մտահորիզոնը:

1917 թվական. փետրվար. ռևոլյուցիա: Ստեղծվում են Ժամանակավոր կառավարություն և բանվորների ու զինվորների դեպուտատների Սովետներ: Մինսկի Սովետն ստեղծվում է նրա և Ֆրունզեի ղեկավարությամբ: Այդ Սովետը լայն գործունեություն է ծավալում, օգնում մասսաների ռևոլյուցիոն կաթոնքին: Ալեքսանդրը ստեղծեց նաև «Զվեզդա» թերթը, որի առաջին համարում գրեց, որ այն «Կծառայի աշխատավորների շահերին»:

1917. հուլիսի 26. Պարտիայի VI համագումարը Պետրոգրադում, ուր վեկուցում է նաև Ալեքսանդրը, ցույց տալով, թե Մինսկի և Արևմտյան ռազմաճակատի բոլշևիկներն ինչպես են նախապատրաստում սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի գրոհը:

Հոկտեմբերի 25 (նոյեմբերի 7). ռևոլյուցիա Պետրոգրադում, Ժողկոմսովետի ստեղծումը: Ռադիոհեռագիր Մինսկ: Այստեղ էլ նույն ռևոլյուցիայի շարունակությունը՝ հոկտեմբերի 26-ին (նոյեմբերի 8-ին) Ալեքսանդրի, Ֆրունզեի և ուրիշների ղեկավարությամբ. Մինսկում ևս հռչակվում է Սովետական իշխանություն: Ռևկոմի նախագահի պոստում է Ալեքսանդրը:

Ֆրունզեի հետ ձեռք-ձեռքի՝ նա վարում է ռևոլյուցիայի գործը Բելոռուսիայում և հեռագրում է Վլադիմիր Իլյիչին. «Մինսկում ավարտվեց ռևոլյուցիոն հեղաշրջումը... Իշխում է լիակատար կարգ ու կանոն և հանգստություն»:

Բայց ահա, կայսերական Գերմանիան և նրա դաշնակիցները՝ Թուրքիան ու Ավստրո-Հունգարիան, շարունակում էին իրենց գիշատչական պատերազմը նորաստեղծ Սովետական իշխանության դեմ: Այդ մեծ վտանգը կանխելու համար 1917 թվականի դեկտեմբերի 12-ին Ալեքսանդրը կանչվում է Պետրոգրադ, նշանակվում Սովետական իշխանության բոլոր զինված ուժերի Գերագույն Գլխավոր Հրամանատարի ժամանակավոր պաշտոնակատար:

Ստանձնելով Սովետական բոլոր կորքերի հրամանատարությունը, նա պատվով է կատարում պարտիայի հանձնարարությունները:

1918 թվական... Նա նորից Բելոռուսիայում է, ընտրվում է արևմտյան մարզերի Սովետների Կենտրոնական Գործադիր Կոմիտեի նախագահ, Բելոռուսիայի ԿՊ բյուրոյի նախագահ, իսկ 1919 թվականի հունվարի 1-ին՝ նաև Բելոռուսական ՍՍՌ Կենտգործկոմի նախագահ:

Սակայն Մոսկվայում մեծ գործեր էին սպասում նրան, զգացվում էր նրա կարիքը: Շուտով նա դառնում է պարտիայի Մոսկվայի Կոմիտեի աչքի ընկնող ղեկավարներից մեկը, ապա՝ քարտուղարը: Այդ այն ժամանակներն էին, երբ թշնամին օղակել էր երկիրը, մոտենում էր Մոսկվային, երբ Դոնի կապիտալիստները մեկ միլիոն էին խոստացել առաջինը Մոսկվա մտնող սպիտակ գնդին: Այդ այն ժամանակներն էին, երբ մի ժողովում նրա ելույթի պահին սպիտակգվարդիական կլիկը ռումբ նետեց պատուհանից. սպանվեցին 12 մարդ, վիրավորվեցին 55-ը: Պայթյունի ալիքը նրան նետեց կից սենյակը և անգիտակցեց: Շուտով ուշքի գալով, նա մասնակցեց զոհերի թաղման առթիվ գումարված սգո միտինգին, ուր ասաց. «Պրոլետարիատը կճզմի թշնամուն, կըհաղթի և երկիրը կտանի դեպի լուսաճաճանչ ապագան»:

Այդ այն տարիներին էր, երբ սկսվեցին կոմունիստական շաբաթօրյակները՝ Լենինի մասնակցությամբ: Այդ գործի կազմակերպման համար շատ ջանքեր է գործադրել նաև Ալեքսանդր Մյասնիկյանը: Ահա մեր առջև է «Պրավդա» թերթի 1919 թվականի նոյեմբերի 27-ի համարը: Այնտեղ շատ նյութերի հետ կարդում ենք նաև նրա «Շաբաթօրյակների կազմակերպումը» հոդվածը: Թվում է՝ 41 տարի չի անցել այդ հոդվածի վրայով, թվում է՝ երեկ է գրվել այն, որքան նոր, այժմեական մտքեր, խոհեր, հարցեր, որքա՜ն ճշգրիտ ըմբռնումներ:

Իր խոշոր աշխատանքների հետ միասին նա զբաղվում է նաև հայ ժողովրդի ճակատագրի հարցերով:

1919 թ. մայիսին Մոսկվայում հիմնվում է Ստեփան Շահումյանի անվան ակումբը, որի բացման օրը Ալեքսանդրն ասում է. «Շահումյանը Կովկասի պրոլետարիատի լավագույն սիրտն էր... Խոնարհվենք պրոլետարական գործի նեցուկի անմահ հիշատակի առաջ»:

1920 թվականին բռնության շղթաները թոթափեց նաև հայ ժողովուրդը: Նրան ղեկավար էր պետք: Այդ պոստի համար Լենինը Ալեքսանդր Մյասնիկյանին է երաշխավորում: 1921 թվականի մայիսից նա Հայաստանի Ժողկոմսովետի նախագահն է: Ամենուրեք առաջնորդվում էր Վ. Ի. Լենինի ավանդներով, որոնք նրա համար միս ու արյուն էին դարձել:

Նրան վիճակվել էր այստեղ ղեկավար աշխատանք կատարել այն ժամանակ, երբ իշխում էին սովը, համաճարակները: Սովետական Ռուսաստանի օգնությամբ Հայաստանը վերածնվեց:

Երբ արդեն նոր իշխանությունն ամրացավ, Մյասնիկյանը նորից ժամանակ գտավ զբաղվելու



գրականությամբ. գրեց Թումանյանի, Հովհաննես Հովհաննիսյանի, Ալ. Ծատուրյանի, նոր գրողների մասին: Չարենցը,— գրում է նա,—շնորհք է, տաղանդ, մեծ բանաստեղծ: Տերյանն անբաժանելի է պրոլետարիատից և, մասնավորապես, հայ աշխատավորից...

Կարծես այսօրվա աչքերով է նայել ու տեսել, որ «Գաղութային հայ խոշոր կանգվածների, աշխատավորական տարրերի հույսերն արդարացնել և շահերը պաշտպանել կարող է միայն Սովետական իշխանությունը»:

Հայաստանում Սովետական իշխանություն ըստեղծվելու առաջին տարեդարձին նա գրեց. «Այլևս չկա հին Հայաստանը: Հայաստանը նոր է, նորաբույս, նորօրինակ»:

1925 թվականին, օդային աղետի հետևանքով կոծվեց աննկուն լենինյան Ալեքսանդր Մյասնիկյանը: Նրա մտերիմ մեծ բանաստեղծ Եղիշե Չարենցը գրեց.

Նայիրյան արևն էր քո մեջ՝ լենինյան հրով
ճառագած.
Կործանվող մեր երկրի համար դու եղար
փրկության առագաստ:—
Դու տվիր ընթացք և ուղի մեկ մինչև դարերն
հեռակա.—
Նայիրյան արևն էր քո մեջ՝ լենինյան հրով
ճառագած:—

Այդ ժամանակ նա վարում էր մեր պարտիայի Անդրերկոմի առաջին քարտուղարի պոստը:

— Մի քանի տարի հետո, կարելի է համարձակ կերպով ասել, որ մեր երկրամասն անճանաչելի կդառնա,— ասել է Մյասնիկյանը 1925 թվականի սկզբին, Անդրկովկասի մասին:

Այո, այժմ, Անդրկովկասն, իրոք, անճանաչելի է դարձել, ուր էլ գնում, ուր էլ լինում ես, ամեն ինչ նոր է, և թվում է ամենուրեք շրջում է այն բաջակորով մարդը, որին «տրված էր ոսկյա մի բեկոր լենինյան հանճարից»:

Ալեքսանդր Մյասնիկյանը լենինյան գվարդիայի կարկառուն գործիչներից մեկն էր. նա իր փառավոր կյանքը նվիրեց կոմունիզմի կառուցման մեծ գործին: Դրա համար էլ նա սիրելի է և անմահ բոլոր աշխատավորների համար:

Գ. ԱՐԵՎՅԱՆ

աշխատավորները որոտընդոստ ծափահարություններով են ամեն անգամ դիմավորում սովետական մարդկանց, ապա դրանով իսկ նրանք ամբողջ սրտով հավանություն են տալիս ժողովուրդների մերձեցման, բարեկամության ու համագործակցության գաղափարին։

Բայց ինչպես հյուրերն են լինում տարբեր, այնպես էլ՝ հյուրընկալությունը։ Այն, ինչ տեղի ունեցավ Ճապոնիայում հունիս ամսին, համոզիչ կերպով ցույց տվեց, որ ճապոնական ժողովուրդը այդ բանը լավ է հասկանում։

Ի՞նչ տեղի ունեցավ Ճապոնիայում այդ ժամանակ։

Բարձր ոլորտի խորհրդակցությունը ձախողելուց մեկ ամիս անց ԱՄՆ-ի պառաված պրեզիդենտը որոշեց ուղևորություն կատարել Ֆիլիպիններ, Հարավային Կորեա, Ճապոնիա ու Տայվան և վայելել այդ երկրների օրապակաս կառավարությունների հյուրընկալությունը։ Պետք է ասել, որ պրեզիդենտն իր պաշտոնական այցելությանը նախապատրաստվեց վերին աստիճանի խնամքով...

Եվ այսպես, կարծես ամեն ինչ պատրաստ էր, բայց...

Կիշիի կառավարությունը հետևողականորեն կիրառելով Միացյալ Նահանգների առջև ստորաքարշության և ճապոնական տերիտորիան միլիտարիստներին խոնարհաբար տրամադրելու քաղաքականությունը, դիմեց երկրի ազգային շահերի դավաճանության ևս մի ահավոր քայլի։ Օպոզիցիայի ներկայացուցիչների բացակայությամբ նա պառլամենտի ստորին պալատում հաստատել տվեց, այսպես կոչված, փոխադարձ անվտանգության ամերիկա-ճապոնական նոր պայմանագիրը։ Այդ պայմանագրի համաձայն ԱՄՆ-ը իրավունք են ստանում Ճապոնիայի տերիտորիայում պահել իրենց ռազմական բազաներն ու զորքերը և դրանք օգտագործել իրենց հայեցողությամբ, առանց ճապոնական կառավարության գիտության։ Թեև ամերիկյան իմպերիալիստներն ու նրանց ճապոնական համախոհները կաշվից դուրս եկան ապացուցելու համար, թե այդ պայմանագիրը կրում է լոկ «պաշտպանողական» բնույթ, բայց ամեն մի ողջամիտ մարդու համար պարզ է դրա իսկական նպատակը։ Ո՞ւմ հայտնի չէ, որ ոչ Սովետական Միությունը և ոչ էլ ժողովրդական Չինաստանը ագրեսիվ ոչ մի մտադրություն չունեն Ճապոնիայի նկատմամբ։ Հետևաբար, Ճապոնիան որևէ երկրից պաշտպանվելու ոչ մի կարիք չի զգում։ Միանգամայն հասկանալի է, որ պայմանագիրը, սկսած նրա առաջին հոդվածից մինչև վերջինը, ուղղված է միայն և միայն Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և Ճապոնիայի հարևան մյուս խաղաղասեր պետությունների դեմ։ Այդ բանը հետագայում բացահայտ կերպով խոստովանեցին հենց իրենք՝ ԱՄՆ-ի և Ճապոնիայի պետական գործիչները։ Միացյալ Նահանգների պետական քարտուղար Հերտերը և ճապոնական պաշտոնական անձինք հայտարարեցին, որ պայմանագրի գործողության ոլորտի մեջ է մտնում նաև ՍՍՌՄ-ի և ՉԺՌ-ի տերիտորիան։

Ճապոնական ժողովուրդը քաջ ըմբռնելով «անվտանգության» պայմանագրի ագրեսիվ բնույթը, անհապաղ ոտքի կանգնեց, որպեսզի համառ պայքարի միջոցով ձախողի Վաշինգտոնում թխված այդ պայմանագրի օրինականացումը և թույլ չտա երկրի ծախու կառավարողներին Ճապոնիան հրելու ատոմային պատերազմի վտանգավոր ուղին։

Ամբողջ երկրում ծայր առան ցասումնալից բողոքի ցույցերն ու գործադուլները։ Պայքարի առաջին շարքերում ընթանում էին ճապոնական կոմունիստները։ Ճապոնիայի սոցիալիստական պարտիան հրապարակայնորեն հայտարարեց, որ նա է կանչում պառլամենտի իր ներկայացուցիչներին, պահանջում է վերացնել «անվտանգության պայմանագիրը», ցրել պառլամենտն ու Կիշիի կառավարությունը։ Նույնպիսի պահանջներով հանդես եկավ նաև Ճապոնիայի արհեստակցական միությունների և այլ առաջադեմ կազմակերպությունների մեծամասնությունը։ Տոկիոյի տասնյակ հազարավոր աշխատավորներ ամեն օր շրջապատում էին կառավարության շենքը և ահեղաձայն պահանջում Կիշիի կլիկի հրաժարականն ու պայմանագրի վերացումը։ Ժողովրդական ցասումից ահաբեկված, պրեմիեր մինիստրը փակվեց իր ռեզիդենցիայում, որը շրջապատել տվեց փշալարերով և զինված ոստիկանների բազմահազարանոց ջոկատով։ Փորձելով ամեն կերպ անցկացնել ագրեսիվ պայմանագիրը, Կիշին դրա փրկության հույսը կապեց Էյզենհաուերի Ճապոնիա կատարելիք այցելության հետ։

Բայց ճապոնական ժողովուրդը այստեղ ևս մեծ զգոնություն ցուցաբերեց։ Ճապոնիայի քաղաքներում ու բնակավայրերում նոր թափ ստացավ ցասումնալից բողոքի ալիքը։ Հունիսի 9-ին Օմուտա քաղաքում կայացավ Ճապոնիայի Արհմիությունների գլխավոր խորհրդի արտահերթ 14-րդ համագումարը, որը քննարկեց և հաստատեց «անվտանգության պայմանագրի» դեմ, Էյզենհաուերի այցելության դեմ, պառլամենտի և Կիշիի կառավարության հրաժարականի համար ճապոնական պրոլետարիատի պայքարի ծրագիրը։ Ծրագրում նախատեսվեցին ժողովրդական մասսաների նոր ելույթներ։ Համագումարի հավանությանն արժանացած մի հատուկ բանաձևում ուղղակի ասվում է. «Եթե պրեզիդենտ Էյզենհաուերը հակառակ խաղաղության և աշխարհի բոլոր ժողովուրդների հետ բարեկամության մեր ցանկություններին՝ կհամարձակվի Ճապոնիա գալ, ապա նա կհանդիպի խաղաղության և դեմոկրատիայի ձգտող ամբողջ ճապոնական ժողովրդի զայրույթին ու ցասմանը»։ Համագումարը Ճապոնիայի բոլոր բանվորներին կոչ արեց հունիսի 15-ին երկօրյա արձակուրդ վերցնել, որպեսզի չորս օրվա ընթացքում միլիոնավոր ստորագրություններ հավաքեն տխրահռչակ «անվտանգության պայմանագրի» վավերացման դեմ բողոքի բանաձևի տակ։ Համագումարի որոշման համաձայն Էյզենհաուերի Ճապոնիա այցելելու օրը, հունիսի 19-ին, Տոկիոյում պետք է անցկացվեին սգո երթեր ու միտինգներ։

ԱՄՆ-ի պետական դեպարտամենտը առաջիկա այցելության հետ կապված անախորժությունների հոտն առնելով, որոշեց Սպիտակ տան մամուլի գծով քարտուղար Հեգերտիին ուղարկել Տոկիո պարզելու համար Ճապոնիայում տիրող տրամադրությունները։

Ճապոնական ժողովուրդը Հեգերտիին ցույց տվեց «չտեսնված» ընդունելություն։ Տասնյակ հազարավոր ճապոնացիներ օդանավակայան գալով, ամերիկյան ներկայացուցչին ընդունեցին «Կորչի՛ ամերիկյան միլիտարիզմը», «Ճապոնացիները չեն ցանկանում տեսնել ո՛չ Էյզենհաուերին, ո՛չ էլ ՈՒ—2 ինքնաթիռներ», «Յանկինե՛ր, կորե՛ք Ճապոնիայից» լոզունգներով և բացականչություններով։ Ուղղաթիռով մի կերպ ճողոպրելով օդանավակայանից, Հեգերտին ստիպված էր կրճատել Ճապոնիայում մնալու իր նախօրոք կազմված ծրագիրը և գլխակորույս փախչել այնտեղից։ Պատեպատ ընկած Կիշին կառավարության մի նիստը մյուսի հետևից էր գումարում՝ պրեզիդենտի այցելությունն ապահովելու համար արտակարգ և հույժ արտակարգ միջոցներ մշակելով, ճապոնական ժողովրդի գլխին լուտանքներ թափելով և նրա վրա մատ թափ տալով։

Բայց ճապոնացիները չահաբեկվեցին պրեմիեր-մինիստրի ջղային շարժումներից։ Նրանք հաստատական կերպով շարունակեցին պայքարը և հասան փայլուն հաղթանակի։ Ճապոնական ժողովրդի ցասման հզոր ալիքի դիմաց կառավարությունը ստիպված էր ընկրկել։ Հունիսի 16-ին մի նոր արտակարգ նիստ հրավիրելով, նա ստիպված չեղյալ հայտարարեց պրեզիդենտ Էյզենհաուերի Ճապոնիա այցելելու իր հրավերը։

Այսպես ձախողվեց ԱՄՆ-ի պրեզիդենտի այցելությունը Ճապոնիա։ Գուցե պարոն Էյզենհաուերը հայհոյում է ճապոնական ժողովրդին՝ նրա անհյուրընկալ վերաբերմունքի համար։ Դե՛, ի՞նչ արած՝ դա նրա գործն է։ Ինչ վերաբերում է ճապոնական ժողովրդին, ապա նա չափազանց գոհ է, որ նման հյուրին արգելեց իր երկիրն այցելել։

Հյուրասիրության սովորությունը ճապոնական ժողովրդի դարավոր սովորությունն է։ Բայց նրա այդ հիանալի սովորությունից օգտվել կարող են միայն նրանք, ովքեր ճապոնական ժողովրդին են բերում իրենց ժողովուրդների խաղաղության և բարեկամության բարի կամքը և ազնիվ ձգտումները։

Բացառվում են միայն անկոչ հյուրերը։

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ՀԱԿԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵԺԻՄԻ ԿՐԱԽԸ ԹՈՒՐՔԻԱՅՈՒՄ

1945 թվականից Թուրքիայում գոյություն ուներ արևմտյան տիպի երկպարտիա սիստեմ։ 1950 թվականին տեղի ունեցած պառլամենտական ընտրությունների ժամանակ ժողովրդա-ռեսպուբլիկական պարտիան պարտություն կրեց և իշխանության գլուխ անցավ այսպես կոչված դեմոկրատական պարտիան։ Թուրքական հասարակայնության լայն խավերը, որոնք դժգոհ էին ժողովրդա-ռեսպուբլիկական պարտիայի վարած ներքին և արտաքին քաղաքականությունից, հույս էին տածում, որ դեմոկրատական պարտիայի լիդերներ Ջելյալ Բայարը, Մենդերեսը և մյուսները, որոնք ընտրական պայքարում լայն խոստումներ էին տալիս, ավելի ռադիկալ քաղաքական կուրս կկիրառեն։ Սակայն նրանց խոր հիասթափություն էր սպասում։ Անցած տասը տարիները թուրքական ժողովրդի համար ծանր մղձավանջային տարիներ էին։ Երկրում ստեղծված ոստիկանական ռեժիմի պայմաններում ժողովրդի լավագույն զավակները բանտ էին նետվում, գնդակահարվում ու աքսորվում։ Դավաճանելով երկրի ազգային շահերին, նրա ղեկավարները այն դրեցին ամերիկյան իմպերիալիզմի անսահմանափակ վերահսկողության տակ։ Վաշինգտոնի կառավարության հետ կնքված մի շարք պայմանագրերի հետևանքով Թուրքիան դարձավ Սովետական Միության և սոցիալիստական երկրների դեմ ուղղված ռազմական բազաներից մեկը։ Տարեցտարի ծանրացավ երկրի տնտեսական վիճակը։ Թուրքիայի անխոհեմ ղեկավարները երկիրը կանգնեցրին ազգային աղետի առաջ։ Թուրքական մամուլի տվյալներով երկրի արտաքին պարտքերը կազմում են 13 միլիարդ լիրա։ Ապրուստի արժեքը 1950 թվականի համեմատությամբ բարձրացել է 6 անգամ։ Երկրի ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղե-

րում արտադրության մակարդակի զգալի անկում է տեղի ունեցել։ Երկրում ծայրաստիճան սրվեցին հակասությունները կառավարող շրջանների և հասարակայնության լայն խավերի միջև։ Այս տարվա ապրիլին և մայիսին Ստամբուլում, Անկարայում, Իզմիրում ծայր առան ուսանողների մասսայական ցույցեր։ Չնայած ձեռք առնված դաժան ռեպրեսիաներին, Մենդերեսի կառավարությունը անզոր գտնվեց վերականգնելու «հասարակական կարգը»։ Բանակի ուժերը ձեռնպահ մնացին ցուցարարների նկատմամբ զենքի ուժ կիրառելուց։ Ակներև էր, որ Մենդերես—Բայարի ռեժիմը մահամերձ վիճակ էր ապրում։ Այսպիսի պայմաններում, ըստ երևույթին երկյուղ կրելով, որ դեպքերը կարող են ավելի հեռուն տանել, բանակի մի քանի գեներալներ Ջեմալ Գյուրսելի ղեկավարությամբ իշխանությունը վերցրին իրենց ձեռքը։ Երկրում ամբողջ իշխանությունը անցավ Ազգային միասնության կոմիտեին։

Թուրքական նոր կառավարության ղեկավար Ջեմալ Գյուրսելը թուրքական բանակում ծառայում է 1915 թվականից։ Նա մասնակցել է 1919—1922 թթ. ազգային ազատագրական պայքարին, որը գլխավորում էր Քեմալ Աթաթուրքը։ Վերջին տարիներին Ջեմալ Գյուրսելը թուրքական բանակի ղեկավարության մեջ մի շարք պատասխանատու պաշտոններ էր գրավում։ Ցամաքային զորքերի հրամանատարի պաշտոնից Գյուրսելը հրաժարական է տվել այս տարվա մայիսին, զինվորական հեղաշրջումից երկու շաբաթ առաջ։ Նա դեմ էր արտահայտվել Մենդերեսի կառավարության այն որոշմանը, որով երկրի զինված ուժերը պետք է օգտագործվեին ուսանողական ցույցերը ճնշելու համար։ Նոր կառավարությունը իշխանությունը գրավելուց մի քանի օր հետո հանդես եկավ հայտարարությամբ, որի համաձայն այն մտադիր է երկրում դեմոկրատական ռեֆորմներ անցկացնել։ Այդ նպատակով ստեղծված է հանձնաժողով, որը արդեն մշակել է նոր կոնստիտուցիայի նախագիծը։ Ենթադրվում է, որ նոր պառլամենտի ընտրությունները տեղի կունենան կամ այս տարվա աշնանը, կամ մյուս տարվա գարնանը։ Ջեմալ Գյուրսելի կառավարությունը զինվորական հեղաշրջման ընթացքում բանտարկել է Ա. Մենդերեսին, Ջ. Բայարին, դեմոկրատական պարտիայի մյուս լիդերներին, մեջլիսի «դեմոկրատ» դեպուտատներին, ընդամենը ավելի քան 400 մարդ և ըստ կառավարության հայտարարության նրանք պետք է կանգնեն դատարանի առաջ։ Ժողովրդական-ռեսպուբլիկական պարտիայի լիդերների նկատմամբ Գյուրսելի կառավարությունը որևէ քայլի չի դիմել։ Այդ պարտիայի լիդեր Իսմեթ Ինենյուն հայտարարել է, որ իր պարտիան լիովին պաշտպանում է նոր կառավարության միջոցառումները։ Սակայն հետաքրքրական է նշել, որ արդեն հունիսի 7-ին Ֆրանսիական «Մոնդ» թերթի թղթակցի հետ ունեցած ինտերվյուի ժամանակ Ջ. Գյուրսելը հայտարարել է, որ «եթե երկրի շահերը պահանջեն այդ, ես, թերևս, կհամաձայնեմ գլխավորել նոր պարտիայի, որը կպաշտպանի ռևոլյուցիայի սկզբունքները»։ Այս հայտարարությունից հետևվում է, որ զինվորական հեղաշրջումը գլխավորած գեներալ Գյուրսելը մտադիր է հետագայում էլ շարունակել իր առաջատար դիրքը երկրի քաղաքական կյանքում։

Միջազգային հասարակայնությանը, և առաջին հերթին Թուրքիայի հարևան երկրներին բնականաբար հետաքրքրում է, թե արտաքին քաղաքականության բնագավառում Թուրքիայի նոր կառավարությունը ինչ կուրսի պետք է հետևի։ Ինքը՝ Ջեմալ Գյուրսելը, ինչպես նաև արտաքին գործերի մինիստր Սելիմ Սարպերը, անդրադառնալով այդ հարցին, հայտարարել են, որ Թուրքիան հավատարիմ է մնալու ՆԱՏՕ-ին, ՍԵՆՏՕ-ին և Թուրքիայի կնքած մյուս համաձայնագրերին։ Սակայն Թուրքիայի կառավարության ղեկավարները միաժամանակ ընդգծել են, որ Թուրքիան հավատարիմ է մնալու Քեմալ Աթաթուրքի հռչակած սկզբունքներին, որ «կառավարության գործունեության հիմքում դրվելու է հարևան պետությունների և բոլոր երկրների հետ բարեկամական հարաբերություններ պահպանելու սկզբունքը»։

Աթաթուրքը, ինչպես հայտնի է, պաշտպանել է այն սկզբունքը, որ Թուրքիայի բարեկամությունը իր մեծ հյուսիսային հարևանի՝ Սովետական Միության հետ համապատասխանում է Թուրքիայի ազգային շահերին։

Նույն հարցի շուրջ արած հայտարարության մեջ Սելիմ Սարպերը ասել է, որ «Թուրքիայի արտաքին քաղաքականության մեջ արմատական փոփոխություններ չեն լինի», սակայն նա ընդգծել է, որ որոշ «նոր նյուանսներ կլինեն նրա պրակտիկ իրականացման մեջ»։ Թե ինչ հետևություններ կանի Թուրքիայի նոր կառավարությունը նախորդ կառավարության վարած արտաքին քաղաքականության դառն փորձից, առայժմ դժվար է ասել։ Առաջիկա ժամանակաշրջանի իրադարձությունները ավելի հստակորեն ցույց կտան այդ։ Արևմտյան մամուլի մի շարք ազդեցիկ օրգաններ այն կարծիքին են, որ չնայած երկրում տեղի ունեցած քաղաքական փոփոխություններին, Թուրքիան «հավատարիմ կմնա իր արևմտյան դաշնակիցներին»։ Սակայն արևմտյան իմպերիալիստական շրջանները և առաջին հերթին Վաշինգտոնի քաղաքագետները չեն կարող իրենց հաշիվ չտալ այն բանում, որ



բոլոր դեպքերում Մենդերեսի կառավարության անկումը վկայում է ամերիկյան քաղաքականության նոր պարտությունը Մերձավոր և Միջին Արևելքում, վկայում է ԱՄՆ-ի պրեստիժի անկումը ամբողջ աշխարհում ընդհանրապես։

Այս տարվա հունիսի 3-ին լրացավ Սովետական Ռուսաստանի և Թուրքիայի միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու 40 տարին։ Թուրք ժողովրդի հիշողության մեջ դեռ թարմ է այն անգնահատելի օգնությունն ու աջակցությունը, որ երիտասարդ սովետական ռեսպուբլիկան ցույց տվեց նրան ազգային-ազատագրական հակաիմպերիալիստական պայքարում։ Հավատարիմ այդ քաղաքականությանը, Սովետական Միությունը հետագա տարիներին անշահախնդիր օգնություն ցույց տվեց թուրքական ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման գործում։ Թուրք ժողովուրդը շատ լավ գիտե, թե ինչ աղետներ բերեց երկրին արտաքին քաղաքականության այն հակաժողովրդական կուրսը, որ Թուրքիայի ղեկավարները վարեցին 40-ական թվականներից սկսած, մի կուրս, որն իր սուր ծայրով ուղղված էր Սովետական Միության դեմ։ Եվ չնայած դրան, Սովետական կառավարությունը միշտ ձգտել է նորմալացնել հարաբերությունները Թուրքիայի հետ։

Մայիսի 31-ին Սովետական կառավարությունը պաշտոնապես ճանաչեց Թուրքիայի նոր կառավարությանը։ Անդրադառնալով սովետա-թուրքական հարաբերություններին, Սովետական կառավարության ղեկավար Ն. Ս. Խրուշչովը մայիսի 28-ին հայտարարեց. «Մենք հուսով ենք, որ Թուրքիայի նոր կառավարությունը, որ կստեղծվի այնտեղ, անհրաժեշտ ջանքեր կցուցաբերի Սովետական Միության հետ հարաբերությունները բարելավելու համար։ Իսկ ինչ վերաբերում է Սովետական կառավարությանը, ապա մենք վաղուց ենք ձգտում դրան։ Հուսով ենք, որ Թուրքիայում հաղթանակ կտանեն առողջ դատողությունը և բարի դրացիների պես հաշտ ու խաղաղ ապրելու անհրաժեշտության ճիշտ ըմբռնումը»։

Թուրքիայի նոր կառավարությունից է կախված Մենդերեսի կառավարության արտաքին քաղաքական անփառունակ կուրսից հրաժարումը և պրակտիկ քայլեր անելը սովետա-թուրքական հարաբերությունների արմատական բարելավման ուղղությամբ։

Ս. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ՊԱՅՔԱՐՈՂ ԿՈՒԲԱՆ

Պետական դեպարտամենտը մայիսի 27-ին հաղորդեց, որ պրեզիդենտ Էյզենհաուերը հրաման է արձակել դադարեցնել Կուբային ցույց տրվող տնտեսական «օգնությունը», որը չի բխում «ԱՄՆ-ի և Արևմտյան կիսագնդի շահերից» (այդ «օգնությունը» արտահայտվում էր տարին 150—200 հազար դոլար գումարով)։

ԱՄՆ-ի պրեզիդենտի որոշումը գնահատվում է որպես Ֆիդել Կաստրոյի ռևոլյուցիոն կառավարության դեմ մի նոր ագրեսիա։

Ի՞նչ մեղք է գործել Կուբայի ժողովուրդը։ Ինչո՞ւ է ամերիկյան իմպերիալիզմը ոտքի կանգնել այս փոքր երկրի դեմ։ Գուցե Կուբան սպառնո՞ւմ է ԱՄՆ-ի ազատությանն ու անկախությանը։ Գուցե Կուբայի ժողովուրդը փորձում է խլե՞լ Ամերիկայի Միացյալ Նահանգների հարստությունները։ Բոլորովին ոչ։ Փաստերը հակառակն են ասում։ Ամերիկյան իմպերիալիզմն ինքն է սպառնում կուբացիների ազատությանն ու անկախությանը։ Ամերիկյան մոնոպոլիաներն են աչք գցել այս փոքր երկրի հարստություններին։ Կուբայի դեմ ամերիկյան ագրեսորների ինտրիգների ու դավադրությունների իսկական պատճառն այն է, որ կուբայական ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի հզոր վերելքի հետևանքով լուրջ հարված հասցվեց ամերիկյան իմպերիալիզմին։ Յոթ տարվա դժվարին պայքարից հետո 1959 թ. կուբայական ժողովուրդը տապալեց Բատիստայի անարգ և արյունարբու կլիկը՝ հանցագործների և գողերի այդ շայկան, որը Կուբայում իշխանությունը գրավել էր պետական դեպարտամենտի և ԱՄՆ-ի Պենտագոնի կողմից նախապատրաստված ռազմական հեղաշրջման հետևանքով։

Ամերիկացիների դրածո Բատիստայի դաժան ռեժիմի յոթ տարիների ընթացքում ամերիկյան մոնոպոլիաները իրենց ձեռքը վերցրին երկրի հիմնական հարստությունները՝ շաքարը, նավթը, ծխախոտը, մրգերը և այլն։ Ամերիկյան մոնոպոլիաները, կողոպտելով Կուբայի ժողովրդին, հսկայական շահույթներ էին դիզում։ Կուբայական ժողովրդի զինված պայքարը վերջ դրեց Բատիստայի արյունոտ բռնակալությանը և Կուբայում ամերիկյան մոնոպոլիաների անօրինությանը։ Կուբայում ստեղծվեց երկրի ազատության համար պայքարող ռևոլյուցիոն, դեմոկրատական իշխանություն, որի գլուխ կանգնեց ազգային հերոս Ֆիդել Կաստրոն։

Շատ ժամանակ չի անցել կուբայական ռևոլյուցիայի հաղթանակից։ Երկրում հաջողությամբ իրագործվում է ագրարային ռեֆորմը։ Կուբայի գյուղացիներն ու բատրակները առաջին անգամ որպես սեփականություն ստանում են խոշոր լատիֆունդիաներից բռնագրավված հողը։ Ռե-

վոլյուցիոն կառավարությունը կոնֆիսկացրել է ամերիկյան «Յունայտեդ-Ֆրուտ Կոմպանի» և շաքարի՝ իմպերիալիստական այլ ընկերություններին պատկանող շատ հողեր։

Նոր կառավարությունը սկսել է զարգացնել արդյունաբերությունը, իրագործում է սոցիալ-տնտեսական մի շարք միջոցառումներ, որոնք նպատակ ունեն բարելավել ժողովրդի նյութական վիճակը, ընդլայնել դեմոկրատիան և ամրապնդել նոր կարգերի հիմքերը։ Ռևոլյուցիայի նվաճումները պաշտպանելու համար Կուբայում ստեղծվել է ժողովրդական ռևոլյուցիոն բանակ և բանվորա-գյուղացիական աշխարհազորի ջոկատներ։ Ֆիդել Կաստրոյի կառավարությունը ոչ միայն երկրի ներսում է պրոգրեսիվ-դեմոկրատական քաղաքականություն վարում, այլև ակտիվորեն պայքարում է խաղաղության համար, բարեկամության քաղաքականություն վարելով մյուս երկրների, այդ թվում նաև սոցիալիստական լագերի երկրների հետ։ Նա վարում է արտաքին անկախ քաղաքականություն։

Այս ամենը առաջ է բերում ամերիկյան իմպերիալիստների զայրույթը։ Նրանք ոչ մի կերպ չեն հաշտվում այն փաստերի հետ, որ կուբայական ժողովուրդը իշխանությունն իր ձեռքը վերցնելով, ուզում է ղեկավարել երկիրն այնպես, ինչպես ինքն է ցանկանում։ Նրանք զայրանում են, որովհետև Կուբան իր օրինակով ցույց է տվել Լատինական Ամերիկայի մյուս երկրներին, թե ինչպես կարելի է ազատագրվել ամերիկյան իմպերիալիզմից։ Ահա թե ինչու ամերիկյան իմպերիալիստները մոլեգին հալածանքներ են սանձազերծում կուբայական ռևոլյուցիայի դեմ, Կուբային սպառնում են տնտեսական բլոկադայով։

Նրանք բռնել են Կուբայի ժողովրդի դեմ բացահայտ զինված պայքարի ուղին։ Ամերիկյան ինքնաթիռները ներխուժում են Կուբայի օդային տարածությունները, գնդակոծում Կուբայի տերիտորիան։ Ամերիկյան ռազմանավերը խախտում են Կուբայի տերիտորիալ ջրերի սահմանները։ Ամերիկյան իշխանությունները բացահայտ կերպով պաշտպանելով դեռևս լիովին չջախջախված ներքին ռեակցիոն ուժերը, դավեր են նյութում Կուբայի օրինական կառավարության դեմ։ Ագրեսորները փորձում են Կուբան չեզոքացնել Լատինական Ամերիկայից, որպեսզի հետո հարձակվեն նրա վրա։

1960 թ. մայիսին կուբայական մամուլում հրապարակվեց Կուբայի ուսանողների համալսարանական ֆեդերացիայի հայտարարությունը, որտեղ կոնկրետ փաստերով ապացուցվում է, որ ԱՄՆ-ը դավադրություն են նախապատրաստում Կուբայական ռևոլյուցիայի դեմ։ Այդ հայտարարության մեջ ասված է, որ Կուբայում ամերիկյան դեսպանությունը անլեգալ կերպով նախապատրաստել և հրատարակել է դեսպանի ստորագրությամբ հատուկ հայտարարություններ, որոնք Կուբայի դեմ ագրեսիայի դեպքում, որպես ԱՄՆ-ի դեսպանության պաշտպանագիր, պետք է փակցվեն այդ դեսպանության հովանավորության տակ գտնվող անձանց և կազմակերպությունների տների ու շենքերի պատերին։ Ամերիկյան դեսպանությունը ոչ միայն խոստովանել է, որ ինքն է պատրաստել այդ հայտարարությունները, այլև սկսել է արդարացնել իր գործողությունները, հայտարարելով, որ դրանում ոչ մի դատապարտելի բան չկա և որ այդպիսի հայտարարություններ էր պատրաստում Կուբայում ամերիկյան նախկին դեսպանը Բատիստայի դիկտատուրայի օրոք։

Կուբայի սուվերենության և անկախության դեմ այս կոպիտ ելույթը կուբայական ժողովրդի մոտ ցասումի հզոր ալիք առաջ բերեց։ Նա իրավամբ հարց է տալիս. ԱՄՆ-ի դեսպանությունը ումի՞ց է ուզում «պաշտպանել» ամերիկացիներին պատկանող սեփականությունը, եթե ոչ ոք չի սպառնում այն հափշտակել։ Ամերիկյան իմպերիալիզմի խարդախ մտադրությունը առաջ բերեց Կուբայի ժողովրդի վրդովմունքը։ Ողջ երկրով մեկ մասսայական միտինգներ ու ժողովներ կազմակերպվեցին, որտեղ Կուբայի աշխատավորները վճռական բողոք հայտարարեցին Կուբայի ներքին գործերում ԱՄՆ-ի միջամտության դեմ, այն զինված ագրեսիայի հանցավոր պլանների դեմ, որ հորջորջում են ամերիկյան իմպերիալիստները Կուբայի ռազմական հանցագործների և ծախու տարրերի հետ միասին։

«Բանվոր դասակարգը, գյուղացիությունը, ուսանողությունը, ամենատարբեր մասնագիտությունների մարդիկ,— ասված է Կուբայի աշխատավորության կոնֆեդերացիայի հայտարարության մեջ,— ինտերվենցիայի սպառնալիքի առաջ լի են վճռականությամբ կենսագործելու սուրբ կոչը՝ «Հայրենիք կամ մահ»։

ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքականության ճիշտ հակապատկերն է Կուբայի հանդեպ Սովետական Միության և սոցիալիստական լագերի երկրների քաղաքականությունը։ 1960 թ. մայիսին Սովետական կառավարությունը վերականգնեց Կուբայի հետ դիվանագիտական հարաբերությունները, որոնք ընդհատվել էին 1952 թ., ամերիկյան դրածո, ռեակցիոներ Բատիստայի մեղքով։ Սովետական կառավարությունը ոչ միայն ճանաչեց Կուբայի նոր կառավարությունը, այլև պատրաստակամություն հայտնեց ամեն կերպ օգնելու Կուբային։ Կուբա այցելեց Սովետական Միության Մինիստրների Սովետի Նախագահի առաջին տեղակալ ընկ. Ա. Ի. Միկոյանը։ Ս. թ. փետրվարի 13-ին հաջողությամբ ավարտված բանակցությունների շնորհիվ ստորագրվեց սովետա-կուբայական կոմյունիկե։ Կուբայի և Սովետական Միության միջև հաստատվեցին առևտրական հարաբերություններ։ Կուբայի տնտեսական պլանների իրագործմանը օգնելու նպատակով Սովետական Միությունը կուբայական կառավարությանը արտոնյալ պայմաններով հարյուր միլիոն դոլարի փոխառություն տրամադրեց։ Կուբայի հետ բարեկամական և առևտրական հարաբերություններ հաստատեցին նաև սոցիալիստական մյուս երկրները։

Վերջին օրերի իրադարձությունները վկայում են, որ ԱՄՆ-ի կառավարությունը Կուբայի ռեսպուբլիկայի նկատմամբ բռնել է բացահայտ ագրեսիվ քաղաքականություն վարելու դիրք։ Հուլիսի 10-ին Կուբայի ռեսպուբլիկայի պրեզիդենտ Դորտիկոսն իր հայտարարության մեջ նշեց, որ ամերիկյան իմպերիալիստները, համոզվելով Կուբայի դեմ ուղղված տնտեսական ագրեսիայի ձախողմանը, չեն հրաժարվի զինված ագրեսիա կազմակերպելու փորձից։ ԱՄՆ-ի պաշտոնական շրջաններում հաճախապես շատ են խոսում Կուբայի դեմ ամերիկյան պետությունների կազմակերպության դրոշի տակ միջոցառումներ ձեռնարկելու մասին։ Ամերիկյան դեղին մամուլը այս օրերին լի է հակակուբայական սաահոդ լուրերով, ամենազզվելի զրպարտություններով։ Մոնոպոլիստներին և նրանց սպասարկուներին կատաղեցնում է, որ Կուբայի ռևոլյուցիոն կառավարությունը օրինական միջոցառումներ է իրականացնում ամերիկյան մոնոպոլիստներին պատկանող նավթային այն ձեռնարկությունների ազգայնացման ուղղությամբ, որոնք կանգնել են ռեսպուբլիկայի կառավարության միջոցառումներին դիմադրելու և դրանք կազմակերպված կերպով վիժեցնելու ճանապարհին։

Սովետական կառավարությունը ղեկավարվելով ազգային անտեսության և քաղաքական անկախության համար պայքարող երկրներին իմպերիալիզմի ոտնձգություններից պաշտպանելու իր տրադիցիոն քաղաքականությամբ, իր պատրաստակամությունը հայտնեց 1960 թվականին լրացուցիչ կերպով գնելու այն 700 հազար տոննա շաքարը, որի գնումից հրաժարվել են ԱՄՆ-ը։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկ. Ն. Ս. Խրուշչովը վերջերս նախազգուշացրեց, որ Սովետական Միությունը բոլոր միջոցներով, ընդհուպ մինչև հրթիռների գործադրումը, զորավիգ կկանգնի Կուբայական ռեսպուբլիկային, եթե նրա դեմ ամերիկյան իմպերիալիստները զինված ագրեսիա սանձազերծեն։

Վերջին ժամանակներս Կուբայում տեղի ունեցած իրադարձությունները մեկ անգամ ևս հաստատեցին այն ճշմարտությունը, որ կուբայական ժողովրդի գլխավոր թշնամին ամերիկյան իմպերիալիզմն է։ Կուբայի ժողովուրդը ավելի ու ավելի սերտորեն է համախմբվում իր ռևոլյուցիոն կառավարության շուրջը։ Նա լի է ամերիկյան ագրեսորներին հակահարված հասցնելու վճռականությամբ։ Կուբայական ժողովուրդը համոզված է, որ իր արդարացի պայքարում նրան պաշտպանում են սոցիալիստական լագերի երկրները, Լատինական Ամերիկայի ժողովուրդները և ողջ աշխարհի ազատասեր մարդկությունը։

Կուբայի ժողովրդի հերոսական պայքարը վկայում է, որ Լատինական Ամերիկայի երկրներում ամերիկյան մոնոպոլիաների անպատիժ տնօրինության ժամանակը անվերադարձ կերպով անցյալի գիրկն է անցել։

Ն. ԳԱՍՊԱՐՅԱՆ

